## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն


Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ՝ ՍՍՀՄ արհմիությունների XV համագումարում . . 3

Ա. Մ. ԹԵԼՈՒՆՑ— Մարտնչող մատերիալիզմի ծրագրային փաստաթուղթը . 22

ՅՈՒ. ԶԱԽԱՐՈՎ— Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող գաղափարական պայքարի արդի փուլը . . . . . . . . . 29

Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ— Բարելավել հասարակագիտական առարկաների ավանդումը . . . . . . . . . . 38

ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Ե. Թ. ԱՍԾԱՏՐՅԱՆ— Ժողովրդի պահանջմունքներին համապատասխան . 49

Մ. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Սոցիալիստական արդյունաբերության հիմքը . . 55

ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ— Լենինյան իմաստության կենդանի մարմնավորումը 64

ՄԵՐ ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑԸ

Կարևոր և ուշագրավ հարցեր . . . . . . . . . 74

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Ա. Գ. ԳՈՒՐՈՒՆՅԱՆ— Կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունը . . . . . . . . . . 80

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

Հ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ— Արտադրանքի որակի բարձրացման խթանները 86

Շ. Մ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Գյուղական ինտելիգենցիան և արտադրության բարձրացումը . . . . . . . . . . 94

ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Զ. Լ. ԴՈԼԱԲՋՅԱՆ— Արդի սրտաբանության նվաճումները . . . 98

Հ. Ե. ՍԵՎՈՅԱՆ— Աշխարհզգացումը ժողովրդական հեքիաթներում . . 102

ԻՐԱՎԱԲԱՆԻ ԱՄԲԻՈՆ

Ռ. Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ— Անմեղության պրեզումպցիան՝ անհիմն դատապարտումից խուսափելու երաշխիք է . . . . . . 108

# Содержание


Л. И. Брежнев — Речь на XV съезде профсоюзов СССР . . . 3
А. М. Телунц — Программный документ воинствующего материализма . . . 22
Ю. Захаров — Современный этап идеологической борьбы между социализмом и капитализмом . . . 29
Дж. С. Киракосян — Улучшать преподавание общественных наук . . . 38

**Комментируем решения XXIV съезда КПСС**

Е. Т. Асцатрян — Соответственно требованиям народа . . . 49
С. С. Налбандян — Основа социалистической промышленности . . . 55

**Навстречу 50-летию образования СССР**

М. В. Арзуманян — Живое воплощение ленинской мудрости . . . 64

**Наши интервью**

Важные и жизненные вопросы . . . 74

**Партийная жизнь**

А. Г. Гурунян — Партийный комитет и цеховая парторганизация . . . 80

**Вопросы экономики**

А. А. Амбарцумян — Стимулы улучшения качества продукции . . . 86
Ш. М. Абраамян — Сельская интеллигенция и повышение производства . . . 94

**В мире науки**

З. Л. Долабчян — Достижения новейшей кардиологии . . . 98
Г. Е. Севоян — Мироощущение в народных сказках . . . 102

**Трибуна юриста**

Р. М. Оганисян — Презумпция невиновности — гарантия избежания необоснованного осуждения . . . 108




# ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԱՐՏԱԿԱՆ ԾՐԱԳԻՐՆ ԵՆ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

### ԱՐՏԱՍԱՆՎԱԾ ՍՍՀՄ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ XV ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

Թանկագին ընկեր պատգամավորնե՛ր, հարգելի արտասահմանյան հյուրե՛ր:

Թույլ տվեք Սովետական Միության Կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի անունից ջերմորեն ողջունել ՍՍՀՄ արհեստակցական միությունների XV համագումարը: Այս համագումարը խոշոր իրադարձություն է մեր ամբողջ երկրի կյանքում: Նրա նշանակությունը որոշվում է այն կարևոր դերով, որը իրենց շարքերում 98 միլիոն սովետական աշխատավորներ միավորող արհմիությունները խաղում են կոմունիստական շինարարության մեջ: Բնական է, որ ձեր ուշադրության կենտրոնում, ընկեր պատգամավորներ, կգտնվեն այն հարցերը, որոնք առնչված են կուսակցության XXIV համագումարի կողմից առաջադրված հանգուցային խնդիրների լուծմանը արհմիությունների կոնկրետ մասնակցության հետ:

ՍՄԿԿ XXIV համագումարը, ինչպես հայտնի է, սահմանեց արդի էտապում կուսակցության և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության գլխավոր ուղղությունները, նախատեսեց արդյունաբերության ու գյուղատնտեսության հետագա վարգացման, ժողովրդի նյութական մակարդակի բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության լայն ծրագիրը: Համագումարի որոշումները միահամուռ կերպով պաշտպանեցին երկրի բանվոր դասակարգը, գյուղացիությունը, մտավորականությունը, դրանք որպես գործողությունների մարտական ծրագիր ընդունվեցին այնպիսի մասսայական կազմակերպությունների կողմից, ինչպիսիք են արհմիությունները և կոմերիտմիությունը: Այդ, իիրավի համաժողովրդական, պաշտպանությունը համագումարի որոշումներին իսկայական ուժ է տալիս: Դա ստեղծում է լիակատար վստահություն, հաստատ համոզվածություն, որ կուսակցական համագումարի նախանշած ծրագիրը կկենսագործվի:

Իսկ դա նշանակում է, որ մեր հայրենիքը ևս մի խոշոր քայլ կկատարի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալական հարաբերու-

թյունների կատարելագործման, իր տնտեսական պոտենցիալի ու միջազգային դիրքերի ամրապնդման ասպարեզում: Դա նշանակում է նաև, որ մենք կկատարենք ժողովրդի կենսամակարդակի նշանակալի բարձրացման՝ համագումարի նախատեսած ծրագիրը: Իսկ այդ նպատակների համար հատկացվում է 22 միլիարդ ռուբլի՝ ավելի քան երկու անգամ շատ, քան անցյալ՝ ութերորդ հնգամյակում:

Իրենց մասշտաբներով վիթխարի այդ խնդիրների լուծման համար ստեղծվում է նյութական ամուր հիմք: Մեր ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր ճյուղ իր զարգացման համար զգալիորեն ավելի շատ միջոցներ կստանա, քան անցյալ հնգամյակում: Կապիտալ ներդրումների ընդհանուր գումարը իններորդ հնգամյակում կանցնի հինգ հարյուր միլիարդ ռուբլուց:

Կուսակցությունը ընդսմին առանձնահատուկ ուշադրություն է նվիրում հնգամյակի գլխավոր խնդրի լուծման սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման հետ անմիջականորեն կապված արտադրության ճյուղերի զարգացմանը: Գյուղատնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումները կկազմեն 128,6 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 46,4 միլիարդով ավելի, քան անցյալ հնգամյակում: Իսկ արդյունաբերության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության ճյուղերը, կապիտալ ներդրումները կաճեն 74 տոկոսով:

Հենց այն փաստը, որ մենք հնարավորություն ենք ստացել դնելու և լուծելու այդպիսի մասշտաբի խնդիրներ, վկայում են մեր պետության հզորությունը, ուժը: Հատկացված միջոցների իրացման համար մենք ունենք բոլոր անհրաժեշտ նյութական, գիտական ու տեխնիկական ռեսուրսները:

Մեր հայրենիքը, մեր կուսակցությունը դաստիարակել են մասնագետների՝ բարձր որակավորում ունեցող բանվորների, գյուղատնտեսության վարպետների, շինարարների, ինժեներների ու տեխնիկների, գիտնականների, արտադրության կազմակերպիչների մեծ բանակ: Կուսակցությունը հենվում է նրանց վրա, նրանց փորձի, իմտության, գիտելիքների վրա և հուսով է, որ նրանք կապահովեն հնգամյակի լիակատար հաջողությունը:

Աշխատանքի այդ վիթխարի բանակի ջանքերի մոբիլիզացման գործում կուսակցությունը, ինչպես որ առաջ, հենվելու է արհմիությունների վրա, որոնք իր հուսալի օգնականն են մասսաների հետ կատարվող աշխատանքում, կոմունիզմի գործի համար մղվող պայքարում:

Ընկերնե՛ր: Գրեթե մեկ տարի է մեզ բաժանում ՍՄԿԿ XXIV համագումարից: Եվ մենք իրավունք ունենք մեկ հարց տալու՝ իսկ ինչպե՞ս է սկսվել համագումարի նախատեսած՝ երկրի տնտեսական զարգացման ծրագրի իրականացումը:

Ձեզ բոլորիդ հայտնի են ժողովրդական տնտեսության անցած տարվա աշխատանքի արդյունքները: Եթե խոսելու լինենք այնպիսի գլխավոր, ընդհանրացնող թվերի մասին, ինչպիսիք են ազգային եկամտի, արդյունաբերական արտադրության, ապրանքաշրջանառության և բեռնաշրջանառության աճը, ապա այդ արդյունքները կարելի է գնահատել որպես բավական հաջող: Պլանը կատարվել է, իսկ մի քանի ցուցանիշների գծով՝ նաև գերակատարվել: Փոքր-ինչ ավելի բարդ էր գործը գյուղատնտեսության մեջ: Կլիմայական պայմանները հնարավորություն չտվեցին հասնելու այն բոլոր հաջողություններին, որպիսիք մենք ակնկալում էինք: Բայց այստեղ ևս, հաշվի առնելով օբյեկտիվ անբարենպաստ պայմանները, արդյունքները կարելի է գնահատել որպես ոչ վատ:

Այս բոլոր դրական արդյունքները պետք է տեսնել: Գնահատելով դրանք, կուսակցությունը լիակատար հիմունքով բոլոր սովետական աշխատավորներին ասում է՝ սրտագին շնորհակալություն ձեզ, թանկագին ընկերներ, անձնվեր աշխատանքի համար, այն մեծ ավանդի համար, որը դուք անցած տարի մուծեցիք հայրենիքի տնտեսական վերելքի գործում:

Դրա հետ մեկտեղ, վերլուծելով հետհամագումարյան առաջին տարվա արդյունքները, մենք չենք կարող կանգ առնել միմիայն ընդհանուր ցուցանիշների վրա, այլ, ինչպես ասում են, պետք է ավելի խոր թափանցենք, տեսնենք, թե



ինչպես է իրականացվում տնտեսական աշխատանքի ամբողջ մակարդակի բարձրացումը, այն որակական շրջադարձը, որը մեզանից պահանջեց համագումարը: Տնտեսական տարվա արդյունքներին այդպիսի մոտեցում ցուցաբերելու դեպքում մենք ի հայտ կբերենք մի շարք պրոբլեմներ, որոնք հատուկ ուշադրության են արժանի:

Դանդաղ է բարելավվում դրությունը այնպիսի կարևոր ոլորտում, ինչպիսին է կապիտալ շինարարությունը: Պլանավորված օբյեկտների գործարկման պլանը 1971 թվականին չկատարվեց: Շինարարության ժամկետները դեռևս մեծ են: Այսպես կոչված «անավարտ շինարարության» տեսակարար կշիռը 1970 թվականի համեմատությամբ նույնիսկ ավելացել է:

Մեզ չեն կարող լրիվ բավարարել նաև նոր տեխնիկայի արմատավորման և աշխատանքի արտադրողականության բարձրացման՝ տարվա արդյունքները: Արտադրանքի աճի այն բաժինը, որ ընկնում է աշխատանքի արտադրողականության աճին, պլանայինից ցածր էր թե՛ արդյունաբերության մեջ, թե մանավանդ շինարարության մեջ:

Դանդաղ էր բարձրանում արտադրանքի առանձին տեսակների որակը: Դա վերաբերում է նաև ժողովրդական սպառման ապրանքներին: Ըստ երևույթին, դրա հետևանքով պահեստներում պառկած մնում են մասսայական պահանջարկ վայելող ոչ քիչ քանակությամբ ապրանքներ՝ կոշկեղեն, կարվածքեղեն և տրիկոտաժեղեն:

Մի խոսքով, ընկերներ, քննության առնելով անցյալ տարվա արդյունքները, հարկավոր է տեսնել ոչ միայն ձեռք բերված հաջողությունները: Ամբողջ տնտեսական աշխատանքը կատարելագործելու մասին համագումարի ցուցումները պետք է ավելի արագ և ավելի եռանդուն կերպով կենսագործել, քան դա արվել է մինչև օրս:

Ներկա հնգամյա պլանը կազմված է՝ հաշվի առնելով այն, որ մենք բոլորս այսօր և վաղը աշխատելու ենք ավելի լավ, քան աշխատում էինք երեկ: Եկեք անկեղծորեն ասենք՝ դա հնգամյա պլանի հաջող կատարման անհրաժեշտ պայմանն է: Եթե մենք չսովորենք աշխատել ավելի լավ, քան առաջ էինք աշխատում, ապա պլանը խիստ լարված կլինի, իսկ եթե սովորենք, ապա կկարողանանք հասնել նույնիսկ ավելի մեծ արդյունքների, քան պլանով է նախատեսված, կկարողանանք անհրաժեշտ ռեզերվներ ստեղծել ապագայում է՛լ ավելի արագ առաջընթացի համար: Մեր բոլոր պլանների կատարման հաջողությունների երաշխիքը պահանջկոտությունն ու պատասխանատվության զգացումն է, լարված և բարեխիղճ աշխատանքը:

Այդ մասին առանձնապես տեղին է հիշեցնել այժմ՝ 1972 թվականի անսովոր խիստ ձմռան կապակցությամբ, որը իրեն զգալ տվեց ինչպես արդյունաբերության մեջ, այնպես էլ գյուղում: Բնական է, որ առաջացած դժվարությունները հաղթահարելու համար կպահանջվեն կուսակցական, սովետական, տնտեսական կադրերի նշանակալի ջանքեր: Այստեղ շատ բան պետք է անեն նաև արհմիությունները: Թույլ տվեք վստահություն հայտնել, որ մեր երկրի աշխատավորները հաջողությամբ կկատարեն 1972 թվականի տնտեսական պլանի բոլոր խնդիրները:

Ընկերնե՛ր: Մենք զարգացման շատ հետաքրքրական և դրա հետ մեկտեղ բարդ էտապ ենք ապրում: Երկրի ժողովրդական տնտեսության աճը, գիտատեխնիկական հեղափոխությունը, միջազգային պայմանների փոփոխությունը նոր, ավելի բարձր պահանջներ են ներկայացնում մեր ամբողջ աշխատանքի ոճին, մեթոդներին, կազմակերպմանը:

Տնտեսության մեջ, ինչպես նաև մյուս բնագավառներում մեր գործունեության խոր վերակառուցումը, լուրջ կատարելագործումը, որպիսիք պահանջեց XXIV համագումարը, արդեն սկսվել են: Բայց մենք դեռ շատ բան պետք է որոնենք, կշռադատենք, փորձենք:

Անհրաժեշտ է, որ մենք բոլորս մեզ տրամադրենք աշխատանքի հենց այդպիսի, ստեղծագործական ոճի համար: Մոտակա տարիների ընթացքում մենք պետք է մշակենք և կենսագործենք համագումարի ընդունած տնտեսական

քաղաքականության կուրսը կոնկրետացնող միջոցառումներ: Խոսքը վերաբերում է ամենից առաջ գիտատեխնիկական առաջադիմության արագացման նպատակին ուղղված միջոցառումներին: Այդ հարցին տալով առաջնահերթ նշանակություն, կուսակցության Կենտրոնական կոմիտեն ի նկատի ունի այն քննարկել իր պլենումներից մեկում: Մշակվում են տնտեսության պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու միջոցառումներ: Կուսակցական և տնտեսական մարմինների ուշադրության կենտրոնում պետք է մնան գյուղատնտեսական արտադրության վերելքի պրոբլեմները: Մենք մի շարք տարիներ զբաղվում ենք դրանցով, արդեն քիչ բան չի արվել, բայց հարկավոր է տեսնել, որ կուսակցության առաջադրած խնդիրների հաջող լուծման համար անհրաժեշտ են դեռ համառ աշխատանքի տարիներ:

Մի խոսքով, ընկերնե՛ր, առջևում ստեղծագործական հսկայական աշխատանք կա:

Դա անհրաժեշտ է թե՛ ընթացիկ հնգամյակի հաջող կատարման համար, թե՛ նրա համար, որ դրվեն ապագա առավել արագ առաջընթացի հիմքերը: Մոտ ժամանակներս մենք ձեռնամուխ կլինենք երկրի տնտեսական զարգացման՝ մինչև 1990 թվականն ընդգրկող երկարաժամկետ հեռանկարի մշակմանը: Իսկ դրա հիմքում պետք է ընկած լինեն ամենաստույգ, գիտականորեն հիմնավորված հաշվարկումները, տնտեսավարման ու պլանավորման առավել ժամանակակից մեթոդները, կազմակերպման ու կառավարման ձևերն ու կառուցվածքները: Նշանակում է՝ մենք բոլորս պետք է լրջորեն աշխատենք այնպիսի բնագավառում, ինչպիսին պլանավորումն է:

Ուստի այժմ առանձնապես կարևոր է սովորել աշխատանքի, տնտեսավարման, կառավարման առաջավոր մեթոդները: Դա պետք է դառնա մեր աշխատանքի ամբողջ ոճի, մեր կուսակցության, բովանդակ սովետական ժողովրդի կողմից լուծվող պրակտիկ գործերի նկատմամբ ամբողջ մոտեցման հիմքերից մեկը:

Եթե փորձենք ձևակերպել, թե ներկայումս կուսակցական, սովետական, տնտեսական և արհմիութենական մարմինների համար ո՛րն է գլխավորը էկոնոմիկայի բնագավառում, ապա դա, ըստ էության, հետևյալն է՝

— յուրաքանչյուր հարցին մոտենալ իններորդ հնգամյակի պլանի, կուսակցության XXIV համագումարի մշակած ամբողջ տնտեսական ու սոցիալական քաղաքականության կոնկրետ իրականացման դիրքերից.

— հասնել տնտեսական որոշումների համակողմանի հիմնավորվածության և արդյունավետության, ինչպիսի մակարդակով էլ դրանք ընդունվեն: Առաջադրված խնդիրները իրականացնել խնայողաբար, նվազագույն ծախքերով և հասարակության համար առավելագույն փոխհատուցմամբ: Վճռականորեն պայքարել գերատեսչական նեղմտության և տեղայնության դրսևորումների դեմ.

— մեր ընդհանուր խնդիրն է մնում, և դա հարկավոր է մեկ անգամ ևս ընդգծել, լրջորեն բարձրացնել պահանջկոտությունը, բոլոր կարգի աշխատողների անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, ՍՄԿԿ Կենտկոմի և կառավարության որոշումների կատարման համար: Հարկավոր է խափանել կուսակցական և պետական կարգապահության խախտումները, խիստ պատժի ենթարկել այդպիսի խախտումների համար:

Ընկերնե՛ր: Այն պրոբլեմները, որոնց մասին խոսվեց վերևում, ուղղակի առնչություն ունեն արհմիությունների հետ:

Մեր արհմիությունները աշխատում են հաղթանակած սոցիալիզմի հասարակության մեջ: Դրանով են որոշվում նրանց գլխավոր առանձնահատկությունները: Աշխատավորների շահերի համար իրենց պայքարում նրանք դուրս են եկել «պաշտպանական ֆունկցիայի» սահմաններից, քանի որ մեր երկրում վաղուց արդեն վերացված են շահագործող դասակարգերը: Իհարկե, արհմիությունները հիմա էլ կոչված են աշխատավորներին պաշտպանելու, Լենինի արտահայտությամբ, գերատեսչական չափից դուրս մեծ փութեռանդությունից



և բյուրոկրատական խեղաթյուրումներից, որոնց, ցավոք սրտի, դեռ երբեմն
հարկ է լինում հանդիպել: Բայց նրանց ֆունկցիաները դրանով բնավ էլ չեն
սպառվում: Սովետական արհմիությունների գլխավոր առանձնահատկություն-
ներից մեկն այն է, որ նրանք անմիջական և ակտիվ մասնակցություն են ցու-
ցաբերում ամբողջ հասարակության զարգացման, արտադրության վերելքի,
նրա արդյունավետության բարձրացման, ժողովրդական տնտեսության կա-
ռավարման գործին:
Արհմիությունների ձեռքին կան հասարակության կյանքի՝ իր նշանակու-
թյամբ վճռական այդ ոլորտի վրա ներգործելու ոչ քիչ թվով փորձված միջոցներ:
Դրանց թվին են պատկանում նախ և առաջ այն հնարավորությունները, որ
ունեն արհմիությունները սոցիալիստական մրցության կազմակերպման գործում:
Կենտրոնական կոմիտեն վերջերս կարևոր որոշում ընդունեց նոր պայ-
մաններում սոցիալիստական մրցության մասին: Նրա իմաստն այն է, որ
մրցությունը օրգանապես կապվի կուսակցության տնտեսական քաղաքակնու-
թյան գլխավոր ուղղությունների հետ: Դա նշանակում է, որ մրցությունը պետք
է աշխատավոր մասսաներին կողմնորոշի դեպի պայքար ոչ միայն քանակական
ցուցանիշների համար, այլև արտադրանքի բարձր որակի համար, միջոցների,
նյութական և աշխատանքային ռեսուրսների խնայողության համար, արտա-
դրության մեջ գիտատեխնիկական նվաճումների արդյունավետ և արագ ար-
մատավորման համար, աշխատանքի արտադրողականության բարձրացման
համար:
Մեր աշխատանքում փոքր նշանակություն չունի նյութական և բարոյական
խթանների ճիշտ օգտագործումը:
Արհմիությունները, որոնք, մեր օրենսդրությանը համապատասխան, լայն
իրավունքներ ունեն աշխատավարձի, նորմավորման և տարիֆների հարցերում,
կարող են լրջորեն օգնել մասնավորապես բարձրացնելու նյութական խթանման
այնպիսի կարևոր լծակի նշանակությունը, ինչպիսին է ըստ աշխատանքի վար-
ձատրությունը: Այժմ, երբ արտադրական կոլեկտիվները կարող են տնօրինել
ձեռնարկությունների եկամուտներից գոյացող խոշոր ֆոնդերը, դրա հնարավո-
րությունները աճել են:
Այս մասին կկամենայի հիշեցնել, քանի որ դեռևս քիչ փաստեր չկան, երբ
հավասար մոտեցում է ցուցաբերվում աշխատանքի վարձատրության և նյու-
թական խրախուսման ֆոնդերի բաշխման գործում: Հոգ տանել աշխատավոր-
ների բարեկեցության մասին՝ չի նշանակում բոլոր աշխատողների համար լինել
«բարի քեռիներ» անկախ հանրային արտադրության մեջ նրանց ներդրած ա-
վանդից: Աշխատավարձը ամենուրեք պետք է լինի ՎԱՍՏԱԿԱԾ, յուրաքանչյուր
աշխատող պետք է զգա նրա ուղղակի կախումը կոլեկտիվի արտադրական հա-
ջողությունների մեջ իր կատարած ներդրումից:
Դրանից է վերջին հաշվով կախված այն բարիքների ծավալը, որոնք ստա-
նալու է աշխատավորը: Չէ՞ որ այն բարիքները, որոնք նոր հնգամյակը տալու
է սովետական մարդկանց, երկնքից չեն ընկնելու և մեկ չեն ընծայվելու: Դրանք
պետք է ինքներս արտադրենք, իսկ դրա համար անհրաժեշտ են հաստատակամ
ջանքեր ու լարված աշխատանք:
Կատարելագործելով նյութական խթանները, մենք պետք է դրա հետ միա-
սին լրջորեն բարձրացնենք բարոյական խթանների դերը:
Դրանք մեզանում լայնորեն կիրառվում են, ընդհուպ մինչև աշխատան-
քային ծառայությունների այնպիսի բարձր ճանաչում, ինչպիսիք են շքանշան-
ներով պարգևատրելը, պատվավոր կոչումներ շնորհելը: Լավագույն աշխատող-
ների, առաջավոր կոլեկտիվների խրախուսման այդպիսի ձևերը, իհարկե, լիո-
վին պահպանում են իրենց նշանակությունը:
Սակայն բարոյական խթանները չի կարելի հանգեցնել սոսկ պարգևների:
Շատ կարևոր է նաև մի այլ բան՝ կարողանալ ստեղծել այնպիսի մթնոլորտ,
այնպիսի հասարակական կարծիք, որպեսզի յուրաքանչյուր ձեռնարկությունում,
յուրաքանչյուր կոլեկտիվում լավ իմանան, թե ո՛վ և ինչպե՛ս է աշխատում և
յուրաքանչյուրին հատուցեն ըստ արժանվույն: Բոլորը պետք է վստահ լինեն,

պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Պրագայի խորհրդակցությունում:

Սոցիալիստական երկրները հետևողականորեն հանդես են գալիս Եվրոպայի կապիտալիստական մասի պետությունների հետ փոխշահավետ կապերը կարգացնելու օգտին: Այդ բնագավառում նույնպես նկատելի արդյունքներ են ձեռք բերվել: Դա վերաբերում է հատկապես Ֆրանսիային, Ֆինլանդիային, Սկանդինավյան երկրներին:

Էական դրական տեղաշարժեր են կատարվում Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության հետ մեր հարաբերություններում: Դրանք հնարավոր դարձան ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի, ինչպես նաև Լեհաստանի և ԳՖՀ-ի միջև պայմանագրերի ստորագրման շնորհիվ:

Այժմ այդ պայմանագրերը գտնվում են վավերացման պրոցեսում: Համապատասխան քննարկումներ են անցկացվում ՍՍՀՄ Գերագույն սովետում, Լեհական Ժողովրդական Հանրապետության Սեյմում, ԳՖՀ-ի օրենսդիր մարմիններում:

Կասկած չկա, որ ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի միջև ստորագրված պայմանագրի վավերացումը ամենատարբեր բնագավառներում կհանգեցնի սովետա-արևմտագերմանական հարաբերությունների կարգացման որակապես նոր, զգալիորեն ավելի արդյունավետ փուլի: Դա, մեր կարծիքով, ոչ միայն կհամապատասխաներ ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի շահերին, այլև շատ մեծ նշանակություն կունենար Եվրոպայի խաղաղության ամրապնդման համար:

Պայմանագրերի վավերացման հարցի շուրջը Ֆեդերատիվ Հանրապետությունում բավական սուր պայքար է ծավալվել: Կան քաղաքական գործիչներ, որոնք հանդես են գալիս պայմանագրերի դեմ և նույնիսկ ձգտում են կասկածի տակ առնել ԳՖՀ-ի ու սոցիալիստական երկրների իսկական հաշտության և նրանց նորմալ հարաբերությունների կարգացման հնարավորությունն իսկ:

Իսկ ի՞նչ են ուզում պայմանագրերի հակառակորդները: Նրանք իրենց պլանները գաղտնի չեն պահում: Նրանց կարծիքով, պայմանագրերը լավ չեն, որովհետև դրանց մեջ արձանագրված է եվրոպական սահմանների անխախտելիությունը, և նրանք խոսում են պայմանագրերի այդ հոդվածները «վերանայելու» մասին: Բայց մի՞թե պարզ չէ, որ պայմանագրերի հակառակորդները սահմանների վերանայման շուրջը բանակցելու կրուցակիցներ չունեն և չեն կարող ունենալ: Դա քննարկման առարկա չէ ո՛չ հիմա, ո՛չ էլ ապագայում: Սոցիալիստական երկրների սահմանները անսասան են, և պայմանագրերն այստեղ լոկ արտացոլում են գոյություն ունեցող իրողությունը:

Պայմանագրերի հակառակորդները չեն թաքցնում, որ իրենք կուզենային թուլացնել ԳԴՀ-ի սուվերենությունը: Նրանք այս հարցում ևս կուզենային վերադառնալ անցած օրվան: Ահա արդեն գրեթե քառորդ դար Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը վստահորեն կարգանում է սոցիալիստական ուղիով: Նա արդի միջազգային կյանքի գործուն մասնակիցն է: Ով այդ բանը չի ուզում տեսնել, ով չի ուզում համապատասխան հետևություններ անել, նա լոկ փակուղի կմտցներ իր քաղաքականությունը: Վաղուց ժամանակն է հասկանալու, որ Եվրոպայի իրադրության իսկական նորմալացում չկա և չի կարող լինել, եթե լրիվ ծավալով հաշվի չառնվի ԳԴՀ-ի՝ որպես անկախ սուվերեն սոցիալիստական երկրի, դրությունը:

Այժմ ԳՖՀ-ն կանգնած է մի պատասխանատու ընտրության առջև, որը կորոշի նրա ժողովրդի բախտը, ուրիշ պետությունների վերաբերմունքը նրա նկատմամբ՝ առաջիկա շատ տարիների համար: Դա ընտրություն է համագործակցության և առճակատման միջև, լարվածության թուլացման և ուժեղացման միջև, իսկ վերջին հաշվով՝ խաղաղության քաղաքականության և պատերազմի քաղաքականության միջև:

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մենք ԳՖՀ-ի հետ հարաբերությունների բարելավման գործին մոտենում ենք անկեղծորեն ու լրջորեն, թեև հասկանալի պատճառներով մեր երկրի համար դա հասարակ հարց չէ: Սովետական մարդկանց հիշողության մեջ դեռ կենդանի են անցած պատերազմի աղետները և հիտլերյան ագրեսիայի հետևանքով մեր ժողովրդին պատճառված տառապանքները: Սակայն մենք կարծում ենք, որ ծանր անցյալը չպետք է ընդմիշտ անհաղթահարելի խոչընդոտ մնա Արևմտյան Գերմանիայի հետ մեր հարաբերությունները կարգացնելու ճանապարհին: Մենք հաշվի ենք առնում նաև այն փաստը, որ Արևմտյան Գերմանիայի բնակչության մեծ մասը, կողմնակից է Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հետ հարաբերությունների բարելավմանը:



Ընկերնե՛ր: Եվրոպայի կայուն խաղաղության հիմքերը դնելու համար ներկայումս շատ պետությունների կառավարությունների և հասարակական շրջանների ծավալած մեծ և բազմակողմանի աշխատանքում հարկ է լինում հաղթահարել Արևմուտքի որոշակի ուժերի դիմադրությունը, որոնք Եվրոպայում լարվածության թուլացում չեն ուզում և ամեն կերպ խոչընդոտում են դրան: Հենց այդ ուժերն են փորձում բարդացնել համաեվրոպական խորհրդակցության նախապատրաստությունը, կանգառներ պատրվակներ են հնարում դրա հրավիրումը ձգձգելու համար: Օրինակ, այն անհեթեթ միտքն են արտահայտում, թե խորհրդակցություն անցկացնելու առաջարկության և առհասարակ Եվրոպայում մեր քաղաքականության նպատակն է իբր ականահարել Եվրոպայի տնտեսական միավորումը կամ, ինչպես այն սովորաբար անվանում են՝ «ընդհանուր շուկան»: Ըստ երևույթին անհրաժեշտ է մի քանի խոսք ասել այս հարցի առթիվ:

Սովետական Միությունը ամենևին էլ չի անտեսում Արևմտյան Եվրոպայում ստեղծված ռեալ դրությունը, այդ թվում նաև՝ կապիտալիստական երկրների այնպիսի տնտեսական խմբավորման գոյությունը, ինչպիսին «ընդհանուր շուկան» է: Մենք ուշի-ուշով հետևում ենք «ընդհանուր շուկայի» գործունեությանը և նրա էվոլյուցիային: Այդ խմբավորման մասնակիցների հետ մեր հարաբերությունները, անշուշտ, կախված կլինեն այն բանից, թե նրանք իրենց հերթին որքանով են ընդունում Եվրոպայի սոցիալիստական մասում ստեղծված իրողությունները, մասնավորապես Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների շահերը: Մենք տնտեսական հարաբերություններում կողմնակից ենք իրավահավասարությանը և դեմ՝ խտրականությանը:

Ընկերնե՛ր: Սովետական արտաքին քաղաքականության կարևորագույն ուղղությունը պատերազմի օջախների վերացման պայքարն է, ժողովուրդների ազատության և անկախության նկատմամբ իմպերիալիստների ոտնձգություններին հակահարված տալը:

Հնդկաչինում մղվող պատերազմը, որը ԱՄՆ-ի պրեզիդենտի խոստովանությամբ «ամենատևական և ծանր պատերազմն է Ամերիկայի պատմության մեջ», ցույց տվեց ագրեսիայի և ժողովուրդների ճնշման իմպերիալիստական քաղաքականության ողջ սնանկությունը: ԱՄՆ-ը հիմա հույս ունի նախ և առաջ տեղական վարձկանների օգնությամբ խեղդել Հնդկաչինի ազգային-ազատագրական պայքարը, որպեսզի պահպանի իր քաղաքական և ստրատեգիական դիրքերը այդ շրջանում: Դա Վաշինգտոնում անվանում են պատերազմի «վիետնամացում»: Հնդկաչինի հայրենասերների կողմից մի լավ քրքրված ամերիկյան մունդիրները ուզում են փոխարինել մարիոնետային զինվորների մունդիրներով, բայց քաղաքական աստառը մնում է նախկինը՝ ամերիկյանը:

Վիետնամի, Լաոսի և Կամբոջայի հայրենասերները հիանալի հասկանում են այդ մանևրների էությունը: Հենվելով Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների օգնության և աջակցության վրա, Հնդկաչինի ժողովուրդները շարունակում են ագրեսորի դեմ իրենց պայքարը թե՛ ռազմական, թե՛ դիվանագիտական և թե՛ քաղաքական ճակատներում:

Այդ պայքարում սովետական ժողովուրդը ամբողջովին Հնդկաչինի ժողովուրդների կողմն է: Նրանց օգնելը մեր ինտերնացիոնալ պարտքն է, և մենք այն կկատարենք մինչև վերջ: Սովետական Միությունը զայրույթով դատապարտում է ամերիկյան ավիացիայի կողմից ՎԴՀ-ի տերիտորիայի ավազակաբարո ռմբակոծումները և պահանջում է դադարեցնել դրանք: Մենք լիովին պաշտպանում ենք ՎԴՀ-ի և Հարավային Վիետնամի Հանրապետության արդարացի

առաջարկությունները: Մենք պահանջում ենք, որ ինտերվենտները հեռանան Հնդկաչինից, որ այդ շրջանի ժողովուրդները դառնան անկախ, հնարավորություն ունենան ինքնուրույն տնօրինելու իրենց բախտը, առանց դրսի որևէ միջամտության և ճնշման:

Լարվածության ավելի ու ավելի վտանգավոր օջախ է դառնում Մերձավոր Արևելքը: Արաբական կավթված հողերից հեռանալուց Իսրայելի համառ հրաժարումը, արաբական պետությունների դեմ իսրայելական ռազմամոլների մշտական պրովոկացիաները շիկացնում են մթնոլորտը, ստեղծում ռազմական պայթյունի սպառնալիք:

Արաբական երկրները համոզիչ կերպով ցույց են տվել, որ իրենք պատրաստ են կոնֆլիկտի քաղաքական կարգավորմանը, Մերձավոր Արևելքում կայուն և հուսալի խաղաղության հաստատմանը: Իսրայելը ԱՄՆ-ի թողտվությամբ և աջակցությամբ համառորեն չի ուզում հրաժարվել ագրեսիվ կավթողական քաղաքականությունից: Սակայն դա չի կարող անվերջ շարունակվել: Հազիվ թե ողջամիտ քաղաքագետները կարողանան հուսալ, որ արաբական պետությունները կհաշտվեն իրենց տերիտորիաների օկուպացման հետ:

Այսօր արաբական աշխարհը արդեն այն չէ, ինչ մի քանի տարի առաջ էր: Ամրապնդվել են առաջադիմական վարչակարգերը, ընդլայնվում է միջարաբական համագործակցությունը, զգալիորեն աճել է արաբական պետությունների ռազմապաշտպանական պոտենցիալը: Դրանք բոլորը երկարատև գործոններ են, և վերջին հաշվով հենց դրանցով կորոշվի ուժերի հարաբերակցությունը Մերձավոր Արևելքում:

Արաբական առաջադեմ պետությունների հետ Սովետական Միության բարեկամությունը և համագործակցությունը անընդհատ զարգանում և ամրապնդվում է: Ընդլայնվում է տնտեսական և պաշտպանական համագործակցությունը, խորանում քաղաքական փոխգործողությունը: Կարելի է որոշակիորեն ասել, որ արաբ բարեկամների հետ մեր հարաբերությունները երբեք այնքան խոր և համակողմանի չեն եղել, որքան այժմ: Մենք այսուհետև էլ կամրապնդենք ու կզարգացնենք այդ հարաբերությունները՝ ի շահ մեր երկրների ժողովուրդների, հանուն արդարության, հանուն արաբական ժողովուրդների ազատության և առաջադիմության, հանուն Մերձավոր Արևելքի կայուն խաղաղության:

Ընկերնե՛ր, դուք, հավանաբար, ուշադրություն եք դարձրել այն բանին, որ Ասիայի երկրների հետ հարաբերություններին վերաբերող հարցերը վերջին ժամանակներս ավելի ու ավելի մեծ տեղ են գրավում մեր քաղաքականության մեջ: Եվ դա միանգամայն հասկանալի է: Սովետական Միության տերիտորիայի գրեթե երկու երրորդ մասը գտնվում է ասիական մայրցամաքում: Իսկ Ասիայի դերը համաշխարհային քաղաքականության մեջ արագորեն մեծանում է Ասիայի ժողովուրդների ազգային ու սոցիալական ազատագրության և ասիական պետությունների տնտեսական զարգացման հաջողությունների շնորհիվ:

Սովետական Միությունը հանդես է եկել և հանդես է գալիս ասիական պետությունների հետ ամենալավ հարաբերությունների զարգացման օգտին: Մենք մեր նպատակն ենք համարում նպաստել Ասիայի խաղաղության ամրապնդմանը, Ասիայի առաջադեմ ուժերին օգնել պայքարելու իմպերիալիզմի և գաղութատիրության բոլոր տարատեսակների դեմ:

Մենք եղբայրական հարաբերություններ և բազմակողմանի համագործակցություն ենք պահպանում և հաջողությամբ զարգացնում Ասիայի այնպիսի սոցիալիստական պետությունների հետ, ինչպիսիք են Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը, Վիետնամի Դեմոկրատական Հանրապետությունը, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Հանրապետությունը:

Մենք գոհ ենք, որ Ասիայի շատ երկրների, օրինակ, Աֆղանստանի, Բիրմայի, Ցեյլոնի, Իրանի, Թուրքիայի հետ հաստատվել են լավ հարաբերություններ, թեև նրանցից մի քանիսի հետ այդ հարաբերությունները կարող էին ավելի լավ լինել, քան այժմ: Մեր հերթին մենք մեզնից կախված ամեն ինչ կանենք դրանց զարգացման համար:

Մենք առանձնապես մեծ նշանակություն ենք տալիս Հնդկաստանի, հնդիկ



մեծ ժողովրդի հետ մեր բարեկամության հարաճուն ամրապնդմանը, ժողովուրդ, որն ընթանում է ազատության, անկախության և առաջադիմության ուղիով: Հնդկաստանի հետ մեր հարաբերությունները անշեղորեն ամրապնդվել են նրա՝ որպես անկախ պետության, գոյության բոլոր տարիների ընթացքում: Հենց այդ զարգացման շնորհիվ ծնունդ առավ խաղաղության, բարեկամության ու համագործակցության սովետա-հնդկական պայմանագիրը:

Ջգտելով ամրապնդել բարեկամությունը Հնդկաստանի հետ, մենք հանդիպում ենք հնդիկ ժողովրդի ականավոր լիդեր Ինդիրա Գանդիի կողմից գլխավորվող Հնդկաստանի կառավարության լիակատար ըմբռնմանն ու փոխադարձ համակրանքին:

Այժմ, ինչպես գիտեք, Հինդուստանի թերակղզում նոր իրադրություն է ստեղծվել: Արևելաբենգալյան ժողովրդի ազատագրական պայքարի շնորհիվ կազմավորվեց նոր անկախ պետություն՝ Բանգլադեշի Ժողովրդական Հանրապետությունը: 75 միլիոն մարդ անկախության, ազգային զարգացման իրավունք ձեռք բերեց, և մենք ի սրտե նրանց շնորհավորում ենք այդ մեծ հաղթանակի առթիվ:

Բանգլադեշի Հանրապետությանը պաշտպանելու և նրա հետ համագործակցելու մեր գիծը բխում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության սկզբունքային քաղաքականությունից: Վերջերս մեր երկրում եղավ Բանգլադեշի պրեմիեր-մինիստր շեյխ Մուջիբուր Ռահմանը: Հուսով ենք, որ այդ այցը կարևոր ուղենիշ կդառնա մեր երկրների հարաբերություններում: Մենք մեր կողմից այսուհետև էլ ամեն ինչ կանենք Բանգլադեշի Հանրապետության հետ մեր հարաբերությունները զարգացնելու և ամրապնդելու համար:

Կուզենայի ընդգծել, որ դրա հետ մեկտեղ մենք կողմնակից ենք նաև Պակիստանի հետ լավ հարաբերություններին, որի հետ մենք ոչ մի կոնֆլիկտ չունենք: Օրերս Պակիստանի պրեզիդենտ Բհուտոյի ՍՍՀՄ կատարած այցը ցույց տվեց, որ մեր երկրների լավ հարաբերությունների զարգացման համար անհրաժեշտ նախադրյալներ կան:

Մենք նաև Հնդկաստանի, Պակիստանի և Բանգլադեշի միջև կայուն խաղաղության ու բարիդրացիական հարաբերությունների հաստատման հետևողական կողմնակիցներ ենք: Դա էական ներդրում կլիներ ամբողջ Ասիայում քաղաքական կլիման առողջացնելու գործում:

Վերջին ժամանակներս նկատելիորեն լավանում են մեր հարաբերությունները Ճապոնիայի հետ: Վերջերս ՍՍՀՄ-ն և Ճապոնիան համաձայնեցին բանակցություններ վարել հաշտության պայմանագրի կնքման շուրջը: Դա մենք դիտում ենք որպես կարևոր դրական փաստ: Համոզված ենք, որ սովետա-ճապոնական հարաբերությունների լրիվ նորմալացումը ամբողջովին կհամապատասխաներ ոչ միայն մեր երկու ժողովուրդների շահերին, այլև առհասարակ Հեռավոր Արևելքի և Խաղաղ օվկիանոսի ավազանի խաղաղության և անվտանգության շահերին: Ինչ վերաբերում է մեզ, ապա մենք պատրաստ ենք Ճապոնիայի հետ փոխշահավետ լայն համագործակցություն հաստատել և զարգացնել թե՛ տնտեսական և թե՛ քաղաքական բնագավառներում, ի նկատի ունենալով, որ այդ համագործակցությունը կծառայի խաղաղության գործին:

Ասիական շատ երկրներում ավելի ու ավելի մեծ հետաքրքրություն է առաջացնում Ասիայի կոլեկտիվ անվտանգության ապահովման գաղափարը: Ավելի ու ավելի պարզ է դառնում, որ Ասիայի անվտանգության իսկական ուղին ոչ թե ռազմական բլոկների և խմբավորումների ուղին է, ոչ թե մի խումբ պետությունների մյուսներին հակադրելու ուղին, այլ բոլոր շահագրգռված պետությունների բարիդրացիական համագործակցության ուղին:

Մեր պատկերացմամբ, Ասիայի կոլեկտիվ անվտանգությունը պետք է խարսխվի այնպիսի սկզբունքների վրա, ինչպիսիք են պետությունների հարաբերություններում ուժի գործադրումից հրաժարվելը, սուվերենությունն ու սահմանների անձեռնմխելիությունը հարգելը, ներքին գործերին չմիջամտելը, լիակատար իրավահավասարության և փոխշահավետության հիման վրա տնտեսա-







կան և այլ համագործակցության լայն կարգացումը: Մենք հանդես ենք գալիս և հանդես կգանք Ասիայի այդպիսի կոլեկտիվ անվտանգության օգտին ու պատրաստ ենք այդ գաղափարի իրականացման նպատակով համագործակցել բոլոր պետությունների հետ:

Վերջերս իր վրա ուշադրություն բևեռեց այնպիսի մի իրադարձություն, ինչպիսին ԱՄՆ-ի պրեզիդենտ Նիքսոնի այցն էր Չինաստան և նրա բանակցությունները Պեկինի ղեկավարների հետ: Ի՞նչ կարելի է ասել այդ առթիվ:

Նախ և առաջ երկու պետությունների միջև կոնտակտների վերահաստատման, նրանց հարաբերությունների նորմալացման փաստն ինքնին միանգամայն բնական երևույթ է: Սովետական Միությունը միշտ հանդես է եկել ՉԺՀ-ի մեկուսացման իմպերիալիստական քաղաքականության դեմ, միջազգային ասպարեզում նրա դերի պատշաճ ճանաչման օգտին: Սակայն Պեկինի և Վաշինգտոնի ներկայիս կոնտակտների գնահատականը կախված է այն բանից, թե ինչ հիման վրա են դրանք իրականացվում:

Պեկինյան հանդիպումների մասնակիցները իրենց բանակցությունների բովանդակության և իրենց ձեռք բերած համաձայնության էության մասին քիչ բան հաղորդեցին իրենց ժողովուրդներին և աշխարհին: Ավելին, նրանք հասկանալ տվեցին, որ հրապարակված պաշտոնական կոմյունիկեի շրջանակներից դուրս եկող ամեն ինչ որոշված է գաղտնի պահել և «չքննարկել»: Ուստի, պեկինյան բանակցությունների նշանակության մասին վճռական խոսքը կասեն փաստերը, ԱՄՆ-ի և ՉԺՀ-ի հետագա գործերը:

Սակայն չի կարելի ուշադրություն չդարձնել Պեկինի բանակցությունների մասնակիցների որոշ հայտարարությունների վրա, որոնք հիմք են տալիս կարծելու, որ երկխոսությունը դուրս է եկել ԱՄՆ-ի և Չինաստանի երկկողմ հարաբերությունների շրջանակներից: Այլ կերպ ինչպես կարելի է, օրինակ, հասկանալ Շանհայում բանկետի ժամանակ արված այն հայտարարությունը, թե «այսօր մեր երկու ժողովուրդները (այսինքն՝ ամերիկյան և չին ժողովուրդները) իրենց ձեռքին են պահում ամբողջ աշխարհի ապագան»:

Հայտնի է, որ դեռ վերջերս Պեկինում «ռևիզիոնիզմ» և «հեղափոխությանը դավաճանել» էին համարում խաղաղ գոյակցության հետևողական այն պայքարը, որ սովետական երկիրը մղում է Լենինի ժամանակից ի վեր: Այժմ չին-ամերիկյան կոմյունիկեում հավաստված են պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները: Դա, անշուշտ, կարելի է միայն ողջունել: Բայց կարևոր է ոչ միայն այդ սկզբունքները թղթի վրա գրելը, այլև դրանք գործնականում իրականացնելը:

Առհասարակ պետք է ասել, որ պեկինյան հանդիպման առթիվ բազմաթիվ խիստ տարբեր կարծիքներ և ենթադրություններ են հայտնվում: Սակայն կարծիքը կարծիք է, իսկ վճռական խոսքը, կրկնում եմ, մնում է փաստերին, ռեալ գործերին: Ուստի, մենք չենք շտապում վերջնական գնահատականներ տալ: Ապագան ցույց կտա, թե իրականում ինչպիսին է գործը, իսկ մենք էլ դրանից համապատասխան գործնական հետևություններ կանենք:

Ինչ վերաբերում է ՉԺՀ-ի հետ մեր հարաբերություններին, ապա մեր կուսակցության և սովետական պետության սկզբունքային դիրքորոշումը պարզորոշ արտահայտված է ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերում: Համագումարի բանաձևում նշված է, որ մեր կուսակցությունը կանգնած է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքները հետևողականորեն պաշտպանելու, համաշխարհային կոմունիստական շարժման միասնությունը ըստ ամենայնի ամրապնդելու, սոցիալիստական հայրենիքի շահերը պաշտպանելու դիրքերում: Եվ այնուհետև բանաձևում ասվում է. «Համագումարը վճռականապես մերժում է չինական պրոպագանդայի զրպարտչական հերյուրանքները մեր կուսակցության և պետության քաղաքականության վերաբերյալ: Միևնույն ժամանակ մեր կուսակցությունը հանդես է գալիս ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի հարաբերությունները նորմալացնելու, սովետական և չին ժողովուրդների բարիդրացիությունն ու բարեկամությունը վերականգնելու օգտին: Սովետական Միության և Չինական Ժողովրդական Հան-



րապետության հարաբերությունների բարելավումը կհամապատասխաներ երկու երկրների արմատական, տևական շահերին, համաշխարհային սոցիալիզմի շահերին, իմպերիալիզմի դեմ պայքարն ուժեղացնելու շահերին»: Մեր այդ դիրքավորումը իր ուժը լիովին պահպանում է նաև այսօր:

Չինական պաշտոնական ներկայացուցիչները մեզ ասում են, թե ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի հարաբերությունները պետք է կառուցվեն խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա: Ինչ արած, եթե Պեկինում հնարավոր չեն համարում ավելի շատ բան անել սոցիալիստական պետության հետ իրենց հարաբերություններում, ապա մենք պատրաստ ենք ներկայումս սովետա-չինական հարաբերությունները կառուցել նաև այդ հիման վրա: Կարող եմ ձեզ ասել, ընկերնե՛ր, որ մենք ոչ միայն ազդարարում ենք այդ պատրաստակամությունը, այլև այն արտահայտում չհարձակման, սահմանային հարցերի կարգավորման, փոխադարձաբար շահավետ հիմունքներով հարաբերությունների նորմալացման միանգամայն կոնկրետ և կոնստրուկտիվ առաջարկություններով: Այդ առաջարկությունները վաղուց են հայտնի չինական ղեկավարներին: Այժմ խոսքը պատկանում է չինական կողմին:

Ընկերնե՛ր: Միջազգային լարվածությունը թուլացնելու, ժողովուրդների անկապտելի իրավունքները պաշտպանելու գործում ամեն մի առաջընթաց քայլ կատարվում է միլիտարիզմի և ռեակցիայի ուժերի հետ չթուլացող հակամարտության պայմաններում:

Մերձավոր Արևելքում ճգնաժամի վտանգավոր օջախին ոմանք, ինչպես երևում է, ուզում են այժմ բարդությունների նոր աղբյուր ավելացնել Միջերկրական ծովի շրջանում: Այլ կերպ հնարավոր չէ գնահատել ԱՄՆ-ի և Հունաստանի ներկայիս վարչակարգի համաձայնությունը Հունաստանի Պիրեյ նավահանգստում ամերիկյան վեցերորդ նավատորմին ռազմական բազա տրամադրելու մասին: Այլ կերպ չի կարելի գնահատել Կիպրոսի Հանրապետության ներքին գործերին միջամտելու կոպիտ փորձերը, կառավարության կազմը փոփոխելու վերջնագրային պահանջները, որոնց նպատակն է, վերջին հաշվով, վերացնել կիպրական պետության անկախությունն ու տերիտորիալ ամբողջականությունը: Այդ մասին է վկայում նաև միջերկրածովյան ամենաերիտասարդ պետության՝ Մալթայի վրա ՆԱՏՕ-ի գործադրած անպատկառ ճնշումը:

Մեր բարեկամների հետ միասին մենք աչալրջորեն հետևում ենք սոցիալիստական համագործակցության երկրների հարավային սահմաններին անմիջականորեն հարող շրջանում իմպերիալիստական ուժերի կողմից նյութվող դավերին և հակազդում դրանց:

Մենք մեր արտաքին և պաշտպանական քաղաքականության մեջ չենք կարող հաշվի չառնել, որ մի շարք իմպերիալիստական պետություններ շարունակում են սպառազինությունների մեծացումը: Այժմ Վաշինգտոնում քննարկվող նոր բյուջեով նախատեսվում է ռազմական ծախսերի զգալի աճ, առանձնապես ստրատեգիական սպառազինությունների երկարաժամկետ ծրագրի համար: Միացյալ Նահանգները պահանջում են նաև, որ ՆԱՏՕ-ի գծով իրենց դաշնակիցները ավելացնեն ռազմական հատկացումները:

Պահպանելով հաստատակամություն և բարձր զգոնություն, Սովետական Միությունը միջազգային ասպարեզում վարում է վճռական հակաիմպերիալիստական կուրս, հետևողականորեն և հաստատապես պաշտպանում է սոցիալիզմի, ժողովուրդների ազատության, ընդհանուր խաղաղության գործի շահերը: Այդ կուրսի կարևոր բաղկացուցիչ մասերից մեկը զինաթափման պայքարն է:

Զինաթափման վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջարկությունները պրակտիկայում արդեն ապացուցել են իրենց կենսական ուժը:

Միջազգային լայն և նպաստավոր արձագանք գտավ զինաթափման համաշխարհային կոնֆերանս հրավիրելու մեր նախաձեռնությունը: ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեան իր հատուկ բանաձևով հավանություն տվեց այդ գաղափարներին և որոշեց շարունակել համաշխարհային կոնֆերանս հրավիրելու հարցի քննարկումը:

Սոցիալիստական երկրների նախաձեռնությամբ նախապատրաստված է մի կոնվենցիա, որով արգելվում է մանրէական զենքը, նախատեսվում է լրիվ վերացնել դրա բոլոր պաշարները: Մենք գտնվում ենք կոնվենցիայի ստորագրման նախօրյակին:

Մենք օգտակար ենք համարում միջուկային պատերազմի ծագման վտանգի նվազեցման միջոցառումների մասին անցած տարվա աշնանը ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքված համաձայնագիրը: Սովետական Միությունը կողմնակից է այն բանին, որ միջուկային մյուս տերություններն էլ այս կամ այն ձևով դառնան այդ համաձայնության մասնակիցը:

Մենք լուրջ նշանակություն ենք տալիս ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման շուրջը սովետա-ամերիկյան բանակցություններին: Դրանց հաջողության բանալին այն է, որ երկու մասնակիցներն էլ ընդունեն կողմերի հավասար անվտանգության սկզբունքը և պատրաստակամություն հայտնեն գործնականորեն հետևելու այդ սկզբունքին: Մենք հանդես ենք գալիս փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածության հասնելու օգտին: Դա կհամապատասխաներ թե՛ սովետական և թե՛ ամերիկյան ժողովուրդների շահերին, միջազգային անվտանգության շահերին:

Իմպերիալիզմի ագրեսիվ ոտնձգություններին տրվող ուժեղ հակահարվածը ՍՍՀՄ արտաքին քաղաքականության մեջ զուգորդվում է հասունացած միջազգային պրոբլեմների նկատմամբ կոնստրուկտիվ մոտեցման հետ, գաղափարական պայքարում անհաշտությունը՝ հակադիր հասարակական սիստեմի պետությունների հետ փոխշահավետ հարաբերություններ զարգացնելու պատրաստակամության հետ: Այդ հարաբերությունների զարգացման նպատակով մեր կողմից իրականացվող կոնտակտների, այցերի և հանդիպումների մեջ կարևոր տեղ կարող են գրավել ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռիչարդ Նիքսոնի հետ առաջիկա բանակցությունները Մոսկվայում: Ինչպես հայտնի է, այդ բանակցությունները պետք է սկսվեն մայիսի 22-ին:

Մենք սովետա-ամերիկյան առաջիկա բանակցություններին մոտենում ենք գործարար, ռեալիստական դիրքերից: Մենք լավ ենք հասկանում, թե սովետա-ամերիկյան հարաբերությունների վիճակը ինչպիսի նշանակություն ունի թե՛ երկու երկրների ժողովուրդների կյանքի և թե՛ միջազգային ամբողջ իրադրության համար, կայուն խաղաղության կամ լարվածության ուժեղացման ասպարեզում դրա հետագա զարգացման համար:

Ուստի, մենք օգտակար ենք համարում ընդլայնել ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների այնպիսի բնագավառներ, որոնք թույլ տային, չնահանջելով մեր քաղաքականության սկզբունքներից, կազմակերպել փոխշահավետ համագործակցություն՝ ի շահ երկու երկրների ժողովուրդների և ընդհանուր խաղաղության ամրապնդման:

Մենք ավելի վաղ հայտարարել ենք և այժմ էլ հավաստում ենք. ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների բարելավումը հնարավոր է: Ավելին. դա ցանկալի է, բայց, իհարկե, ոչ որևէ երրորդ երկրի կամ ժողովրդի հաշվին, ոչ ի վնաս նրանց օրինական իրավունքների ու շահերի: Սա է մեր անշեղ դիրքավորումը:

Ընկերնե՛ր: Կոմունիստական շինարարության յուրաքանչյուր նոր փուլ սովետական ժողովրդի և նրա կոմունիստական ավանգարդի առջև ավելի ու ավելի բարդ և ծավալուն խնդիրներ է դնում, պահանջում է է՛լ ավելի մեծ գիտակցություն, է՛լ ավելի շատ գիտելիքներ և քաղաքական ակտիվություն:

Սովետական արհմիությունները իրենց XV համագումարն են եկել որպես սովետական հասարակության՝ բոլորի կողմից ճանաչված, սոցիալիզմի պայքարում կոփված մեծ և ազդեցիկ ուժ: Արհմիությունները իրենց պրակտիկ գործերով են ապացուցել, որ իրենք կոմունիզմի կառուցման գործում եղել են, կան ու կլինեն կուսակցության հուսալի հենարանը, մասսաների ճանաչված և հեղինակավոր կազմակերպիչները:

Այս տարի սովետական ժողովուրդը նշելու է մի հիշարժան տարելից՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակը: Կուսակցությունը բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, մտավորականությանը, բոլոր սովետական աշխատավորներին կոչ է անում այդ պատմական մեծ իրադարձության հոբելյանը նշանավորել սոցիալիստական մրցության նոր վերելքով, աշխատանքային նորանոր հաղթանակներով:



Ինձ համար հաճելի է ձեզ հաղորդել, ընկեր պատգամավորներ, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության, ժողովրդական տնտեսության զարգացման պլանների հաջող կատարման գործում սովետական արհմիությունների ունեցած մեծ ծառայությունների համար, ՍՍՀՄ արհեստակցական միությունները պարգևատրել է Լենինի շքանշանով:

Ի դեմս արհմիությունների, մեր հայրենիքի բարձրագույն շքանշանով պարգևատրվում են բանվոր դասակարգը, աշխատավոր մտավորականությունը, գյուղի աշխատավորների մեծաթիվ ջոկատը՝ ութերորդ հնգամյակի տարիներին երկրի հանդեպ ունեցած ծառայությունների համար: Ձեզ հաղորդելով, որ ՍՍՀՄ արհմիությունները պարգևատրվել են Լենինի շքանշանով, թույլ տվեք մեջ բերել այն խոսքերը, որոնցով Վ. Ի. Լենինը ավարտել է իր նամակը արհեստակցական միությունների՝ նրա կենդանության օրոք վերջին համառուսաստանյան հինգերորդ համագումարին. *«Բոլոր ուժերով, բոլոր կողմերից ուժեղացնել և բարելավել աշխատանքը...»:*

Կենտրոնական կոմիտեն խորապես համոզված է, որ հայրենիքի այդ բարձր պարգևը սովետական արհմիություններին նոր սխրանքների կոչեկոչի հանուն կոմունիստական շինարարության մեծ պլանների իրականացման, որոնք նախանշված են Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարի կողմից:

Թույլ տվեք նախագահությանը հանձնել կուսակցության Կենտրոնական կոմիտեի ողջույնը ՍՍՀՄ արհեստակցական միությունների XV համագումարին:

*(Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով: Համագումարի պատգամավորներն ու հյուրերը ճառի եզրափակիչ խոսքերն ընդունեցին հոտնկայս և բուռն, երկարատև օվացիայով: Դահլիճը վանկարկում էր. «Ուռա՜», «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Լենինյան Կենտրոնական կոմիտեին՝ փա՜ռք»):*



Ա. Մ. ԹևԼՈՒՆՑ

# ՄԱՐՏՆՉՈՂ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԻ ԾՐԱԳՐԱՅԻՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

*(Վ. Ի. Լենինի Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին հոդվածի հրատարակման 50-ամյակի առթիվ)*

1922 թ. սովետական անդրանիկ փիլիսոփայական «Под знаменем марксизма» հանդեսի 3-րդ համարում հրապարակվեց Վ. Ի. Լենինի Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին հոդվածը։ 50 տարի է անցել, և պատմական այդ ժամանակաշրջանի ընթացքում փիլիսոփայության և, առհասարակ, ողջ գաղափարախոսության բնագավառի կարևորագույն իրադարձություններն ու պայքարը ակներև ցույց են տալիս, թե ինչպիսի խորաթափանցությամբ է կարողացել հանճարեղ տեսաբանը բացահայտել մարքսիստական փիլիսոփայական մտքի զարգացման հիմնական տենդենցներն ու խնդիրները և ըստ այնմ էլ ուրվագծել այդ զարգացման ծրագրային ուղղությունները պատմական նոր, իր բովանդակությամբ անսովոր հարուստ ու բարդ դարաշրջանում։ Հիրավի, Լենինի փիլիսոփայական կտակ անվանված այդ աշխատությունն այժմ ևս պահպանում է իր տեսական, ծրագրային նշանակությունը, դաստիարակում նորանոր սերունդներ գաղափարական սկզբունքայնության ոգով, պատվաստում լրջախոհ վերաբերմունք գիտության ու փիլիսոփայության նկատմամբ, ստեղծագործական մոտեցում տեսական հետազոտությունների բնագավառում։

Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին հոդվածը մեծ մտածողի փիլիսոփայական խոշոր աշխատությունների, հատկապես Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմի և Փիլիսոփայական տետրերի անմիջական շարունակությունն է և, միաժամանակ, խորապես արտացոլում է այն պատմական իրողությունը, որ այն գրված է սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո։ Այդ աշխատության ուղն ու ծուծն են կազմում այն խնդիրների բացահայտումը, որ ծառանում է նոր ծնունդ առնող հասարակարգի փիլիսոփայության առջև, և այդ իսկ խնդիրների լուծման ուղիների նշումը։



Լենինը նախ առաջադրում է բոլոր հետևողական մատերիալիստների— բոլոր կոմունիստների և ոչ կոմունիստների դաշինքի հարցը, ընդամին ընդգծելով, որ նրանց դաշինքը կենսականորեն անհրաժեշտ է երկրի հասարակական-քաղաքական գործունեության ամենատարբեր բնագավառներում. «...Յուրաքանչյուր լուրջ հեղափոխական աշխատանքի հաջողության համար անհրաժեշտ է ըմբռնել և կենսագործել կարողանալ այն, որ հեղափոխականներն ընդունակ են դեր կատարելու միայն իբրև իսկապես կենսունակ և առաջավոր դասակարգի ավանգարդ։ Ավանգարդը միայն այն ժամանակ է կատարում ավանգարդի խնդիրներ, երբ նա կարողանում է չկտրվել իր ղեկավարած մասսայից, այլ իսկապես առաջ տանել ամբողջ մասսային» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 266)։ Կոնկրետացնելով կոմունիստների և ոչ կոմունիստների դաշինքի հարցը փիլիսոփայության բնագավառում, Վ. Ի. Լենինն ըստ ամենայնի ընդգծում է այն բանի անհրաժեշտությունը, որ կոմունիստ-մատերիալիստները համատեղ աշխատանքի մեջ ներգրավեն հետևողական և մարտնչող մատերիալիզմի բոլոր կողմնակիցներին, որոնք այն ժամանակ քիչ չէին առաջավոր բնախույզների շրջանում։ Այս առնչությամբ Լենինը հիշեցնում է, որ Ռուսաստանի առաջավոր հասարակական մտքի գլխավոր ուղղությունները մատերիալիստական լուրջ տրադիցիա ունեն, որից նահանջել են «ժամանակակից նարոդնիկները» և կառչել մոդայական փիլիսոփայական ուսմունքներին, բայց որն իսկապես գնահատել և խելամտորեն օգտագործել կարող են միայն հետևողական մատերիալիստները։ Հետևողական և մարտնչող մատերիալիստների համատեղ աշխատանքի անհրաժեշտությունը բխում է ինչպես դիալեկտիկա-մատերիալիստական փիլիսոփայության ստեղծագործական զարգացման, նույնպես և փիլիսոփայական ռեակցիայի դեմ մղվող պայքարի պահանջներից։ Միաժամանակ Լենինն ամենայն խորությամբ ընդգծում է նաև մարքսիստ փիլիսոփաների և ժամանակակից բնագիտության ներկայացուցիչների դաշինքի մեծագույն նշանակությունը։

Դեռևս Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ գրքում, տալով ժամանակակից բնագիտության խոշորագույն նվաճումների փիլիսոփայական ընդհանրացումը և բացահայտելով ֆիզիկայի ճգնաժամի ու ֆիզիկական իդեալիզմի էությունը, Լենինը մատնանշում էր, որ ժամանակակից ռեակցիոն հավակնությունները փիլիսոփայության մեջ ծնունդ են առնում հենց գիտության առաջադիմությունից։ Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին աշխատության մեջ, կրկին անդրադառնալով այդ խնդրին, նա հիշեցնում է, որ «հենց ժամանակակից բնագիտության ապրած խիստ բեկումից են շարունակ ծնվում ռեակցիոն փիլիսոփայական դպրոցներն ու դպրոցիկները, ուղղություններն ու ուղղությունիկները» (Երկեր, հ. 33, էջ 273)։ Այստեղից հետևում է, որ փիլիսոփայական ռեակցիայի դեմ հաջող պայքարի կարևորագույն պայմաններից մեկը ժամանակակից գիտության նվաճումների, զարգացման պայմանների ու օրինաչափությունների, տենդենցների ու հեռանկարների դիալեկտիկա-մատերիալիստական խոր վերլուծությունն է, որի հիման վրա միայն հնարավոր է ցույց տալ, թե սոցիալական ինչպիսի՛ պայմաններում ու իմացաբանական ակունքներում է գիտության նվաճումներին տրվում իդեալիստական մեկնա-

բանությունն և ի՛նչ դասակարգային շահեր են հետապնդում գիտության տըվ-
յալների իդեալիստական ու կրոնա-միստիկական չարաշահումները: Թե ինչպի-
սի նշանակություն էր տալիս Լենինը բնագիտության ասպարեզում նորագույն
հեղափոխության էության դիալեկտիկա-մատերիալիստական քննարկմանը,
երևում է նրա հետևյալ դրույթից. «...Բնագիտության ասպարեզում նորագույն
հեղափոխության առաջադրած հարցերին հետևելը և փիլիսոփայական ժուռ-
նալում այդ աշխատանքի մեջ բնագետներին ներգրավելը մի խնդիր է, առանց
որի լուծման մարտնչող մատերիալիզմը չի կարող ոչ մի դեպքում ո՛չ մարտըն-
չող լինել և ո՛չ մատերիալիզմ» (նույն տեղում, էջ 273—274): Սա խոր, ծրա-
գրային դրույթ է թե՛ փիլիսոփայության և թե՛ բնագիտության համար, և դրա
անանցողիկ նշանակությունը գնալով ավելի ու ավելի ակնբախ է դառնում:

Ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը, որն ավելի
քան երբևէ դրսևորում է գիտական ու տեխնիկական մտքի և դրա պրակտիկ
կիրառության տնտեսական ու սոցիալական աճող դերն ու նշանակությունը,
նորանոր խնդիրներ է հարուցում հասարակական կյանքի և մտքի առջև, որոնց
լուծման համար պահանջվում է, ամենից առաջ՝ փիլիսոփայության և բնագի-
տության այն դաշինքի ամրապնդումը, որի նշանակությունը մարգարեաբար
բացահայտել է Լենինը: Փիլիսոփայական միտքը չի կարող իր կոչման բարձրու-
թյան վրա լինել առանց բնագիտության ժամանակակից տվյալների յուրացման
ու վերլուծման, բայց բնագիտությունն էլ առանց գիտական փիլիսոփայության
չի կարող հաջող լուծել իր իսկ առջև կանգնած խնդիրները, խուսափել ճգնա-
ժամերից և դեն նետել իդեալիստական ու ագնոստիկական մտակառուցումների
այն խճճվածքը, որը վաղուց ի վեր «գիտության փիլիսոփայության» դեր է հայ-
ցում: Եվ մեր ժամանակներում հրատապ է հնչում Լենինի նախազգուշացումը.
«...առանց լուրջ փիլիսոփայական հիմնավորման ոչ մի բնական գիտություն,
ոչ մի մատերիալիզմ բուրժուական գաղափարների գրոհի և բուրժուական աշ-
խարհայեցողության վերականգնման դեմ մղվող պայքարում դիմանալ չի կա-
րող: Այդ պայքարին դիմանալու և այն լիակատար հաջողությամբ, մինչև վերջը
հասցնելու համար բնագետը պետք է լինի ժամանակակից մատերիալիստ, գի-
տակից կողմնակից այն մատերիալիզմի, որը ներկայացրել է Մարքսը, այ-
սինքն՝ պետք է դիալեկտիկ մատերիալիստ լինի» (նույն տեղում, էջ 274):

Ինչպես իր փիլիսոփայական մյուս աշխատություններում, այս հոդվածում
ևս Լենինի ուշադրության կենտրոնում է ժամանակակից, այսինքն՝ դիալեկտի-
կական մատերիալիզմի զարգացման հարցը: Դեռևս իր Մատերիալիզմ և էմ-
պիրիոկրիտիցիզմ աշխատության մեջ, խոսելով իր մեծ ուսուցիչների՝ Մարքսի
և Էնգելսի, փիլիսոփայության ոլորտին մատուցած ծառայության մասին, Լե-
նինն ամենից առաջ նշում էր, որ նրանք համարյա կես հայրուրամյակի ըն-
թացքում զարգացրել են մատերիալիզմը, առաջ են մղել այն, կանգ չեն առել
արդեն լուծված իմացաբանական հարցերի վրա, ցույց են տվել, թե ինչպես
կիրառել այդ մատերիալիզմը հասարակական գիտությունների բնագավառում:
Շարունակելով իր ուսուցիչների ավանդը՝ Լենինն անդուլ զարգացնում էր դիա-
լեկտիկական մատերիալիզմը, ուսուցանում ու պահանջում մարքսիստ փիլի-
սոփաներից կատարել նույնը: Վերն արդեն տեսանք, որ փիլիսոփայության
զարգացման հիմնական ուղիներից մեկը Լենինը համարում էր դաշինքը բնա-
գետների հետ, բնագիտության փիլիսոփայական հարցերի համատեղ մշակումը
բնագետների ու փիլիսոփաների միջև: Իսկ բնագիտության փիլիսոփայական



պրոբլեմների մշակման և, առհասարակ, գիտական փիլիսոփայության զար-
գացման առանցքային հարցը Լենինը համարում էր մատերիալիստական դիա-
լեկտիկայի հետագա մշակումն ու զարգացումը:

Դիալեկտիկայի, որպես ամբողջական գիտության, զարգացումը, ինչպես
բազմիցս նշել են մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները, պետք է խարսխվի ողջ
մարդկային պրակտիկայի, նյութական ու հոգևոր մշակույթի հետա-
զոտության ու իմաստավորման վրա: Մարտնչող մատերիալիզմի նշանակու-
թյան մասին հոդվածում Լենինը հատուկ նշում է փիլիսոփայության ժառան-
գության օգտագործման հարցը, առանձնապես հեգելյան դիալեկտիկայի
մատերիալիստական վերամշակման և օգտագործման անհրաժեշտությունը:
Հեգելյան դիալեկտիկայի մատերիալիստական օգտագործման ուսանելի օրի-
նակ են տվել մարքսիզմի հիմնադիրները: Վ. Ի. Լենինն ընդգծում է դրա կարև-
վորությունը: Բայց խնդիրը, անշուշտ, միայն մեծարժեք նմուշների ու սկըզ-
բունքների յուրացումը չէ: Դիալեկտիկան պետք է ուսումնասիրել՝ կիրառելով
այն ժամանակակից պատմության, հեղափոխական փորձի հետազոտության
ոլորտում. այս է լենինյան կարևոր պատգամներից մեկը: Հեգելյան դիալեկ-
տիկայի հմուտ օգտագործումը շատ բան կտա և բնագետներին փիլիսոփայա-
կան այն հարցերի լուծման բնագավառում, որ առաջադրում է բնագիտության
մեջ կատարվող հեղափոխությունը: Լենինը մեծ կարևորություն էր տալիս
դրան, ասելով, որ առանց իր առջև այդպիսի խնդիր դնելու և այն սիստեմա-
տիկ կերպով իրագործելու, մատերիալիզմը չի կարող մարտնչող լինել:

Անդրադառնալով հեգելյան դիալեկտիկայի մատերիալիստական մշակման
ու օգտագործման հարցին՝ Լենինը միաժամանակ նշում էր այդ աշխատանքի
արտակարգ դժվարությունը, ուստի և որոշ սխալների անխուսափելիությունը:
Բայց մեծ տեսաբանը սովորեցնում էր չվախենալ դրանցից: Եվ իրոք, ինչպես
այդ, նույնպես և այլ բնագավառներում եղան սխալներ: Հայտնի է, որ որոշ
փիլիսոփաներ անտեսում կամ, պարզապես, ժխտում էին հեգելյան իդեալիս-
տական և մարքսյան մատերիալիստական դիալեկտիկայի որակական տարբե-
րությունն ու հակադրությունը: Հայտնի են և հեգելյան դիալեկտիկայի քննա-
դատական օգտագործման անհրաժեշտության ժխտման փորձերը, թեկուզ և այն
պատճառաբանմամբ, թե ողջ անհրաժեշտը կատարել են մարքսիզմ-լենինիզմի
կլասիկները: Բայց պատմությունը ցույց տվեց Լենինի պահանջի խոր հիմնա-
վորվածությունն ու այժմեականությունը այս հարցում ևս. փիլիսոփայության,
մատերիալիստական դիալեկտիկայի հետագա արգասավոր զարգացումը հնա-
րավոր չէ առանց քննադատաբար յուրացնելու, ժամանակակից գիտության
տվյալների հիման վրա իմաստավորելու անցյալի հարուստ փիլիսոփայական
ժառանգությունը:

Հարկ է նշել, որ հեգելյան դիալեկտիկայի մատերիալիստական ընթերց-
ման ու մատերիալիստական վերամշակման խնդրում անգնահատելի դեր են
խաղում Լենինի փիլիսոփայական երկերը, մասնավորապես Հեգելի գլխավոր
աշխատությունների կոնսպեկտները, որոնք կազմված են 1914—1915 թթ. և
առաջին անգամ հրատարակվել են 1929—1930 թթ., իսկ 1933 թ. սկսած դրանք
զետեղվել են Փիլիսոփայական տետրեր գրքում: Հատկապես այստեղ է Լենինը
տալիս հեգելյան դիալեկտիկայի մատերիալիստական ընթերցման արժեքավոր

նմուշներ՝ շեշտում մատերիալիստական դիալեկտիկայի հետագա զարգացումը և նշում, որ «Հեգելի ու Մարքսի գործի շարունակությունը պետք է լինի՝ մարդկային մտքի, գիտության ու տեխնիկայի պատմության դիալեկտիկական մշակումը» (Երկեր, հ. 38, էջ 173)։ Լենինի փիլիսոփայական ժառանգությունը և նրա ուսանելի ցուցումները հատուկ նշանակություն ունեն ժամանակակից պայմաններում, երբ մատերիալիստական փիլիսոփայության առաջնահերթ խնդիրը հանգում է դիալեկտիկայի՝ որպես օրենքների ու կատեգորիաների մի ամբողջական համակարգի, որպես բնության ու հասարակության իմացության տեսության ու մեթոդոլոգիայի մշակմանը։

Վ. Ի. Լենինի հոդվածի հիմնական նպատակը, ինչպես երևում է վերնագրից, մարտնչող մատերիալիզմի պաշտպանությունն է, դրա զարգացման հնարավորությունների բացահայտումը, գլխավոր խնդիրների ձևակերպումը։ Մարտնչող մատերիալիզմի մեջ տեսնելով նոր հասարակության կառուցման տեսական-աշխարհայացքային բաղան, Լենինը մտահոգված էր նրանով, որ այն ըստ ամենայնի իրագործի իր աշխարհայացքային ֆունկցիան, ի սպաս դրվի մարդկանց կոմունիստական դաստիարակության մեծ խնդրին, կատարի իր մարտական դերը փիլիսոփայական ռեակցիայի ու կրոնական աշխարհայացքի դեմ մղվող պայքարում։ Այդ հոդվածը փիլիսոփայության կուսակցականության սկզբունքի վառ դրսևորումն է։ Տոգորված սկզբունքային մարտունակությամբ, նա կոչ է անում չհանդուրժել շահագործողական հասարակության պաշտպանության ոչ մի փորձ, ամեն տեսակ նախապաշարմունք, տերտերականություն։ Լենինը հատկապես նշում է մարտնչող մատերիալիզմի դերը կրոնական աշխարհայացքի դեմ մղվող պայքարում, պահանջում, որ մարտնչող մատերիալիզմի օրգան փիլիսոփայական հանդեսը լիովին դրսևորի իրեն և որպես մարտնչող աթեիզմի օրգան։

Աշխատավորական իշխանության հաստատմամբ կրոնը սկսում է զրկվել իրեն սնուցող սոցիալական հողից, բայց կրոնը և կրոնական նախապաշարմունքները չէին կարող ինքնաբերաբար վերանալ միայն այն բանի հետևանքով, որ վերջ է տրված շահագործողական կարգերին։ Հրատապ անհրաժեշտություն է դառնում կրոնական աշխարհայացքի գիտական քննադատությունը, խելացի ու համոզիչ հակակրոնական պրոպագանդան։ Սովետական իշխանության առաջին տարիներին հակակրոնական պրոպագանդայի ասպարեզում կատարված աշխատանքը, Լենինի գնահատմամբ, հեռու էր բավարար լինելուց։ Նա նշում էր, որ զուտ մարքսիստական լուսավորության ուղիղ գծով հնարավոր չէ խավարից դուրս բերել անցյալում տգիտության ու նախապաշարմունքների դատապարտված մասսաներին, որ պետք է փնտրել ու գտնել բազմազան ձևեր նրանց կրոնական նիրհից արթնացնելու համար։ Այստեղ ևս շատ բան կարող է տալ և մինչև հիմա էլ տալիս է անցյալի արժեքավոր ժառանգությունը։ Վ. Ի. Լենինը հատուկ նշում է XVIII դարի ֆրանսիական աթեիստների «աշխույժ, կենդանի, տաղանդավոր, սրամիտ ու տիրող տերտերականության վրա բացահայտ կերպով հարձակվող» աթեիստական գրականության ու հրապարակախոսության օգտագործման անհրաժեշտությունը։ Ավելին, քննադատելով տեսական գործունեության մեջ ուղղագծության վնասակարությունը՝ Լենինը նշում էր, որ դավաճանություն կլիներ մարքսիզմին խորշել դաշինքից XVIII դարի հեղա-



փոխական բուրժուազիայի ներկայացուցիչների հետ և, «այս կամ այն ձևով, այս կամ այն չափով» հնարավոր էր համարում «դաշինքը» նաև հետագա ժամանակաշրջանի բուրժուական այն գիտնականների հետ, որոնց գրվածքները փաստական և այլ կարգի արժեքավոր նյութ են տալիս հակակրոնական պրոպագանդայի համար. միաժամանակ Վ. Ի. Լենինը պահանջում էր անշեղորեն մերկացնել նրանց, երբ նրանք ընկնում են ռեակցիոնության մեջ։

Սրանք են այն խնդիրները, որ քննարկված են Լենինի փիլիսոփայական կտակում և որոնք միայն անցյալին չեն պատկանում, այլ, նոր ժամանակաշրջանի ոգուն համապատասխան, այժմ ևս ծառացած են փիլիսոփայության ու ողջ գաղափարական ճակատի առջև։ Այդ խնդիրների լենինյան լուսաբանումն ու քննարկումն իրենց անփոխարինելի դերն են կատարել անցյալ տասնամյակներում, թեև քիչ չեն եղել շեղումներ ու խոտորումներ կապված, հատկապես, անձի պաշտամունքի հետ։ Բայց ամենակարևորն այն է, որ սովետական փիլիսոփայական հասարակայնությունը, մանավանդ վերջին երկու տասնամյակում, ամենայն լրջությամբ ուսումնասիրելով լենինյան փիլիսոփայական ժառանգությունը, կարողացավ ըստ արժանվույն գնահատել և նրա փիլիսոփայական կտակը, կենսագործել այնտեղ առաջադրված խնդիրները։ Հիշատակենք ամենից առաջ այն առաջադիմությունը, որ նկատվում է ժամանակակից բնագիտության փիլիսոփայական պրոբլեմների մշակման, ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության էության, բնույթի, հեռանկարների հետազոտության բնագավառում։ Ավելի ու ավելի է ամրանում փիլիսոփայության և բնագիտության ներկայացուցիչների դաշինքը, ավելի ու ավելի մեծ թվով գիտնականներ ո՛չ միայն Սովետական Միությունում և սոցիալիստական մյուս երկրներում, այլև ողջ աշխարհում կանգնել ու կանգնում են ժամանակակից մատերիալիզմի դիրքերում, համոզվել ու համոզվում են, որ ժամանակակից բնագիտության զարգացումը նոր ուժով է դրսևորում լենինյան խորիմաստ դրույթի ճշմարտացիությունը. «Բնագիտությունն այնքան արագ է առաջադիմում, այնքան խոր հեղափոխական բեկման շրջան է ապրում բոլոր ասպարեզներում, որ բնագիտությունն առանց փիլիսոփայական եզրակացությունների ոչ մի դեպքում չի կարող կառավարվել» (Երկեր, հ. 33, էջ 276)։

Մեծ են նվաճումները նաև փիլիսոփայության ժառանգության լուսաբանման և քննադատաբար օգտագործելու բնագավառում. մեծ թվով աշխատություններ են նվիրված առանձին փիլիսոփաների ուսմունքների ուսումնասիրությանը, ՍՍՀՄ ժողովուրդների և համաշխարհային փիլիսոփայական մտքի զարգացման պատմության լուսաբանմանը, հրատարակվել և հրատարակվում են ՍՍՀՄ և մյուս երկրների ժողովուրդների փիլիսոփայության կարկառուն գործիչների, ինչպես և նշանավոր աթեիստների երկերը։

Մարքսիստ փիլիսոփաների համար միշտ էլ ծրագրային նշանակություն են ունեցել Լենինի ցուցումները փիլիսոփայության կուսակցականության մասին։ Սովետական փիլիսոփաները, կենսագործելով Վ. Ի. Լենինի պատգամները, անհաշտ պայքար են մղում ժամանակակից փիլիսոփայական ռեակցիայի, խավարամտության կրոնական աշխարհայացքի դեմ։ Բուրժուական փիլիսոփայությունն այժմ քննադատվում է ավելի հիմնավորված, գիտության ժամանակակից տվյալների լայն օգտագործմամբ, ավելի սկզբունքայնորեն։ Միաժամանակ մարքսիստ-փիլիսոփաներն առաջնորդվում են Վ. Ի. Լենինի ցուցումով—

*շվերածել մատերիալիստական սկզբունքայնությունը ուղղագծության և աղանդավորության, կարողանալ տարբերել կապիտալիստական երկրների գիտության ռացիոնալ նվաճումները իդեալիստական ու ագնոստիկական ժանգից, որը բուրժուական ռեակցիոն գաղափարախոսության պայմաններում անխուսափելիորեն փառակալում է գիտությունը։*

*Բայց այն ամենը, ինչ արված է Վ. Ի. Լենինի փիլիսոփայական կտակի կենսագործման ասպարեզում, ամենևին հանգստանալու պատճառ չի կարող հանդիսանալ։ Գաղափարական պայքարի աննախընթաց սրումը, գիտության վիթխարի զարգացումը, հասարակական կյանքում խմորվող պատմական մեծ պրոցեսները նորանոր, դեռևս չլուծված խնդիրներ են հարուցում փիլիսոփայական մտքի առջև և դա պահանջում է նրանից ավելի մեծ թափ, տեսական կարողություն, գիտական խիզախում։*

*Լենինի ուշադրության կենտրոնում էր աշխատավորության կոմունիստական դաստիարակության, նրան գիտական մատերիալիստական աշխարհայացքով զինելու խնդիրը, որը և* Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին *հոդվածի ուղն ու ծուծն է։ Այդ խնդրի կենսագործումն է ընկած և Լենինի հիմնադրած Սովետական Միության կոմունիստական կուսակցության ողջ աշխատանքի հիմքում, որը ընդգծված է ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում. «Աշխատավորության մեջ մարքս-լենինյան աշխարհայացքի, գաղափարական-քաղաքական վսեմ հատկությունների, կոմունիստական բարոյականության նորմերի ձևավորումը այսուհետև ևս մնում է կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական աշխատանքի կենտրոնական խնդիրը»։ Վ. Ի. Լենինի վեհ գաղափարների կենսագործումը կոմունիստական մեծ նախագծումների իրականացման գրավականն է։*





Կուսակցական ուսուցման սիստեմի ունկնդիրների համար

ՅՈՒ. ԶԱԽԱՐՈՎ

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՄԻՋԵՎ ՄՂՎՈՂ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԱՐԴԻ ՓՈՒԼԸ*

*ՍՈՑԻԱԼԻԶՄԻ և կապիտալիզմի միջև մղվող գաղափարախոսական պայքարի այժմյան փուլի բնույթը շատ կողմերով որոշվում է այն ընդհանուր իրադրությամբ, որում այսօր ընթանում է համաշխարհային սոցիալ-տնտեսական երկու սիստեմների պատմական հակամարտությունը։ Թեև սոցիալիզմի դեմ մղվող պայքարում բուրժուազիայի՝ իր գաղափարախոսներին առաջադրած գլխավոր խնդիրն անփոփոխ է մնում և որոշվում է իմպերիալիզմի գլոբալ քաղաքական ստրատեգիայով—բոլոր հնարավոր եղանակներով կասեցնել սոցիալիստական գաղափարների տարածումը, թուլացնել համաշխարհային սոցիալիզմի դիրքերը և անգամ շրջել պատմական զարգացման ընթացքը—գաղափարական պայքարի կոնկրետ խնդիրները, դրա ակտիվության չափը, միջոցների, ձևերի ու մեթոդների ընտրությունը յուրաքանչյուր որոշակի փուլում պայմանավորվում են, ամենից առաջ, նրանով, թե ինչպես է ընթանում երկու սիստեմների մրցակցությունը տնտեսական, քաղաքական և այլ մարզերում։ Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև հակամարտության ձևերից մեկը լինելով, գաղափարախոսական պայքարն օրգանապես զուգակցվում և միահյուսվում է նրա բոլոր մնացած ձևերի հետ։*

Արդի զարգացման կարևոր տենդենցը, դրա բնորոշ առանձնահատկությունը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող գաղափարախոսական պայքարի ընդհանուր ուժգնացումն է, ամբողջովին վերցրած դրա ազդեցության մեծացումը հասարակական կյանքի վրա:

*Քանի դեռ իմպերիալիզմը սոցիալիզմի բռնի վերացման հույսեր ուներ, գաղափարախոսական զենքը ստորադաս դերում էր։ Գաղափարախոսական զանազան դոկտրիններ ու կոնցեպցիաներ կոչված էին, ամենից առաջ, արդարացնելու սոցիալիզմի դեմ մղվող պայքարի այլ միջոցների օգտագործումը, իսկ արտաքին քաղաքական պրոպագանդան ուղղվում էր հիմնականում ռազմական, տնտեսական և դիվանագիտական գործողությունների ապահովմանը։*

*Աշխարհում ուժերի հարաբերակցության փոփոխությունը սոցիալիզմի օգտին, «ուժի դիրքերից» քաղաքականության կրած պարտությունը հարկադրում են իմպերիալիստական պետությունների կառավարող շրջաններին իրենց նպատակներին հասնելու համար դիմելու ուրիշ միջոցների, որոնելու այլ ուղիներ։ Սա ամենևին չի նշանակում, թե իմպերիալիզմը հրաժարվում է սոցիալիզմի դեմ մղվող պայքարի բռնի եղանակներից։ Սակայն, փոփոխվող պայմաններում, իմպերիալիստական շրջանները, տնտեսական, քաղաքական*

** Տպագրվում է որոշ հապավումներով— Խմբ.։*

Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի գիտության և ուսումնական հաստատությունների բաժնի վարիչ

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ՀԱՍԱՐԱԿԱԳԻՏԱԿԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐԻ ԱՎԱՆԴՈՒՄԸ

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը սահմանեց մեր երկրի հետագա առաջընթացի հիմնական ուղղությունները, կուսակցությանը և ժողովրդին զինեց գիտականորեն հիմնավորված սոցիալ-տնտեսական, քաղաքական ծրագրով։ Այդ ծրագրում կարևոր դեր է վերապահված կրթությանը՝ սոցիալական և գիտա-տեխնիկական առաջընթացի հուժկու գործոնին։ Որպես կարևորագույն առաջադրանք՝ համագումարն առաջ քաշեց ժամանակակից գիտության նվաճումների հիման վրա կրթության ողջ սիստեմի հետագա զարգացման, կատարելագործման հարցը։*

*Նոր, ավելի մեծ խնդիրներ են դրվում բարձրագույն ուսումնական հաստատությունների առջև։ Այժմ, երբ գիտությունն իր բազմաթիվ ճյուղերով ավելի ու ավելի է վերածվում արտադրաուժի, կյանքը պահանջում է ուսման բոլոր օղակների կատարելագործում։ Հրամայական խնդիր է դառնում ուսումնական դասընթացը վարել ժամանակակից գիտության նվաճումներին համապատասխան։*

*Մեր երկրում բուռն զարգացում է ապրում բարձրագույն կրթության գործը։ Երկրի բուհերը նախորդ հնգամյակում պատրաստեցին 7 միլիոն մասնագետ։ Ներկա հնգամյակի ընթացքում այդ թիվը կհասնի 9 միլիոնի։*

*Հանրապետության բուհերում 1960 թվականի 20 հազար ուսանողների դիմաց ներկայումս ունենք 56 հազար ուսանող։ Վեր են խոյացել բուհերի նոր կորպուսներ, ստեղծվել են բազմաթիվ նոր լաբորատորիաներ, ամրապնդվել է դրանց նյութատեխնիկական բազան։ Բուհական կրթության օջախներ են ստեղծվել Կիրովականում, Լենինականում, Գորիսում։ Ընդլայնվել է նոր, ժամանակակից մասնագիտությունների ցանցը։ Առանձնապես ուժգին է ճշգրիտ գիտությունների զարգացման թափը։*

*Ընթացիկ հնգամյակը նոր զարգացում է նախատեսում բարձրագույն դպրոցի համար։ Կուսակցության և կառավարության ընդունած որոշումներին*



*համապատասխան, ՀԿԿ Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը մշակել են միջոցառումների ռեալ ծրագիր, բուհական կրթությունն ընդլայնելու, ուսանողության կուլտուրական-կենցաղային պայմանները բարելավելու, թոշակներն ավելացնելու, նոր հանրակացարաններ կառուցելու, ուսանողների սննդի, առողջապահության գործն արմատապես բարելավելու համար։*

*Կոմունիստական կուսակցությունն առանձնահատուկ կարևորություն է տալիս ուսանող երիտասարդության մարքս-լենինյան ուսուցմանը։ Ուսանողների կողմից ՍՄԿԿ հերոսական պատմության, փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի հիմունքների խոր, ստեղծագործական ուսումնասիրությունը վճռական դեր է խաղում նրանց կոմունիստական աշխարհայացքի, բարձր կուսակցականության, գաղափարական համոզվածության ձևավորման գործում և նրանց ընդհանուր գիտական պատրաստականության անքակտելի մասն է կազմում։ Հասարակական գիտությունների դասավանդման գաղափարական-տեսական և ուսումնա-մեթոդական մակարդակի հետագա բարձրացումն ապագա մասնագետների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման կարևորագույն պայմանն է։*

*Կուսակցության XXIV համագումարը հասարակագիտական առարկաների դասախոսների կարևորագույն խնդիրն է համարում ուսանող երիտասարդության գիտական, կոմունիստական աշխարհայեցողության հետևողական ձևավորումը, աշխարհայացք, որը միլիոնավոր մարդկանց կամքն ու կորովն ի սպաս դնի կոմունիզմի կառուցման վեհ գործի հաղթանակին, սոցիալիստական հայրենիքի հզորության ու բարգավաճման վերընթացին։ Միայն այս դեպքում մեր բուհերի շրջանավարտներն ի վիճակի կլինեն արդարացնելու կոմունիզմի շինարարների այն բարձր կոչումը, որին արժանացել են նրանք լենինյան կուսակցության ու սովետական ժողովրդի միասնական կամքով։*

*Ուսանողների համամիութենական հավաքում արտասանած ճառում ընկ. Բրեժնևն ընդգծեց, որ «Մասնագիտությունը ստեղծագործորեն յուրացնել մեր կոմունիստական շինարարության ակտիվ մասնակից, մասսաների մեջ կուսակցության քաղաքականության կիրառող դառնալ կարելի է մարքս-լենինյան տեսությանը տիրապետելով միայն։ Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը յուրաքանչյուր պրոֆիլի մասնագետի գիտելիքների հիմքն է, նրա անկապտելի բաղկացուցիչ մասը»։*

*Հասարակական գիտությունների ամբիոնների դասախոսներին է վստահված ուսանողների մարքս-լենինյան աշխարհաճանաչողության, քաղաքական համոզվածության պատվաստման ու դաստիարակության գործը։ Նրանք գտնվում են գաղափարական ճակատի առաջին գծում և կուսակցությունը նրանցից պահանջում է բոլշևիկյան սկզբունքայնություն, կյանքի երևույթների սթափ վերլուծություն։ Ուսուցման պրոցեսը պետք է սերտորեն զուգակցվի կոմունիստական դաստիարակության պրոցեսի հետ։*

*XXIV համագումարն ամենայն սրությամբ ընդգծեց արդի էտապում մարքս-լենինյան տեսության զարգացման կենսական անհրաժեշտությունը։ Տեսական ակտուալ պրոբլեմների լուծման գործում մեծ և պատասխանատու խնդիրներ են դրված գիտական հաստատությունների ու բուհերի հասարակագիտական ամբիոնների աշխատողների առջև։*

*Տեսության ստեղծագործական զարգացումը՝ դասավանդման բարելավման և դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման*

հիմքն է։ Տեսական միտքը կոչված է անընդհատ հարստացնելու բուհական կոլեկտիվների գաղափարական կյանքը, օգնելու կուսակցական և սովետական մարմիններին կոմունիստական շինարարության գործնական խնդիրների լուծման գործում։ Կուսակցությունը հասարակական գիտությունների բնագավառի աշխատողներից պահանջում է առավել վճռական շրջադարձ կատարել դեպի այն պրոբլեմների մշակումը, որոնք ակտուալ են այսօրվա և ապագայի համար։

Անվիճելի է, որ հասարակական գիտությունների ամբիոնները հանրապետության բուհերում մեծ աշխատանք են կատարել դասավանդումը կատարելագործելու բնագավառում, զգալի հաջողությունների են հասել ուսումնական պրոցեսի գիտական, ավելի բարձր մակարդակով իրականացնելու ասպարեզում։ Դրա ապացույցը պատանիների և աղջիկների հետաքրքրության աճն է հասարակագիտական մասնագիտությունների նկատմամբ։ Դրա ապացույցը բուհում դասավանդվող մյուս առարկաների համեմատությամբ հասարակական գիտությունների բնագավառում հանրապետության ուսանողության ավելի բարձր առաջադիմությունն է։

Լայնորեն օգտագործելով կուսակցության վերջին որոշումները, ժամանակակից գիտության և հասարակական պրակտիկայի նվաճումները, մեր դասախոսներն ավելի խոր և փաստարկված են շարադրում մարքս-լենինյան տեսությունը, այն առնչում մեր ժամանակի սոցիալական տեղաշարժերի հետ։

Հասարակական գիտությունների դասավանդումը բուհերում վերջին ժամանակներս իրականացվում է լենինյան հարուստ տեսական ժառանգության խոր ուսումնասիրման նշանաբանով։ Դրական դեր է խաղում վերջերս տարածում գտած պարապմունքների այն ձևը, երբ թեմայի ուսումնասիրությունը շաղկապվում է ուսանողական զեկուցումների և ռեֆերատների քննարկման, ուսումնասիրվող պրոբլեմների շուրջը մտքերի փոխանակության կազմակերպելու հետ։

## ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ՀԱՍԱՐԱԿԱԳԻՏԱԿԱՆ ԱՌԱՐԿԱՆԵՐԻ ԴԱՍԱՎԱՆԴՈՒՄԸ

Հասարակագիտական ամբիոնների առաջնահերթ խնդիրն է՝ բուհերում մասնագետների պատրաստման ողջ պրոցեսի գաղափարական-քաղաքական նպատակաուղղվածության ապահովումը։ Տրադիցիա ունեցող բուհերի հասարակագիտական ամբիոններն պատվով են կատարում այդ դերը։ Սակայն տակավին քիչ չեն այն հասարակագիտական ամբիոնները, որոնք համալրված չեն բարձրորակ դասախոսներով, որտեղ անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում դասախոսությունների և սեմինար պարապմունքների որակի բարձրացմանը։ Կան ամբիոններ, որտեղ թուլացել է սկզբունքայնությունը ուսումնական հարցերում, չեն կազմակերպվում դասախոսությունների քննարկումներ, պարապմունքների փոխադարձ հաճախումներ, բացակայում է դասախոսների փորձի փոխանակումը։ Իսկ ռեկտորատները, գիտական խորհուրդները պասսիվություն են հանդես բերում նրանց ուղղություն տալու հարցերում։

Քիչ չեն դեպքերը, երբ դասախոսները լավ չեն պատրաստվում պարապմունքներին, իրազեկ չեն գիտության ժամանակակից նվաճումներին, ավանդվող առարկան վատ են միակցում կոմունիստական շինարարության պրակ-



տիկայի առօրյա բազմաթիվ խնդիրներին։ Մինչդեռ, յուրաքանչյուր դասա-
խոս պետք է լավ իմանա ոչ միայն իր առարկան, այլև մարքսիզմ-լենինիզմի
բոլոր բաղկացուցիչ մասերը, հասարակական զարգացման օրենքները, իրա-
կանության հեղափոխական վերափոխման դիալեկտիկան։
Չի կարող հեղինակություն վայելել այն դասախոսը, որը մշտապես չի
հարստացնում իր գիտելիքները, հաղորդակից չէ արդի կյանքի առաջընթա-
ցին, չի խորանում տեսության, կոմունիստական շինարարության բազմահա-
րուստ պրակտիկայի մանրամասների, գիտության և պրակտիկայի նվաճում-
ների մեջ։ Ուսանողը բարոմետր է՝ սուր զգացողությամբ օժտված։ Նրա աչ-
քից ու ականջից չի վրիպում ոչինչ։ Միայն համոզիչ, գիտական խոսքը կարող
է խորը ազդեցություն թողնել նրա գիտակցության վրա, խորապես ներազդել
նրա հայացքների, քաղաքացիական կերպարի ձևավորման վրա։ Հասարակա-
կան գիտությունների դասավանդման ցածր մակարդակը, բնականաբար, բա-
ցասաբար է ազդում ապագա մասնագետների մարքս-լենինյան աշխարհայե-
ցողության ձևավորման վրա, թուլացնում է հասարակական գիտությունների
նկատմամբ հետաքրքրությունը և դրանով իսկ վնասում ուսանող երիտասար-
դության կոմունիստական դաստիարակության գործին։
Բարձրագույն կրթության մինիստրության ստուգումները բացահայտել են
էական թերություններ պոլիտեխնիկական ինստիտուտի Կիրովականի և Լե-
նինականի ֆիլիալների, Խ. Աբովյանի անվան հայկական մանկավարժական
ինստիտուտի Գորիսի ֆիլիալի, Կիրովականի մանկավարժական ինստիտուտի
հասարակագիտական ամբիոնների գործունեության մեջ։ Աններելի պետք է
համարել, որ պոլիտեխնիկական ինստիտուտի Կիրովականի ֆիլիալի հասա-
րակագիտական ամբիոնը հնգամյա գոյության ընթացքում չի ունեցել իր մըշ-
տական վարիչը, որ ամբիոնում չկան աշխատանքի պլաններ, դասախոսու-
թյուններ չեն լսում, արտալսարանային աշխատանք չի տարվում, իսկ գիտա-
հետազոտական աշխատանքի մասին խոսելն անհարմար է։
Նորմալ չէ, երբ ամբիոնի միևնույն դասախոսը 2—3 առարկայից դասա-
խոսություն է կարդում, չունենալով համապատասխան որակավորում և աշ-
խատանքային փորձ։ Համեմատաբար բարվոք է վիճակը պոլիտեխնիկական
ինստիտուտի Լենինականի ֆիլիալի հասարակագիտական ամբիոնում։ Սա-
կայն այստեղ նույնպես կան թերություններ, բացեր, որոնք խանգարում են
հասարակական-քաղաքական առարկանները պատշաճ մակարդակով դասա-
վանդելու գործին։ Նույնն է վիճակը Գորիսի ֆիլիալի հասարակագիտական
ամբիոնում։
Հայկական մանկավարժական, պոլիտեխնիկական ինստիտուտների ռեկ-
տորատները, կուսակցական կոմիտեները, բարձրագույն կրթության մինիս-
տրությունը պետք է լրջորեն բարելավեն կազմակերպչական, մեթոդական ղե-
կավարությունը ֆիլիալների, նրանց հասարակագիտական ամբիոնների
նկատմամբ։
Հանրապետության բուհերում դանդաղ է զարգանում տեխնիկական մի-
ջոցների՝ մագնիտաֆոնային ձայնագրությունների, ցուցադրական ձեռնարկ-
ների, կինոֆիլմերի և դիաֆիլմերի կիրառությունը հասարակական գիտու-
թյունների դասավանդման գործում։ Միության բազմաթիվ ուսումնական
կենտրոններում մեծ փորձ է կուտակված։ Բարձրագույն կրթության մինիս-

*տրությունը, բուհերի ռեկտորատները պետք է ատրիճանաբար ֆոնդեր ստեղծեն, գործի դնեն այս խիստ օգտակար լծակները։*

*Բուհերի ռեկտորատները պետք է ավելի մեծ հոգատարություն հանդես բերեն հասարակական գիտությունների ամբիոնների նյութա-տեխնիկական բազան ամրապնդելու, նրանց անհրաժեշտ կարիքները հոգալու համար։ Անհրաժեշտ է ամենանպաստավոր մթնոլորտ ստեղծել մեթոդական աշխատանքի համար, այն համարել դասավանդման, գիտական հետազոտությունների գլխավոր ազդակներից մեկը։ Մեր ամսագրերը քիչ նյութեր չեն տպագրում հասարակական գիտությունների տարբեր բնագավառներից։ Բայց տակավին քիչ ուշադրություն է նվիրվում դասավանդման մեթոդիկայի հարցերին, երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրներին։ Պետք է աշխուժացնի իր գործունեությունը «Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն» բյուլետենը, որը, ճիշտ է, տարեկան լույս է տեսնում 6 համար, բայց դա էլ բավական է հասարակագիտական ամբիոնների գործունեությունը լայնորեն լուսաբանելու և, որ կարևորն է, դասախոսների խոսքի և գործի իրական ամբիոն դառնալու համար։*

*Անհրաժեշտ է բացառիկ ուշադրություն նվիրել մեր կուսակցության քաղաքականության գիտական բնույթի բացահայտման, կոմունիստական շինարարության մեջ նրա ղեկավար դերի դրվատման, սովետական պետության զարգացման պատմության օբյեկտիվ լուսաբանման, սովետական ժողովրդի անցած պատմական ուղու ճշմարտացի վերհանման հարցերին։*

*Մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին հավատարմությունը մեր կուսակցության սրբազան ավանդույթն է և դրա համակողմանի պրոպագանդումը բարձրագույն դպրոցի կարևորագույն խնդիրն է։*

*Մարքս-լենինյան թեորիայի ուսումնասիրության ամփոփիչ կուրսը գիտական կոմունիզմի առարկան է։ Այն կոչված է ուսանողներին զինելու ժամանակակից հասարակական զարգացման, սոցիալ քաղաքական օրինաչափությունների, կոմունիստական ֆորմացիայի հաստատման գիտելիքներով։*

*Գիտական կոմունիզմի դասախոսները հենվելով ՍՄԿԿ պատմության, մարքս-լենինյան փիլիսոփայության և քաղաքատնտեսության դասավանդումից ուսանողների ստացած գիտելիքների վրա, պետք է խորապես բացահայտեն կոմունիստական շինարարության, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, միջազգային հեղափոխական շարժման տեսությունն ու պրակտիկան։ Գիտական կոմունիզմի դասավանդման մեջ կարևոր տեղ պետք է գրավեն երկրի սոցիալ-քաղաքական կառավարման հարցերը։*

*Հասարակագիտական բոլոր ամբիոնների կարևորագույն խնդիրն է՝ ուժեղացնել պայքարը ժամանակակից բուրժուական գաղափարախոսության, հակակոմունիզմի, ռեֆորմիստական և ռևիզիոնիստական կոնցեպցիաների դեմ, որի վրա առանձնահատուկ ուշադրություն հրավիրեցին ՍՄԿԿ XXIV համագումարը, Կենտկոմի 1971 թ. նոյեմբերյան պլենումը։*

*Մեր դասախոսները կոչված են ուսանողներին ուսուցելու ինքնուրույն տիրապետելու մարքս-լենինյան ուսմունքին, ինքնուրույն աշխատելու սկզբնաղբյուրների վրա, նրանց ներարկելու գիտական մտածելակերպ, Մարքսի-Էնգելսի, Լենինի թեորիական հարուստ ժառանգությունն իսկապես յուրացնելու ունակություն։*

*Թեորիական գործունեության մեջ գլխավորը՝ նորը, զարգացողը, առա-*



*ջադիմականը տեսնելու ճիշտ, լենինյան կուսակցական դիրքերից գնահատելու ունակությունն է։*

*Մեր դասախոսներից պահանջվում է ուսանողության առջև հանդես գալ
գիտական լուրջ վերլուծություններով, քաղաքական-գաղափարական նպա-
տակասլաց մեկնություններով։ Հասարակագետ դասախոսին մեծ ու պատվա-
վոր գործ է վիճակված՝ նա պատասխանատու է ոչ միայն իրեն վստահված
ուսանողների առաջադիմության, այլև նրանց քաղաքական համոզմունքների
և տրամադրությունների համար։ Դժբախտաբար որոշ դասախոսներ տակավին
չեն ձերբազատվել դոգմատիզմի և վերացականության ազդեցությունից։ Նրանց
դասախոսությունները կրում են նկարագրական, ընդհանուր ակնարկային
բնույթ, տեսության և արդիականության պրոբլեմները մեկնաբանվում են մա-
կերեսորեն։ Երբ կյանքի երևույթները մեկնաբանվում են հենց այնպես, առանց
խոր վերլուծության և հիմնավոր փաստարկների, դրանով իսկ թուլանում է
ուսանողության հետաքրքրությունը տեսության նկատմամբ, նրանց մոտ քաղ-
քենիական տրամադրություններ են առաջանում առօրյա բացերը, թերու-
թյունները ըմբռնելիս և գնահատելիս։*

*Ուսանողն իր հարցերին պետք է ստանա համոզիչ պատասխան։ Այդպես
է վարվում ինտելեկտուալ առումով զարգացած, մեծ էրուդիցիա ունեցող,
մշտապես իր վրա աշխատող, կարդացող, գիտական և քաղաքական, տնտե-
սական և միջազգային կյանքի նորույթներին հետամուտ դասախոսը, բայց
ոչ թալմուդիստը, տասնամյակներ առաջ ձեռք բերած և մշտապես նույն բանը
կրկնող դասախոսը։*

*Կոմունիստական աշխարհայացքը ոչ միայն բնության և հասարակության
մասին հայացքների համակարգ է, գիտելիքների հանրագումար, այլև մարդ-
կանց ընդհանուր հոգեկան տրամադրվածություն։ Այն սոցիալ-տնտեսական,
քաղաքական գաղափարների և համոզմունքների, գեղագիտական հայացքների
և բարոյական նորմերի մի կուռ սիստեմ է, որով ղեկավարվում է կոմունիզմ
կառուցողը։*

*Մարդկանց կոմունիստական աշխարհայեցողության, հոգեկան խառնվածքի ձևավորումն այն հանգուցային կետն է, ուր միակցվում են թեորիան և
պրակտիկան, որտեղ գիտական սկզբունքները դառնում են համոզմունքներ,
նորմեր, որոնք խոր սոցիալական իմաստ են հաղորդում մարդկանց գործու-
նեությանը, նրանց վարվելակերպին, վարքագծին։ Այստեղ փիլիսոփայական,
տնտեսագիտական, սոցիոլոգիական և մյուս հետազոտությունները դասախոսա-
կան աշխատանքն իրոք միահյուսում են կյանքի, կոմունիստական հա-
սարակարգ կերտող աշխատավոր զանգվածների աշխատանքի հետ։*

## ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԿԱԴՐԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՄԱՆՆ ՈՒ ՈՐԱԿԱՎՈՐՄԱՆԸ

*Մեր կուսակցությունն առանձնահատուկ նշանակություն է տալիս հասարակական գիտությունների դասախոսների պատրաստման, նրանց որակավորման բարձրացման գործին։ Մարքս-լենինյան տեսության դասավանդման մակարդակը, ուսանողների կողմից այն յուրացնելու աստիճանը, վերջին հաշվով պայմանավորված է դասախոսների մտավոր հարստությամբ ու դասավանդման նրանց վարպետությամբ։*

Կենսագործելով հասարակական գիտությունների զարգացման, գիտամանկավարժական կադրերի պատրաստման բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի հայտնի որոշումները, մեր հանրապետությունում նույնպես զգալի աշխատանք է կատարված հասարակագիտական ամբիոնների դասախոսական կազմի որակական կազմը բարելավելու ասպարեզում:

Ներկայումս հանրապետության բուհերի ՍՄԿԿ պատմության, փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի հիմունքների ամբիոններում աշխատում են 310 դասախոս, որից գիտության դոկտորներ՝ 20, թեկնածուներ՝ 165-ը: Միութենական միջինի համեմատությամբ այս մարզում մեր վիճակը վատ չէ: Բայց մեր հանրապետությունում ունենք լայն հնարավորություններ կրթական ցենզի տեսակետից բարելավելու դասախոսական կազմը: Սա ձևական հարցադրում չէ: Գիտական աստիճանը և կոչումը հանդիսանում են դասախոսի որակի պետականորեն ընդունված գլխավոր չափանիշները: Այնինչ, եղած հնարավորությունները վատ են օգտագործվում: Պետական պլանով սահմանված ասպիրանտական կրթության ցուցանիշները վկայում են այս բնագավառում նպատակասլաց, կազմակերպված աշխատանքի թուլությունը: Վերջին հինգ տարում հասարակական գիտությունների գծով ասպիրանտուրա են ընդունվել 77 մարդ, որոնցից միայն 3-ն են ժամանակին դիսերտացիա պաշտպանել, 14-ը ներկայացրել են իրենց աշխատանքները, իսկ մնացած 60-ը հայտնի չէ, թե երբ կպաշտպանեն:

Օբյեկտիվ պատճառներ փնտրելն ավելորդ է: Ուշացումը կարելի է հարգելի համարել մի մասի համար, բայց համատարած անհաջողությունը չի կարելի և ոչ մի բանով արդարացնել: Ցավոք, սա մեր բոլոր բուհերին է վերաբերվում: Չխորանալով յուրաքանչյուրի ասպիրանտական գործերի կազմակերպման թերությունների մեջ, ասենք, որ այդ երևույթն ընդհանուր խստապահանջության, նպատակասլաց աշխատանքի բացակայության արդյունք է: Ասպիրանտների ընտրության ժամանակ հաշվի չեն առնվում նրանց գիտահետազոտական աշխատանքի հակումներն ու ունակությունները: Չի կարելի հավանություն տալ այն պրակտիկային, երբ ասպիրանտ են ընդունվում բավարար գնահատականներով:

Ակադեմիկ Կապիցան նկատում է, որ ամենակարևորը և դժվարն առավել շնորհալի երիտասարդների ընտրությունն է, նրանց տաղանդի լրիվ զարգացման համար պայմանների ստեղծումը: Ճշտորեն որոշել, թե ո՞ւմ ես ընտրում ասպիրանտ, միայն նրա ճանաչողական ընդունակություններով և գիտելիքներով, թե՞ ստեղծագործական ունակությունների հաշվառումով՝ ահա խնդիրը: Փաստացի նյութի անգիր անելը դեռ ստեղծագործական աշխատանքի պիտանիության չափանիշ չէ:

Սխալ է այն մտայնությունը, թե դժվարություններ կան երիտասարդ գիտնականների աշխատանքների հրապարակման ասպարեզում: Ճիշտ կլինի ասել, որ դժվարություններն սկսվում են նրանից, որ հրապարակման ներկայացվող նյութերն են թերամշակ:

Հասարակագիտական ամբիոնների աշխատանքների գիտական գործունեության համար լայն ասպարեզ հանդիսացավ համալսարանի «Բամբերը», որն արդեն մի քանի տարի է, ինչ լույս է տեսնում: Միութենական մինիստրությունը նորից վերականգնել է ոչ հումանիտար բուհերի հասարակագիտական ամբիոնների գիտական ժողովածուներ հրատարակելու իրավունքը:



Բանն այն է, որ ասպիրանտական ղեկավարություն ստանձնած որոշ դասախոսներ պետական մոտեցում հանդես չեն բերում հանձնարարված գործի նկատմամբ: Թեմաների ընտրության, հաստատման գործում առկա են և՛ քաշքըշուկ, և՛ ձևականություններ: Ինչպես Մոսկվայի և Լենինգրադի ուսումնական հաստատություններում, այնպես էլ մեզ մոտ գիտնական-մանկավարժի աշխատանքի գլխավոր չափանիշներից մեկը պետք է լինի կադրերի պատրաստումը: Գիտության վաստակավոր գործիչ չի կարող կոչվել մեկը, որը և ոչ մի փոխարինող չի պատրաստել:

Ռեկտորատների, ամբիոնների, կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ խորանալ ասպիրանտուրայի գործերի վիճակի մեջ, այն պահել ուշադրության կենտրոնում: Միայն պահանջկոտության բարձրացման, պետական չափանիշների խստագույնս կիրառման միջոցով է հնարավոր բարելավել ասպիրանտական կրթությունը մեր բուհերում, մեր վաղվա ուսանողության համար պատրաստել բանիմաց, կիրթ, գիտության այսօրվա պահանջներին համապատասխան դասախոսական կադրեր:

Հասարակագիտական առարկաների ասպիրանտուրա պետք է ընդունվեն քաղաքականապես հասուն, գրագետ, առաջադեմ և խելահաս, ինքնուրույն մտածելու հակում ունեցող մարդիկ: Առաջնահերթ անհրաժեշտություն է, որ մեր երիտասարդ դասախոսների մի մասն անցնի Մոսկվայի, Լենինգրադի բուհերի ասպիրանտուրայով:

## ՈՒՍՈՒՑՄԱՆ ԵՎ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ՆԱԽԱՊԱՅՄԱՆՆ Է

Ուսումնական պրոցեսն ապագա մասնագետի կոմունիստական դաստիարակության ամբողջ սիստեմի կենտրոնական օղակն է:

Կուսակցության XXIV համագումարը որպես բարձրագույն դպրոցի կարևորագույն խնդիր առաջադրեց երիտասարդ մասնագետներին կազմակերպական և հասարակական-քաղաքական աշխատանքի ունակություններով օժտելու անհրաժեշտությունը: Գաղտնիք չէ, որ ինժեների դիպլոմ ստացած երիտասարդներից շատերը գործարան մուտք գործելով ի հայտ չեն բերում կոլեկտիվներում աշխատելու կազմակերպական, հոգեբանական տվյալներ, երբեմն ընկրկում են, որովհետև չեն տիրապետում մարդկանց կազմակերպելու, նրանց արտադրական գործունեությունը վարելու արվեստին: Մասնագետը պետք է լինի առաջավոր քաղաքացի, հեղինակավոր ղեկավար: Այս անհրաժեշտությունն անմիջականորեն բխում է տեսության և պրակտիկայի, ուսման և դաստիարակության պրոցեսի միասնության մեր կուսակցության սկզբունքներից:

Այս մարզում մենք շատ անելիքներ ունենք: Ուսանողության աճը գործի է կոչել դասախոսների, երիտասարդ, տակավին անփորձ մանկավարժների մեծ խումբ: Այս բանն առանձնապես ակնառու է պոլիտեխնիկական ինստիտուտում, որտեղ մեծ թվով նորավարտ մասնագետներ ստանձնել են դասախոսի պատասխանատու դերը, որոնք ևս կարիք ունեն դաստիարակվելու: Այս տեսակետից ռեկտորները, կուսակցական, կոմերիտական կազմակերպություններն իրենց ուշադրությունը պետք է բևեռեն երիտասարդ դասախոսների արագ

որակավորման վրա։ Գաղտնիք չէ, որ վերջին տարիներում որոշ դասախոսներ իրենց բարձր կոչմանն անհարիր զանցանքներ են կատարել, որոնք բացասաբար են անդրադառնում ուսումնական պրոցեսի, քաղաքական-դաստիարակչական ամբողջ աշխատանքի վրա։

Յուրաքանչյուր բուհում ուսանողների համար լայն հնարավորություններ կան հասարակական գործունեությանը մասնակցելու միջոցով մասսայական աշխատանքի փորձ ձեռք բերելու համար։ Բայց այդ հնարավորությունները բավարար չափով չեն օգտագործվում։

Հիրավի, մեր բուհերի կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները հասարակագիտական ամբիոնների հետ համատեղ, որոշ աշխատանք են տանում ուսանողության քաղաքական-գաղափարական դաստիարակության, հասարակական ակտիվության բարձրացման և կոմունիստական աշխարհայացքի ձևավորման ոլորտներում։ Հատկապես պետք է նշել այն սերտ համագործակցությունը, որն ստեղծվել է կոմերիտական կազմակերպությունների և հասարակագիտական ամբիոնների միջև, համամիութենական լենինյան ստուգարքների և հասարակական գիտությունների, ՀամԼԿԵՄ պատմության և միջազգային-երիտասարդական շարժման պրոբլեմների գծով ուսանողական աշխատանքների համամիութենական մրցույթների անցկացման ընթացքում։

Հասարակագիտական ամբիոնները և կոմերիտական կազմակերպությունները մեծ աշխատանք կատարեցին հասարակական գիտությունների III համամիութենական մրցույթի նախապատրաստման և անցկացման ընթացքում։ Մրցույթին մասնակցեցին հանրապետության ավելի քան 4 հազար ուսանողներ։ Մոսկվայում կայացած եզրափակիչ փուլին մեր հանրապետությունից ներկայացված 6 գիտական աշխատանքների հեղինակներ արժանացան դափնեկրի պատվավոր կոչման։ Այժմ ընթացքի մեջ է IV համամիութենական մրցույթը՝ նվիրված ՍՍՀՄ-ի կազմավորման 50-ամյակին։ Հասարակական-քաղաքական պրակտիկայի այնպիսի ձևեր, որպիսիք են ուսանողական ագիտբրիգադները, հասարակական մասնագիտությունների ֆակուլտետները, երիտասարդ դասախոսների դպրոցները, նպաստում են ուսանող երիտասարդության բազմակողմանի զարգացմանը, տեսական գիտելիքների ամրապնդմանը, օգնում պրոպագանդիստի և կազմակերպչի ունակությունների ձեռք բերմանը։

Բուհերում մեծ ուշադրություն է հատկացված ուսանողների ինտերնացիոնալ դաստիարակությանը։ Գրեթե բոլոր բուհերում գործում են ինտերնացիոնալ բարեկամության ակումբները։

Քաղաքական դաստիարակության բնագավառում մեր բուհերի կուսակցական և հասարակական կազմակերպությունների կուտակած դրական փորձի բազմաթիվ այլ օրինակներ կարելի է բերել։ Բայց և քիչ չեն թերությունները, բացերը։ Բուհական կյանքի ոչ բոլոր օղակներում է, որ կոմունիստական դաստիարակության խնդիրները գտնվում են ուշադրության կենտրոնում։ Ուսման մեջ միջակությանը զուգընթաց ունենք քաղաքական միջակությունների բազմաթիվ փաստեր, երևույթներ, որոնք պետք է անհանգստացնեն բուհերի ռեկտորատներին, կուսակցական կազմակերպություններին։

Այս առնչությամբ անհրաժեշտ է ընդգծել ՍՄԿԿ Կենտկոմի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյա-



կի նախապատրաստության վերաբերյալ վերջերս հրապարակված գաղափարա-
քաղաքական հույժ կարևոր նշանակությամբ որոշումը։ Այդ որոշման մեջ աս-
ված է. «Սովետական Միության 50-ամյակի նախապատրաստությունն ակտի-
վորեն օգտագործել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության հե-
տագա բարելավման համար։ Սովետական մարդկանց, երիտասարդությանը,
պրոլետարական ինտերնացիոնալիզմին և սոցիալիստական մեծ հայրենիքին՝
ՍՍՀ Միությանն անսահման նվիրվածության ոգով, նրա բարգավաճման նկատ-
մամբ հոգատարության ոգով դաստիարակելը կոմունիստական հասարակական
գիտակցության ձևավորման կարևոր կողմն է»։ Այստեղից հետևում է այն մեծ
պատասխանատվությունը, որը պարտավոր են ցուցաբերել մեր բուհերի կու-
սակցական և կոմերիտական կազմակերպությունները, ողջ դասախոսական
կազմը և հատկապես հասարակագիտական ամբիոնների դասախոսները՝ մա-
տաղ սերնդի ինտերնացիոնալիստական դաստիարակության բնագավառում։
Չպետք է մոռանալ և ոչ մի րոպե, որ այսօր էլ. «բուրժուական պրոպագանդան
ձգտում է հակակոմունիստական հայացքներ արմատավորել սոցիալիստական
երկրների ժողովուրդների գիտակցության մեջ, նացիոնալիզմն օգտագործել սո-
ցիալիստական երկրների խարխլման համար։ Խնդիրն այն է, որ մշտապես
պրոպագանդվեն պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարե-
կամության ու եղբայրության գաղափարները, ժամանակին քաղաքական գնա-
հատական տրվի նացիոնալիստական տրամադրություններին ու հայացքները
վերածնելու թշնամական փորձերին։ Անհրաժեշտ է վճռականորեն մերկացնել
հակակոմունիզմի, աջ և «ձախ» ռևիզիոնիզմի, նացիոնալիզմի և շովինիզմի
գաղափարախոսներին»։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի այս ծանրակշիռ և շատ
բան պարտավորեցնող առաջադրանքը պահանջում է բուհական դասախոսնե-
րից՝ համառ, սիստեմատիկ և բազմակողմանի պրոպագանդա մղել համուն լե-
նինիզմի սկզբունքների անաղարտության։
Լայնախոհ, բանիմաց, գիտատեխնիկական պրոգրեսին ընդառաջելով
պատրաստ, հայրենասեր, կուլտուրական, բարձր կենցաղավարությամբ, մեր
իդեալներին նվիրված քաղաքացիների պատրաստումն ու դաստիարակումն
այսօր մեր առջև ծառացած կարևորագույն խնդիրներից մեկն է։
Բուհերում փոքր թիվ չեն կազմում այն դասախոսները, որոնք պասիվ են,
նույնիսկ անտարբեր շրջապատի երևույթների, հասարակական-քաղաքական
աշխատանքի նկատմամբ։ Շատերը չեն մասնակցում ուսանողության համար
կազմակերպվող միջոցառումներին, իրենց պաշտոնական ժամերից դուրս ոչինչ
չեն անում ուսանողության դաստիարակության համար։
Ուսանողը պետք է հարգի դասախոսին, նրա նկատմամբ լինի հարգալի։
Դասախոսների միջավայրը պետք է զգաստացնի նրան։ Խոսքը վախի զգացու-
մի մասին չէ, այլ ակնածանքի, ներքին, ամենախոր մարդկային կուլտուրայի
մասին։ Այս տեսակետից մենք շատ անելիքներ ունենք։ Եվ շատ բան կախ-
ված է մեր իսկ դասախոսներից, ադմինիստրացիայից, ռեկտորատներից։ Բե-
րենք մեկ օրինակ. Պետական համալսարանում կա մի մեծ լսարան-դահլիճ
որտեղ անցկացվում են պատմության ֆակուլտետի գիտական խորհրդի նիս-
տերը, դիսերտացիաների պաշտպանությունը։ Դիսերտացիաների պաշտպա-
նության ժամանակ գիտնականների, իրենց իսկ դասախոսների կողքին տեղեր
են գրավում մեծ թվով ուսանողներ, քաղաքացիներ։ Ուղղակի պետք է ասել,
որ այդպիսի պայմաններում, այդպիսի միջավայրում ավելի լավ է դիսերտա-

ցիաներ չպաշտպանվեն. ընդհանուր թափթփվածություն, կոտրված աթոռներ, անմաքրություն, անշուքություն, ոչ մի հանդիսավորություն: Այդպիսի մթնոլորտը չի կարող նպաստել ուսանողի էթիկական ու էսթետիկական դաստիարակությանը:

Ցավոք, առանձին դասախոսներ իրենց վարքագծով, օրինակով վնաս են հասցնում ուսանողության դաստիարակության գործին: Այդպիսիների մասին վատ համբավը գալիս է հարվածելու նաև լավերին, հարգվածներին: Բանն այն է, որ բուհական կյանք են ներթափանցել երևույթներ, որոնք անհարիր են կոմունիստական բարոյականությանը, մարդկային համակեցության տարրական նորմերին: Խոսքը վերաբերում է առանձին դասախոսների կողմից կատարվող օրինազանցություններին, կաշառակերությանը, խարդախություններին և արտառոց այլ փաստերի:

Միայն կուսակցական պահանջկոտության բացակայության, բուհերում անհանդուրժողական մթնոլորտի թուլացման պայմաններում կարող է գլուխ բարձրացնել վարակիչ մոլախոտը:

Երևույթներ կան, որոնք պայմ. նավորված են մեր դասախոսների քաղաքացիական պարտքի զգացողությամբ, նրանց քաղաքացիական խղճով, սեփական ժողովրդի վաղվա օրվա նկատմամբ պատասխանատվության զգացումով: Որքան էլ խստացվեն ընդունելության կանոնները, փակ քննությունների ձևեր հորինվեն, միևնույն է, արդյունքը գոհացուցիչ չի լինի, եթե ընդունելության քննությունների հանձնաժողովների մեջ ներգրավված առանձին մարդիկ ղեկավարվեն բարեկամներին, ծանոթներին առաջնությունը տալու արգահատելի, քաղքենիական, հետամնաց, հակահասարակական սկզբունքներով:

Ժողովրդական վերահսկողության կոմիտեի հանձնաժողովի ստուգումների մեջ այս տարվա ընդունելության քննությունների գործում նշված խախտումները վկայում են բարձրագույն կրթության մինիստրության, ռեկտորատների գործունեության մեջ աշխատանքների կազմակերպման ոչ բավարար մակարդակը: Պոլիտեխնիկական ինստիտուտում, Պետական համալսարանում քննությունների գրավոր աշխատանքների սխալ գնահատումները, Գյուղատնտեսական ինստիտուտի քննական հանձնաժողովի անդամների կողմից ընդունելության կանոնների վատ իմացությունը, մյուս բուհերում բացահայտված խախտումները կազմակերպական աշխատանքի թուլության, սկզբունքայնության թուլացման արտահայտություն են:

Իհարկե, նշված թերությունները, մի քանի արատները, բնորոշ չեն մեր ամբողջ բուհական կյանքին, որը շնչում է լիաթոք, գործում է աղնիվ աշխատանքի տրոփյունով: Սակայն մեր խնդիրն է արդյունավետ պայքար ծավալել ամեն տեսակի թերությունների դեմ:

Բուհերի ռեկտորատները, կուսակցական կազմակերպությունները պետք է մշտապես զբաղվեն բուհական կյանքի բոլոր հարցերով, մասնավորապես հասարակագիտական ամբիոնների գործունեության բարելավման, ուսանողության կոմունիստական դաստիարակության հարցերով, սկզբունքայնության դիրքերից վերհանեն դրական օրինակները, խարազանեն, արմատախիլ անեն այստեղ-այնտեղ տակավին երևացող հակահասարակական երևույթները, ապահովեն կուսակցական ազդեցություն ուսանողական կյանքի բոլոր ոլորտներում:

Սա է հաջողության հիմնական գրավականը:



# ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԻՆ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆ

Ե. Թ. ԱՍԾԱՏՐՅԱՆ
ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ

Սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացումը պլանաչափ մի պրոցես է, որին ուղղություն է տալիս Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը: Այդ պրոցեսում իր արտահայտությունն է գտնում տընտեսության սոցիալիստական սիստեմի օրինաչափ առաջխաղացման համընդհանրությունը, որի հիմքն են կազմում սոցիալիստական արտադրահարաբերությունները:

Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման լայն ծրագիրը, որը տրված է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանում, արտացոլում է մեր էկոնոմիկայի զարգացման արդի էտապի կարևոր տրակական առանձնահատկությունները, որոնք խտացված ձևով ամփոփվում են հնգամյակի գլխավոր խնդրում, այն է՝ ապահովել ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը: Իրենց նշանակությամբ ու մասշտաբներով մյուս բոլոր խնդիրները ենթարկված են այս գլխավոր խնդրին, նրա լուծմանը:

Մեր կուսակցության գործունեության գլխավոր իմաստը՝ ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացումն է: Աշխատավորների կենսամակարդակի ական բարձրացման կուրսով կողմնորոշվի Սովետական Միության կոմունիստական կուսակցության գործունեությունը ոչ միայն ընթացիկ հնգամյակում, այլև երկրի տնտեսական զարգացման ընդհանուր կողմնորոշումը հետագայում: Հետևաբար, խոսքը վերաբերում է ո՛չ թե մեկ հնգամյակով սահմանափակվող ժամանակավոր կուրսին, այլ կուսակցության տնտեսական քաղաքականության սկզբունքային ստրատեգիական գծին: Նախանշելով այդպիսի կուրս,— ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— կուսակցությունը ելնում է նախ և առաջ այն բանից, որ մարդկանց

նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարումը հանրային արտադրության բարձրագույն նպատակն է սոցիալիզմի օրոք» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 54)։

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը գործնական միջոցառումներ են ձեռնարկել իրագործելու ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները՝ մեր երկրի աշխատավորների կենսամակարդակի բարձրացման վերաբերյալ։ Դրա լավագույն վկայությունը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971 թվականի պետական պլանի կատարման արդյունքն են։

Ժողովրդական սպառման ապրանքների նկատմամբ բնակչության պահանջարկն ավելի լրիվ բավարարելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1971 թվականի սեպտեմբերին որոշում ընդունեցին՝ «Մասսայական սպառման ապրանքների արտադրության հետագա զարգացումն ապահովող միջոցառումների մասին»։ Ավելի առաջ, 1968 թվականի նոյեմբերին, ՍՍՀՄ Մինիստրների սովետն ընդունեց «Կուլտուր-կենցաղային ու տնային գործածության ապրանքների արտադրության պլանավորման բարելավման, տեխնիկական մակարդակի բարձրացման և հետագա մասնագիտացման մասին» որոշումը։ ՍՄԿԿ Կենտկոմն ու ՍՍՀՄ Մինիստրների սովետը մասսայական սպառման ապրանքների արտադրության ավելացումը և դրանց նկատմամբ բնակչության պահանջմունքների առավել լրիվ բավարարումը համարում են իններորդ հնգամյա պլանի գլխավոր խնդրի լուծման անհրաժեշտ պայմաններից մեկը։ Այդ պատճառով նշված որոշումների կատարումը մշտապես գտնվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի տեսադաշտում։

Ներկայումս ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդհանուր ծավալը հանրապետությունում կազմում է 1,1 մլրդ ռուբլի, իսկ 1975 թվականին կանցնի 1,5 միլիարդից կամ 1970 թվականի համեմատությամբ, կաճի մոտ 60 տոկոսով։ Կավելանա «Բ» խմբի ապրանքների բաժինը հանրապետության արտադրության ընդհանուր ծավալում։

ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումներով միութենական մինիստրությունների ու գերատեսչությունների և միութենական հանրապետությունների մինիստրների սովետների համար սահմանված են մասսայական սպառման ապրանքների ավելացման առաջադրանքներ։ Մեր հանրապետության համար նախատեսվում է՝ 1972 թվականին, 1970-ի համեմատությամբ, այդ ապրանքների թողարկումն ավելացնել 1,5, իսկ 1975-ին՝ 2,5 անգամ։

ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության օրգանների գործունեությունը ժողովրդական սպառման ապրանքների թողարկման պլանների կատարման և արտադրության ներքին ռեզերվների օգտագործման վերահսկողությունն իրականացվելու է այսպես.

— Վերահսկողություն հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կողմից ժողովրդական սպառման ապրանքների թողարկման պլանային առաջադրանքների կատարման նկատմամբ՝ ըստ ծավալի և հաստատված անվանացանկի։

— Վերահսկողություն ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկություններում սարքավորումը ժամանակին շահագործման հանձնելու,



ինչպես նաև այդպիսի ապրանքների թողարկման համար սարքավորում մատակարարող ձեռնարկությունների գործունեության նկատմամբ։

— Վերահսկողություն մասսայական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունների շինարարության և գործող ձեռնարկությունների վերակառուցման նկատմամբ։

— Վերահսկողություն թողարկվող ապրանքների պատրաստման տեխնիկական մակարդակը և դրանց որակը բարձրացնելու նկատմամբ, ընդ որում, հատուկ ուշադրություն հատկացնել ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող առանձին արտադրությունների մասնագիտացման տնտեսական հնարավորություններ որոնելու հարցերին։

Հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի կատարած ուսումնասիրությունը ցույց տվեց, որ միութենական, միութենական-հանրապետական ենթակայության ձեռնարկությունները որոշակի դրական աշխատանք են կատարել ձեռնարկությունները մասնագիտացնելու, նոր ձեռնարկություններ ու արտադրամասեր ստեղծելու, գործող ձեռնարկություններն ընդլայնելու ու վերակառուցելու, արտադրության մեջ ավելի արտադրողական սարքավորում և ժամանակակից տեխնոլոգիա արմատավորելու միջոցով արտադրանքի որակը բարելավելու ասպարեզում, որի շնորհիվ զգալիորեն ավելացել է արտադրանքի թողարկումը, բարելավվել որակը, ավելացել ասորտիմենտը։

Ներկայումս հանրապետական ենթակայության ձեռնարկությունների հետ մեկտեղ, միութենական ենթակայության 122 ձեռնարկություններից 51-ը և միութենական-հանրապետական ենթակայության 142 ձեռնարկություններից 32-ը թողարկում են ժողովրդական սպառման առարկաներ։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կողմից ժողովրդական սպառման ապրանքների թողարկման պլանային առաջադրանքների կատարումը և դրանց պատրաստման տեխնիկական մակարդակի ու որակի բարձրացումը վերահսկողության ենթարկելու նպատակով ժողովրդական վերահսկողության կոմիտեն ուսումնասիրել է ցածրորակ կոշիկ ու կահույք թողարկելու, ինչպես և փայտամշակման արդյունաբերության ձեռնարկություններում արտադրանքի նոր տեսակների դանդաղ յուրացման պատճառները։ Կոմիտեն ստուգել է տրիկոտաժեղենի արդյունաբերության ձեռնարկությունների կողմից արտադրական կարողությունների հայտնաբերումն ու օգտագործումը, սառնարանների ու սառնարանային կոմպրեսորների որակը, պարզել է Արզնու բյուրեղապակու գործարանի և Երևանի կերամիկական կոմբինատի արտադրական պլանի թերակատարման պատճառները, հետևել է ներմուծվող կոմպլեքսային սարքավորման բազայի վրա կառուցվող կոշիկի գործարանի և այլ օբյեկտների շինարարության ընթացքին։ Ստուգումներին անմիջականորեն մասնակցել են վերոհիշյալ ձեռնարկությունների մասնագետներն ու ժողովրդական վերահսկիչները։

Ստուգումների արդյունքներին և կոմիտեի որոշումներին իրազեկ են դարձվել ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ձեռնարկությունների կոլեկտիվները։

Այդ ստուգումներից պարզվեց, որ ժողովրդական սպառման ապրանքների, հատկապես կուլտուր-կենցաղային և տնային գործածության իրերի զգալի մասն արտադրում են ոչ-արդյունաբերական մինիստրությունների, այլ ստեղծագործական միությունների և հասարակական կազմակերպությունների օբյեկտները, որոնք տնայնագործական բնույթ ունեն։ Գործի շահերը պահանջում

են այդ ձեռնարկություններն արմատապես վերակառուցել՝ դրանց լիակատար
մասնագիտացման, թողարկվող արտադրանքի պլանավորման, արտադրության
և իրացման գործում պատշաճ պետական կարգ ու կանոն հաստատելու նպա-
տակով։ Զժխտելով նյութական որոշ շահագրգռվածություն պահպանելու նպա-
տակահարմարությունն արտադրության թափոնների լրիվ օգտագործումը
խրախուսելու համար, դրա հետ միասին անհրաժեշտ է ստեղծել խթանման
ավելի ճկուն սիստեմ, որը նյութական շահագրգռությունից չպետք է զրկի այն
ձեռնարկություններին, որոնք ժողովրդական սպառման ապրանքների թողար-
կումն ընդլայնելիս դիմում են կոոպերատիվ մատակարարումների, ինչպես նաև
լիարժեք հումքի ավելի լայն օգտագործմանը, եթե դա բխում է որակը բարձ-
րացնելու անհրաժեշտությունից կամ արտադրվող իրերի բարդությունից։

Արտադրական առաջադրանքների ընդհանուր գերակատարման հետ ան-
բավարար է կատարվում ՍՍՀՄ Մինիստրների սովետի ցուցումը՝ մանր առար-
կաների թողարկումն ավելացնելու և այդ նպատակով հումքի տեղական տե-
սակներն ու արտադրության թափոններն ավելի լրիվ օգտագործելու մասին։

Հատկապես հարկ է նշել, որ չափազանց անբավարար են օգտագործվում
իրենց բուժական ու համային հատկություններով բարձրորակ «Ջերմուկ»,
«Արզնի» և մյուս հանքային ջրերը։ Չնայած պլանով նախատեսված է 1975 թ.
արտադրել 400 մլն շիշ, բայց տարայի ապահովման հարցը չի լուծված։ Ընդ-
սմին տեղին է նշել, որ հանքային ջրի զգալի մասն արտահանվում է մյուս
միութենական հանրապետությունները, և, մասամբ արտասահման։ Մինչդեռ
ապակու տարայի գործարանի կառուցման հարցը չի լուծված, թեև կան տըն-
տեսապես արդյունավետ նախագծային լուծումներ, իսկ աղբյուրի տերիտո-
րիայում՝ հումքային բազա։

Հանրապետության ծանր արդյունաբերության որոշ ձեռնարկություններ
նույնպես լրիվ չեն օգտագործում իրենց հնարավորությունները՝ մասսայական
սպառման ապրանքների թողարկումն ավելացնելու և դրանց ասորտիմենտ
ընդլայնելու համար։ Այդպիսիներից են Երևանի ավտոմոբիլի, ավտոպահես-
տամասերի, ժամացույցի, ավտոդողերի, լուսատեխնիկական, գործիքաշինա-
կան, էլեկտրամեքենաշինական և մյուս գործարանները, որտեղ գոյանում են
մեծ քանակությամբ արտադրական թափոններ, որոնց բազայի վրա կարելի է
ընդլայնել տնային գործածության ապրանքների արտադրության ասորտի-
մենտը։

Հաճախ արդյունաբերական ձեռնարկությունների թողարկած լայն սպառ-
ման առարկաներն իրենց ցածր որակով և անհրապույր ձևով գնորդի ուշադրու-
թյունը չեն գրավում։ Իսկ այդ արգելակում է արտադրության զարգացմանը։

Երևանի լուսատեխնիկական գործարանը, օրինակ, արտադրական մեծ
հնարավորություններ ունի էլեկտրալուսավորիչ արմատուրային թողարկումն
ավելացնելու համար։ Սակայն տարեցտարի կրճատում է թողարկվող արտա-
դրանքի ծավալը, քանի որ հնացած նմուշների պատճառով առևտրական կազ-
մակերպությունները հաճախ հրաժարվում են ընդունել այդ գործարանի ար-
տադրանքը, իսկ կոնստրուկտորական կազմակերպությունները ժամանակին
նոր նմուշներ չեն տալիս։ Գործարանի ղեկավարությունը, «Հայէլեկտրալույս»
միավորումը և ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրու-
թյունը պատշաճ միջոցներ չեն ձեռնարկում էլեկտրալուսավորիչ արմատուրա-
յին նմուշները նորացնելու, դրանց որակը բարձրացնելու համար։



Մի քան տարի առաջ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գոր-
ծարանը, առանց հիմնական արտադրությանը վնասելու, տարեկան թողարկում
էր ջերմակարգավորիչ ունեցող 500 հազար հատ բարձրորակ էլեկտրական
հարթուկ։ Սակայն, դրանց արտադրությունը հանձնարարված էր մի այլ ձեռ-
նարկության և, չսպասելով մինչև որ այն յուրացվի, հանվեց էլեկտրամեքե-
նաշինական գործարանի պլանից։ Չնայած 1972 թ. էլեկտրահարթուկների
պահանջարկը կազմում է 250 հազար հատ, հանրապետությանը հատկացված
է միայն 150 հազար։ Նույնը վերաբերում է էլեկտրաթեյնիկների, սովորական
թեյնիկների, գավաթների, բաժակների, ափսեների նկատմամբ բնակչության
պահանջարկի բավարարմանը։

Ժողովրդական սպառման ապրանքների անվանացանկն ընդլայնելու լայն
հնարավորություններ ունեն նաև միութենական-հանրապետական և հանրա-
պետական ենթակայության ձեռնարկությունները։ Ուսումնասիրությունները
ցույց են տալիս, որ հումքի առկայության դեպքում ռեալ հնարավորություն
կա ներկայումս գործող կարողություններով մոտ մեկ երրորդով ավելացնելու
տրիկոտաժե ներքնազգեստի ու վերնազգեստի, տեքստիլ և կաշվե գալանտե-
րեայի իրերի, ինչպես նաև ալյումինե և մելքիորե ամանեղենի, պոլիէթիլենային
և այլ իրերի արտադրությունը, որոնց նկատմամբ կա մեծ և կայուն պահանջ-
արկ։

Հարկ է նշել նաև, որ չնայած ժողովրդական սպառման ապրանքների
նկատմամբ բնակչության պահանջարկն ուսումնասիրող համամիութենական
գիտա-հետազոտական ինստիտուտն ու նրա հանրապետական մասնաճյուղերը
ամեն եռամսյակ ՍՍՀՄ և Միութենական հանրապետությունների առևտրի մի-
նիստրություններին կանխատեսումների տեսություններ են ներկայացնում
հաջորդ եռամսյակներում առևտրի զարգացման կոնյուկտուրայի վերաբերյալ,
սակայն այդ տեսությունները կրում են ակադեմիական-վերացական բնույթ և
գործնականում հնարավոր չէ դրանցով ղեկավարվել։

Դա ցույց է տալիս, որ միութենական հանրապետություններում առաջվա
նման անբավարար են կոորդինացվում արդյունաբերության բոլոր ճյուղերում
ժողովրդական սպառման ապրանքների թողարկման աշխատանքները, որի
հետևանքով տեղի է ունենում տարբեր ձեռնարկությունների կողմից համանման
ապրանքների թողարկման կրկնություն։

Ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունների
հիմնական թերությունները մեր կարծիքով հետևյալներն են։

Մասսայական սպառման ապրանքների արտադրությունը պլանավորելիս
հանրապետական ու տեղական ենթակայության ձեռնարկությունները միմյանց
հետ չեն շաղկապում նյութա-տեխնիկական մատակարարման, մասնավորա-
պես, հումքի, նյութերի ու սարքավորման հատկացման հարցը, մի բան, որ
շատ հաճախ ձախողման վտանգի տակ է դնում նախատեսված պլանների կա-
տարումը և արտադրանքի բարձր որակի ապահովումը։ Օրինակ, օժանդակ
նյութերի և երկաթեղեն իրերի թողարկումը կազմակերպելու համար հաճախ
պահանջվում են որակյալ մետաղ, լատուն, պատման նյութեր, որպիսիք հան-
րապետությունը չունի։ Նույնը կարելի է ասել նաև հիդրավլիկ մամլիչների,
սառը պնդացման ավտոմատների մասին, երբ հարկ է լինում արտադրել զա-
նազան պահեստամասեր և ամրակման իրեր։

Միութենական, հաճախ էլ միութենական-հանրապետական մինիստրու-

թյուններն իրենց ենթակա ձեռնարկություններին իջեցնում են կուլտուր-կենցաղային և տնային գործածության ապրանքների թողարկման պլաններ գումարային արտահայտությամբ, առանց իրերի անվանացանկի և ասորտիմենտի կոնկրետ պլանավորման։ Դա հնարավորություն չի տալիս անհապաղ կազմակերպելու անհրաժեշտ ապրանքների թողարկումը, կիրառելու միասնական տեխնիկական քաղաքականություն՝ արտադրանքի նոր տեսակների մշակման ու ներդրման, դրանց ասորտիմենտի ընդլայնման, որակի, հուսալիության ու դիմացկունության բարձրացման, ունիֆիկացման ու ստանդարտացման բնագավառում, ինչպես նաև ապահովելու նորմալ նյութա-տեխնիկական մատակարարում։

Դեռևս անբավարար է արտադրության մասնագիտացումն առանձին տնտեսական շրջանի սահմաններում, որի հետևանքով ձեռնարկությունների մի մասը շարունակում է թողարկել իր պրոֆիլին ոչ հատուկ իրեր՝ չափազանց ապակենտրոնացնելով դրանց արտադրությունը։ Այսպես, զուգահեռաբար պլաստմասսայից պատրաստված իրեր են թողարկում միութենական ենթակայության ու տեղական արդյունաբերության, ինչպես նաև ոչ-արդյունաբերական մինիստրությունների ու գերատեսչությունների շատ ձեռնարկություններ, մելքիորե իրեր՝ զանազան կազմակերպությունների և տեղական արդյունաբերության ձեռնարկությունները, կահույքեղեն՝ անտառային և փայտամշակման, տեղական արդյունաբերության, կուլտուրայի, բնակչության կենցաղսպասարկման մինիստրությունների և այլ գերատեսչությունների ձեռնարկությունները։

Վերջապես, թողարկվող արտադրանքի, հատկապես կուլտուր-կենցաղային և տնային գործածության իրերի պատրաստման տեխնիկական մակարդակը և որակը շատ դեպքերում դեռևս ցածր են։ Դա հետևանք է այն բանի, որ այդ իրերը մեծ մասամբ թողարկվում են տեղական պայմաններում, որտեղ արտադրանքի որակի նկատմամբ ներկայացվող պահանջները ցածր են և շատ բանով զիջում են պետական ստանդարտներին ներկայացվող պահանջներից։

Հայկական ՍՍՀ պետպլանը ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր ստանդարտների, չափի ու չափիչ սարքերի կոմիտեին 1969 թվականի մարտին ներկայացրել է, կուլտուր-կենցաղային և տնային գործածության ապրանքների 22 տեսակի, իսկ 1971 թվականի հունվարին՝ 45 տեսակի ցանկ, որոնց համար պետք է հաստատվեն պետական ստանդարտներ։ Չնայած դրան, ներկայումս գործում են միայն մեկ ստանդարտ և երեք միջ-հանրապետական տեխնիկական պայմաններ։

Այդ հարցերի ժամանակին լուծումը զգալիորեն կնպաստի լայն սպառման որակյալ ապրանքների թողարկման ավելացմանը և, վերջին հաշվով, կապահովի դրանց նկատմամբ բնակչության պահանջարկի ավելի լրիվ բավարարումը։



# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԻՄՔԸ

Ա. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի պետական պլանն արդեն գործողության մեջ է։ Սովետական մարդիկ մեծ խանդավառությամբ ձեռնամուխ լինելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների իրագործմանը, հաջողությամբ ավարտեցին անցած տնտեսական տարին, որն ընթացիկ հնգամյակի անթերի կատարման հաստատուն հիմքը հանդիսացավ։ Երկրի էկոնոմիկան պլանային սկզբունքներով վարելու առաջին իսկ տարիներից սովետական մարդիկ հավատով են ներշնչված, որ կոմունիստական կուսակցության մշակած ծրագրերը ռեալ են, որ դրանք կկենսագործվեն աշխատավորների բուռն ջանքերի, ստեղծագործական նախաձեռնության շնորհիվ։

«Դեռ 1920 թվականին,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— քաղաքացիական պատերազմի եռուն շրջանում, Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ հաստատվեց մեր երկրում և ամբողջ համաշխարհային պրակտիկայում առաջին՝ էկոնոմիկայի զարգացման միասնական համապետական պլանը՝ Ռուսաստանի էլեկտրիֆիկացման պետական պլանը (ԳՈԷԼՌՈ)։ Այդ պլանով է սկսվում էկոնոմիկայի գիտականորեն հիմնավորված պլանային, կոմպլեքսային զարգացման պատմությունը» (Լենինյան կուրսով, հ. 2, էջ 115)։

Վլադիմիր Իլյիչը ԳՈԷԼՌՈ-ն համարեց կուսակցության երկրորդ ծրագիրը, որովհետև «Առանց էլեկտրիֆիկացիայի պլանի,— ասում է Վ. Ի. Լենինը, — մենք իսկական շինարարության անցնել չենք կարող» (Երկեր, հ. 31, էջ 652)։

Վ. Ի. Լենինը, կոմունիստական կուսակցությունը գտնում էին, որ երկրի էլեկտրիֆիկացումը պետք է նպաստի մետալուրգիայի ու մեքենաշինության զարգացմանը, վառելիքի հանույթի ավելացմանը, ծանր ինդուստրիայի արագ վերելքին։

Ձեռնամուխ լինելով երկրի սոցիալիստական վերափոխմանը, կոմունիստական կուսակցությունը համոզված էր, որ կոմունիզմի կառուցման համար առաջնակարգ նշանակություն ունի ժամանակակից խոշոր արդյունաբերության ստեղծումը։ Կոմունիստական ինտերնացիոնալի III կոնգրեսին տված զեկուցումում Վ. Ի. Լենինն ընդգծում է. «...սոցիալիզմի միակ հնարավոր

տնտեսական հիմքը խոշոր մեքենայական ինդուստրիան է։ Նա, ով մոռանում
է այդ, նա կոմունիստ չէ» (Երկեր, հ. 32, էջ 636)։ Մի այլ առիթով, անդրա-
դառնալով այդ հարցին, Վլադիմիր Իլյիչն ասում է. «Միայն այն ժամանակ,
երբ երկիրն էլեկտրիֆիկացվի, երբ արդյունաբերությունը, գյուղատնտեսու-
թյունն ու տրանսպորտը դրվեն ժամանակակից խոշոր արդյունաբերության
տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք կհաղթենք վերջնա-
կանապես» (Երկեր, հ. 31, էջ 654)։

Կենսագործելով Լենինի պատգամները, օգտագործելով սոցիալիստական
կարգերի առավելությունները, կոմունիստական կուսակցության գլխավորու-
թյամբ մեր երկրի աշխատավորներն ամենադժվարին պայմաններում ապա-
հովեցին ծանր ինդուստրիայի վերընթացը, պատմական կարճ ժամանակա-
շրջանում ՍՍՀՄ հասցրին կապիտալիստական առաջավոր շատ երկրների մա-
կարդակին։ Դրա շնորհիվ, նշված է ՀամԿ(բ)Կ XV համագումարի բանաձևում,
զգալի հաջողություններ ձեռք բերվեց երկրի էլեկտրիֆիկացման բնագավա-
ռում, ստեղծվեցին ու զարգացան արդյունաբերության նոր (մեքենա-
շինության, հաստոցաշինության, ավտոմոբիլաշինության, տուրբինաշինու-
թյան, ավիացիոն, քիմիական ինդուստրիա) ճյուղեր, կառուցվեցին նոր գոր-
ծարաններ, արմատապես վերակառուցվեցին հին արդյունաբերական ձեռնար-
կությունները։ Երկրի ինդուստրացման վերաբերյալ կուսակցության վարած
կուրսին դեմ էին աջ և «ձախ» խմբավորումները, որոնց դեմ անհաշտ պայ-
քար էր տարվում։ Կուսակցությունը գիտեր, որ «առանց ծանր արդյունաբե-
րության մենք ընդհանրապես կկործանվենք որպես ինքնուրույն պետություն»
(Լենին)։

Երկրի ինդուստրացման լենինյան քաղաքականության իրականացման
շնորհիվ ՍՍՀՄ-ում ստեղծվեց և հզորացավ պաշտպանական արդյունաբերու-
թյունը։ Այս էր այն հիմնական գործոններից մեկը, որի շնորհիվ մենք հաղ-
թանակ տարանք Հայրենական մեծ պատերազմում։

Հետպատերազմյան հնգամյակի տարիներին ՍՍՀՄ հսկայական քայլ կա-
տարեց զարգացած սոցիալիստական հասարակարգի շինարարության, կոմու-
նիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման նպատակով։ Ժողովրդական
տնտեսության զարգացման պլանները մշակելիս կրկին ու կրկին առավելու-
թյունը տրվում էր «Ա» խմբի (արտադրամիջոցների) ճյուղերի առավել զար-
գացմանը։ Դրա շնորհիվ արդեն 1965 թվականին ՍՍՀՄ-ն արտադրում էր
«...համաշխարհային արդյունաբերական արտադրանքի գրեթե 20 տոկոսը,
այսինքն՝ ավելի, քան Անգլիան, Ֆրանսիան ու ԳՖՀ-ն միասին վերցրած»
(Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 1, էջ 190)։

ՍՄԿԿ Կենտկոմի վարած իմաստուն քաղաքականության շնորհիվ, հաջո-
ղությամբ իրագործվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման ութե-
րորդ հնգամյա պլանը։ Սովետական ժողովուրդը երկրի էկոնոմիկայի զար-
գացման, գիտության ու կուլտուրայի բարգավաճման գործում հասավ նորա-
նոր բարձունքների։ 1970 թվականին Սովետական Միությունում արտադրվեց
740 միլիարդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ ավելի շատ, քան՝ Անգ-
լիան, Ֆրանսիան, ԳՖՀ-ն և Շվեդիան միասին վերցրած, ՍՍՀՄ-ում գործում են
աշխարհի ամենահզոր՝ Կույբիշևի, Բրատսկի և Կրասնոյարսկի հիդրոէլեկ-
տրակայանները։ Ութերորդ հնգամյակի ավարտական տարում մեր երկրում
արդյունահանվեց 624 միլիոն տոննա քարածուխ, 353 միլիոն տոննա նավթ,



200 միլիարդ խմ գազ, ձուլվեցին չուգուն՝ 85,9, պողպատ՝ 116 միլիոն տոննա։
Մեքենաշինության և մետաղամշակման ճյուղի համախառն արտադրանքը
հասավ 88 միլիարդ ռուբլու։

Ութերորդ հնգամյակում ավելի արագ տեմպերով էին զարգանում տեխ-
նիկական առաջընթացը նշանավորող արդյունաբերության որոշ ճյուղեր, մաս-
նավորապես՝ էլեկտրատեխնիկական, քիմիական ու նավթաքիմիական ար-
դյունաբերությունը, մեքենաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան ու սարքաշի-
նությունը։

* * *

Ծանր արդյունաբերության բնագավառում ձեռք բերած հաջողությունները
հնարավորություն ընձեռեցին արդեն ութերորդ հնգամյակում մոտեցնելու
արդյունաբերության հիմնական երկու ստորաբաժանումների՝ արտադրամի-
ջոցների արտադրության («Ա» խումբ) և սպառման առարկաների արտադրու-
թյան («Բ» խումբ) հարաբերակցությունը։ Հինգ տարում արտադրամիջոցների
արտադրությունն աճեց 51, սպառման առարկաներինը՝ 49 տոկոսով։ ՍՍՀՄ-ն
այժմ ունի այնպիսի տնտեսական հզորություն, որը հնարավորություն է տա-
լիս միաժամանակ լուծելու երկրի առաջ ծառացած սոցիալ-տնտեսական խն-
դիրների ողջ կոմպլեքսը։

Ներկա ժամանակաշրջանում Սովետական Միությունում արտադրական
կարողությունները հնարավորություն են ընձեռում ընթացիկ հնգամյակում
որոշ չափով արագացնելու «Բ» խմբի աճի թափը։ «Որոշելով երկու ստորա-
բաժանումների աճի տեմպերի հարաբերակցությունը,— ասում է ընկեր
Բրեժնևը,— կուսակցությունը, ինչպես սովորեցրել է Լենինը, ելնում է յուրա-
քանչյուր առանձին փուլի կոնկրետ պահանջմունքներից և ռեալ հնարավորու-
թյուններից» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 59)։ Ելնելով դրանից,
մեր կուսակցության XXIV համագումարն անհրաժեշտ համարեց ընթացիկ
հնգամյակում առավել չափով զարգացնել լայն սպառման առարկաների ար-
տադրությունը, որով պայմանավորված է բնակչության բարեկեցության ան-
միջական բարձրացումը։

Ըստ ընթացիկ հնգամյա պլանի, արդյունաբերական արտադրանքը
ընդհանուր առմամբ ավելանալու է 42—46 տոկոսով, այդ թվում՝ արտադրա-
միջոցներինը՝ 41—45, սպառման առարկաներինը՝ 44—48 տոկոսով։

Սակայն, ՍՄԿԿ կուրսը՝ արտադրամիջոցների արտադրությունն արագ
զարգացնելու վերաբերյալ մնում է անսասան, որովհետև «...սոցիալիստական
ընդլայնված վերարտադրությունը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— գալիք տնտե-
սական աճի հնարավորություններն ու տեմպերը, կոմունիզմի նյութատեխ-
նիկական բազայի ստեղծումը զգալի չափով որոշվում են ծանր ինդուստրիայի
հաջող զարգացմամբ։ Նրա աշխատանքից է կախված ժողովրդական տնտե-
սության բոլոր ոլորտների տեխնիկական զինվածության մակարդակը, աշխա-
տանքի ավելի բարձր արտադրողականության համար նյութական ու տեխնի-
կական միջոցների ապահովումը... առանց ծանր ինդուստրիայի զարգացման
չի կարելի պատշաճ մակարդակի վրա պահել պաշտպանունակությունը, որը
երաշխավորում է մեր հայրենիքի անվտանգությունը, մեր ժողովրդի խաղաղ
աշխատանքը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 59—60)։

Վերջապես, ծանր ինդուստրիայի նշանակությունը մեծ է նաև նրանով,

որ առանց դրան դժվար է առաջնակարգ և նորագույն տեխնիկայով հագեց-
նել թեթև, սննդի արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը և լուծել ժո-
ղովրդի կենսամակարդակի բարձրացման հարցերը։
ՍՄԿԿ Կենտկոմի անցյալ տարվա նոյեմբերյան պլենումը հավանություն
տվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման՝ 1971—1975 թթ. հընգ-
ամյա պլանին, որը հաստատվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի ութերորդ գումար-
ման երրորդ սեսիայում։ Հոյակապ է իններորդ հնգամյա պլանով նախատես-
ված ծանր արդյունաբերության գլխավոր ճյուղերի վերընթացի ծրագիրը։
Այն նոր փուլ է նշանավորում հասուն սոցիալիստական հասարակարգի հե-
տագա առաջընթացի, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման
տարեգրության մեջ։
Վիթխարի գործ է կատարվելու երկրի էլեկտրիֆիկացման բնագավառում։
Նախատեսված է հնգամյակի վերջին տարում էլեկտրաէներգիայի արտադրու-
թյունը հասցնել 1.030—1.070 միլիարդ կվտ-ժամի, այսինքն՝ էլեկտրաէներ-
գիայի արտադրությունը տարեկան, միջին հաշվով, կաճի 60 միլիարդ կվտ-
ժամով։ Հնգամյակում գործարկվող էլեկտրակայանների հզորությունը կհասնի
65—67 միլիոն կվտ-ի։ Նշանակալիորեն կծավալվի ատոմային էլեկտրակա-
յանների շինարարությունը, որոնցում կտեղադրվեն 1 միլիոն և ավելի բարձր
միավորային կարողություն ունեցող ռեակտորներ։ Խոշոր էներգետիկ բլոկ-
ների տեղադրմամբ հնարավորություն կընձեռվի տնտեսել վառելիքը և բարձ-
րացնել աշխատանքի արտադրողականությունը։ Զգալի միջոցներ կհատկաց-
վեն երկրի միասնական էլեկտրասիստեմի ստեղծման նպատակին։ Անցած
հնգամյակում ստեղծվել է ՍՍՀՄ եվրոպական մասի միացյալ էլեկտրասիստեմ։
Այս հնգամյակում երկրի եվրոպական մասին էլեկտրաէներգիա կմատակա-
րարեն Սիբիրի ու Ղազախստանի էլեկտրակայանները։ Կստեղծվեն 750 և 1150
հազար վոլտ լարման մշտական հոսանքի էլեկտրահաղորդման հեռավոր գծեր։
Զգալիորեն կընդարձակվի գյուղական շրջանների էլեկտրացանցը։
Մեր երկրի համար կարևոր նշանակություն ունի վառելիքի հաստատուն
և հզոր բազայի ստեղծումը, որը հնարավորություն կընձեռի ժողովրդական
տնտեսության ու բնակչության աճող պահանջմունքներն լիովին ապահովել։
Այդ նպատակով, իններորդ հնգամյակում լայն ծավալով կաճի նավթի ու
գազի հանույթը։ Նախատեսված է 1975 թվականին նավթի հանույթը հասցնել
480—500 միլիոն տոննայի, իսկ բնական գազինը՝ 300—320 միլիարդ խորա-
նարդ մետրի։ Մոտավոր հաշիվներով նավթի արդյունահանության միայն տա-
րեկան աճը, միջին հաշվով, կկազմի 30 միլիոն տոննա, այսինքն այնքան,
որքան արտադրվել է 1940 թվականին։
Մեծ գործեր են կատարվելու երկրում գազամատակարարման ընդհանուր
սիստեմ ստեղծելու նպատակով։ Կկառուցվեն մեծ տրամագիծ ունեցող մա-
գիստրալային գազամուղներ, որոնք կնպաստեն վառելիքի այդ տեսակն ավելի
լայնորեն ի սպաս դնելու արդյունաբերության ու բնակչության կարիքները
բավարարելու գործին։ Վառելիքի ընդհանուր հաշվեկշռի մեջ զգալիորեն կա-
վելանա նավթի ու գազի տեսակարար կշիռը, որը 1975 թվականին կհասնի
67 տոկոսի։ Հնգամյակում քաղաքներում ու քաղաքատիպ ավաններում բնա-
կելի ֆոնդի գազիֆիկացումը կհասնի 65—75, գյուղական վայրերում՝ 40—50
տոկոսի։ Հնգամյակի վերջին տարում Սովետական Միությունում արդյունա-
հանվելու է 685—695 միլիոն տոննա քարածուխ։



Ծանր ինդուստրիայի, ընդհանրապես երկրի էկոնոմիկայի բնորոշ ճյուղե-
րից է մետալուրգիան։ Իններորդ հնգամյա պլանով ծրագրված է 1975 թվակա-
նին պողպատի ձուլումը հասցնել 142—150, պատրաստի գլանվածքի արտա-
դրությունը՝ 101—105 միլիոն տոննայի։ Գունավոր մետալուրգիայի ծավալն
ընդհանուր առմամբ կմեծանա 1,4 անգամ, այդ թվում ալյումինինը՝ 50—60,
պղնձինը՝ 35—40 տոկոսով։ Հնգամյա պլանով նախատեսված է երկրորդա-
յին գունավոր մետաղների, էլեկտրոդային արտադրանքի, պղնձի գլանվածքի
և պղնձի համաձուլվածքների գլանվածքի, բարակ մետաղալարի, նրբապատ
խողովակների և խնայողական պրոֆիլների արտադրության կարողություննե-
րի հետագա զարգացում։ Զգալիորեն կավելանա ալյումինե նրբաթղթերի ու
սննդամթերքների փաթաթման ժապավենի և այլ նյութերի արտադրությունը։
Մեծ ուշադրություն կնվիրվի խողովակների, մասնավորապես մեծ տրամաչա-
փի գազատար, մեքենաշինության համար նրբապատ, նավթի, գազի արդյու-
նաբերության համար գերամուր խողովակների արտադրության զարգացմանը։
Լեռնահանքային ձեռնարկությունները կհագեցվեն բարձր արտադրական կա-
րողություն ունեցող սարքավորումներով ու փոխադրամիջոցներով։
Մեքենաշինությունը ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական
վերազինման նյութական հիմքն է։ «Նրա գլխավոր խնդիրն է,— ասում է ընկ.
Կոսիգինը,— բոլոր ճյուղերն ապահովել բարձր արդյունավետ մեքենաներով
ու սարքավորումներով։ Անհրաժեշտ է, որ նոր մեքենաների արտադրողակա-
նությունը լինի ավելի բարձր, իսկ կարողության միավորի արժեքն իջնի»
(ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 198)։ Հնգամյակում ժողովրդական
տնտեսության այդ ճյուղի համախառն արտադրանքն ընդհանուր առմամբ
կաճի 1,7, իսկ նրա թողարկած լայն սպառման առարկաներինը՝ 2,2 անգամ։
Առավել արագ թափով կզարգանան ավտոմատացման սարքերի ու միջոց-
ների, գյուղատնտեսական մեքենաների, մետաղամշակման ու էլեկտրատեխ-
նիկական սարքավորումների առավել կատարելագործված տեսակների, ավ-
տոմոբիլային արդյունաբերության, ատոմային էլեկտրակայանների, թեթև ու
սննդի արդյունաբերության սարքերի թողարկումը։ 1975 թվականին Սովետա-
կան Միությունում կարտադրվեն մետաղահատ հաստոցներ՝ 230—250, դարբ-
նոցա-մամլակային մեքենաներ՝ 60—65 հազար հատ։ Կթողարկվի 2,1 միլիոն
ավտոմեքենա (ութերորդ հնգամյակի վերջին թողարկված 916 հազարի փո-
խարեն)։ Ընդ որում, մարդատար ավտոմեքենաների արտադրությունը կաճի
3,5—3,8 անգամ։ Հնգամյակի ընթացքում ընդհանուր առմամբ կթողարկվի
8,3 միլիոն ավտոմեքենա, որից 4,7 մարդատար։ Զգալիորեն կաճի մեծ բեռն-
ամբարձություն ունեցող ավտոմեքենաների և դրանց բազայի վրա՝ բարձր բեռն-
վածություն ունեցող ավտոգնացքների թողարկումը։ Հնգամյակի վերջին
տարում կթողարկվի 575 հազար տրակտոր և 3,5 միլիարդ ռուբլու գյուղա-
տնտեսական գործիքներ։ Զգալիորեն կբարելավվի թողարկվող սարքավորում-
ների կառուցվածքը։ Կավելանա դարբնոցա-մամլակային, ձուլման ու զոդ-
ման, հղկման ու վերջնական հարդարման, բարձր ու գերբարձր ճշգրտությամբ
գործող հաստոցների թողարկման բաժինը։
ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ մեքենաշինության մեջ մեծ ռեզերվ է
հանդիսանում հերթափոխության գործակցի բարձրացումը։ ՍՍՀՄ պետպլանի
հաշվարկումներով դրա շնորհիվ կարելի է լրացուցիչ արտադրել 7—8 միլիարդ

ուբլու արտադրանք և տնտեսել մոտավորապես 6—7 միլիարդ ռուբլու կա-
պիտալ ներդրում։

Մեծ ծրագիր է մշակված քիմիական արդյունաբերության հետագա վեր-
ընթացի համար։ Զգալիորեն կավելանա պլաստմասսայի և սինթետիկ նյութե-
րի թողարկումը։ Գերազանց տեմպերով կզարգանա բարձրորակ խտացված
բարդ հանքային պարարտանյութերի արտադրությունը։ Ավտոմոբիլային ար-
դյունաբերության արագ վերելքը պահանջում է զգալիորեն ծավալել ռետինե
արդյունաբերությունը։ Հնգամյակում կաուչուկի արտադրությունն աճելու է 1,7
անգամ։ 1975 թվականին Սովետական Միությունում կթողարկվի իննսուն
միլիոն տոննա հանքային պարարտանյութ, 1050—1100 հազար տոննա քի-
միական մետաքսաթել, 50 միլիոն հատ ավտոդող։

* * *

Կոմունիստական կուսակցության վարած լենինյան ազգային քաղաքա-
կանությունը ապահովեց եղբայրական բոլոր հանրապետությունների տնտեսա-
կան ու կուլտուրական վերընթացը։ ՍՍՀՄ գոյության 50 տարիներին ցարա-
կան Ռուսաստանի երբեմնի հետամնաց ազգային ծայրամասերը վերածվել են
զարգացած ինդուստրիալ երկրամասերի։ Դրա վառ օրինակներից մեկը Սովե-
տական Հայաստանն է, ուր ներկայումս գործում են նորագույն ու առաջնա-
կարգ տեխնիկայով հագեցված ինդուստրիայի՝ սարքաշինության, քիմիայի,
գունավոր մետալուրգիայի, էլեկտրատեխնիկական արդյունաբերության ճյու-
ղեր։ 1970 թվականին արտադրվեց ավելի քան վեց միլիարդ կվտ-ժամ էլեկ-
տրաէներգիա, այսինքն՝ գրեթե երեք անգամ ավելի, քան ցարական Ռուսաս-
տանում 1913 թվականին։ 1969 թվականին մեր հանրապետությունը թողար-
կել է 11057 մետաղահատ հաստոցներ։ «Աշխատանքի ընդհանուր միութե-
նական բաժանման մեջ,— ասում է ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե.
Քոչինյանը,— Հայաստանը այժմ ներկայացված է լայնորեն զարգացած մե-
քենաշինությամբ, գունավոր մետալուրգիայով, քիմիական արդյունաբերու-
թյամբ, շինանյութերի ինդուստրիայով... էլեկտրատեխնիկական և հաստո-
ցաշինական ճյուղերի զարգացման հետ մեկտեղ՝ վերջին տարիներս մեզ մոտ
գերազանցող տեմպերով են զարգանում ճշգրիտ սարքաշինությունը, էլեկ-
տրատեխնիկան ու ռադիոտեխնիկան»։ Արդյունաբերության համախառն ար-
տադրանքի ընդհանուր ծավալում արտադրամիջոցների արտադրության տե-
սակարար կշիռը 1928 թվականին ընդամենը եղել է 24, 1969-ին՝ 66 տոկոս։
Այժմ մեր հանրապետության արդյունաբերական արտադրանքների շատ տե-
սակներ արտահանվում են Սովետական Միության սահմաններից դուրս, ընդ
որում, ամենաճշգրիտ հաշվիչ մեքենաներ ու նուրբ էլեկտրատեխնիկական
սարքեր։

ՀՍՍՀ ընթացիկ հնգամյա պլանով էս մեծ տեղ է հատկացված ծանր ար-
դյունաբերության առաջընթացին։ Առավել արագ թափով կզարգանան էներ-
գետիկան ու մեքենաշինությունը։ Արդյունաբերության, գյուղատնտեսության
և բնակչության աճող կոմունալ կենցաղային պահանջմունքները բավարարե-
լու համար մեծ միջոցներ կհատկացվեն էներգետիկ բազայի ընդարձակմանը։
Հնգամյակում կգործարկվեն 1,886 հազար կվտ էներգետիկ կարողություններ։
Միայն ատոմային էլեկտրակայանը կունենա 815 հազար կվտ կարողություն։
Հանրապետության էլեկտրակայանները 1975 թվականին կարտադրեն 11 մի-



լիարդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 1969 թ. 5 միլիարդ 404 հազարի դիմաց։
Կկառուցվեն ու կգործարկվեն 1500 կմ ընդհանուր երկարությամբ 35 կվոլտ և
ավելի բարձր լարման էլեկտրահաղորդման գծեր։ Մեծ միջոցներ կհատկաց-
վեն գունավոր մետալուրգիայի զարգացմանը, որը մեր հանրապետության
արդյունաբերության կարևոր ճյուղերից է։ Շահագործման կհանձնվի Զոդի
ոսկու հանքը, կընդարձակվեն և կկատարելագործվեն պղնձարդյունաբերու-
թյան ձեռնարկությունները։ Կբարելավվի հումքի կոմպլեքսային օգտագոր-
ծումը, զգալիորեն կբարձրացվի մետաղների կորզման եղանակը։

Ընթացիկ հնգամյակում մեր հանրապետությունում առավել կծավալվեն
երկրաբանական հետախուզական աշխատանքները՝ Աբովյանի մագնեզիումի-
ապատիտի, Տիգրանաբերդի, Ալավերդու, Հանքաձորի պղնձի, Այգեձորի
պղնձամոլիբդենային, Մեղրաձորի ոսկու և այլ հանքավայրերում։ Այս հնգ-
ամյակում երկրաբանական հետախուզական աշխատանքներին 43 տոկոսով
ավելի ֆինանսական միջոցներ կհատկացվի, քան անցած հնգամյակում։ Իսկ
այդ մեծ չափով կնպաստի ծանր արդյունաբերության առավել արագ զար-
գացմանը։

Սովետական Հայաստանի հեռանկարային ճյուղերից է մեքենաշինությու-
նը, որի առաջընթացն արագ թափով կապահովվի նաև ընթացիկ հնգամյա-
կում։ Արդյունաբերության այդ ճյուղում, ամբողջությամբ վերցրած, արտա-
դրանքի ծավալը կաճի 1,9 անգամ (ամբողջ արդյունաբերական արտադրանքը
64 տոկոսով)։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ութերորդ գումարման երկ-
րորդ սեսիայում տված զեկուցման մեջ հանրապետության Մինիստրների սո-
վետի նախագահ ընկ. Բ. Մուրադյանը նշեց. «...Մեքենաշինության առանձին
ճյուղեր կպահպանեն իրենց նշանակալի տեղը երկրի արդյունաբերության
մասշտաբների մեջ. էլեկտրատեխնիկական արդյունաբերությունն արտադրու-
թյան ծավալով Սովետական Միության մեջ կլինի երրորդ, սարքաշինությու-
նը՝ չորրորդ, հաստոցաշինությունը՝ հինգերորդ տեղում»։ Վերընթաց թափով
կզարգանան ռադիոէլեկտրոնային, ավտոմոբիլային, հաստոցաշինության ար-
դյունաբերության ձեռնարկությունները։ Հնգամյակում խոշոր էլեկտրական
մեքենաների և փոքր կարողություն ունեցող էլեկտրաշարժիչների արտադրու-
թյունը կաճի 2,3, ավտոմատացված սարքերինն ու միջոցներինը՝ 2,2 անգամ։

* * *

ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ երկրի ինդուստրիայի հետագա վե-
րելքն ապահովելու համար հարկավոր է արտադրության մեջ լայնորեն ներ-
դնել գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումները և առաջավորների
փորձը։ Խնդիր է դրված ծանր արդյունաբերության ձեռնարկությունները և ար-
տադրամասերը վերազինել բարձր արտադրական տեխնիկայով, կատարելա-
գործել տեխնոլոգիական պրոցեսները, ամեն կերպ կրճատել նոր տեխնիկայի
և առաջադիմական տեխնոլոգիայի ստեղծման ու յուրացման ժամկետները։
«Գիտա-տեխնիկական հեղափոխությունը,— ասում է ընկ. Կոսիգինը,— բաց
է անում արտադրության մեթոդներն արմատապես վերափոխելու, աշխատան-
քի՝ սկզբունքորեն նոր, բարձր արտադրողական գործիքներ, նորագույն նյու-
թեր ստեղծելու հնարավորություններ, կյանքի է կոչում նոր ճյուղեր, ապահո-
վում ամբողջ արտադրական գործունեության արդյունավետության բարձ-
րացման՝ առաջներում չտեսնված հնարավորություններ» (ՍՄԿԿ XXIV հա-
մագումարի նյութերը, էջ 184)։

Մետալուրգիայի մեջ զգալիորեն կաճեն ագրեգատների միավորային կարողությունները։ Թթվածնավոր կոնվերտորներում ձուլվող պողպատի բաժինը կհասնի պողպատի թողարկման ընդհանուր ծավալի 30 տոկոսին։ Զգալիորեն կբարձրանա էլեկտրապողպատի տեսակարար կշիռը։ Կգործարկվի 5000 խմ ծավալ ունեցող դոմենյան հնոց։ Կստեղծվեն կոնվերտորային արտադրամասեր, որոնք տարեկան կձուլեն 7—8 միլիոն տոննա պողպատ։ Նովոլիպեցկի մետալուրգիական գործարանի թիթեղագլոտի «2000» հաստոնը տարեկան կթողարկի 6 միլիոն տոննա գլանվածք։ Նորագույն տեխնիկայի ներդրման և արտադրության առաջավորների փորձի արմատավորման շնորհիվ զգալիորեն կաճի աշխատանքի արտադրողականությունը։ Դրա հաշվին կաճի սև մետալուրգիայի 95—97 տոկոսը։ Թե՛ մետալուրգիայի, թե՛ քարածխի հանքավայրերում լայն տեղ կտրվի հանքահորերը բաց եղանակով օգտագործելու մեթոդին։

Նորագույն տեխնիկայով կհագեցվի մեքենաշինության արտադրական բազան։ Մետաղահատ հաստոցների ռեսուրսների առնվազն 30 տոկոսը կհատկացվի մեքենաշինության ձեռնարկություններին՝ հնացած սարքերը փոխարինելու համար։ Կստեղծվեն և կծավալվեն ծայրագույն հյուսիսի, շոգ կլիմայի և լեռնային տեղանքի պայմաններում աշխատող մեքենաների արտադրությունը։

Ընթացիկ հնգամյակում Նևինոմինսկի, Սևերոդոնեցկի և Նովոմոսկովսկի քիմիական կոմբինատներում կտեղադրվեն 400—450 հազար տոննա ամոնիակ արտադրող ագրեգատներ, կյուրացվեն մեծ դիմացկունություն ունեցող, ջերմակայուն, էլեկտրամեկուսիչ, ժանգակայուն և այլ նոր տեսակային պոլիմերային նյութերի արտադրությունը։ Նավթարդյունաբերության մեջ հատուկ ուշադրություն կնվիրվի բարձր-օկտանային բենզինների, բարձր արդյունավետ բազմաֆունկցիոնալ խառնուրդներով քսայուղերի, քիմիական արդյունաբերության համար օգտագործվող նավթահումքերի և այլ նյութերի արտադրության ընդլայնմանը։

Ներկա ժամանակաշրջանում ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերի առջև անհետաձգելի խնդիր է դրված՝ լայնորեն օգտագործել տեխնիկական հեղափոխության նվաճումները, դրա միջոցով բարձրացնել արտադրության արդյունավետությունը։ Այդ նպատակով ընթացիկ հնգամյակում ծանր արդյունաբերության մեջ ավելի լայն մասշտաբներով է արմատավորվելու կոմպլեքսային մեքենայացումը, ստեղծվելու են ավտոմատիկ և փոխանցող կոնվեյերների գծեր։ Այս բնագավառում արդեն որոշակի նվաճումներ կան։ Բավական է ասել, որ 1971 թվականի կեսերին Մոսկվայի Ի. Ա. Լիխաչևի անվան գործարանում աշխատում էր 168 ավտոմատիկ և մատուցող մեխանիզմներ։ Այստեղ փոխադրող կոնվեյերների գծերի երկարությունը 270 կիլոմետր է։

Տեխնիկական պրոգրեսի առաջավոր խնդիրներից մեկը՝ աշխատատար պրոցեսների մեքենայացումն է, որը հնարավորություն կընձեռի առավելագույն հնարավոր չափով ձեռքի աշխատանքը փոխարինել մեքենաներով։ Եթե կապիտալիստական աշխարհում գիտա-տեխնիկական հեղափոխությունը միլիոնավոր բանվորների դուրս է նետում արտադրությունից, բազմացնում գործազուրկների բանակը, ապա զարգացած սոցիալիստական հասարակարգում այն ապահովում է արտադրության աճի կայուն ու բարձր թափ, սովետական մարդկանց լիակատար զբաղվածության երաշխիք հանդիսանում։



Կոմունիստական կուսակցությունը չթուլացող թափով առաջ մղելով ծանր
արդյունաբերությունը, հետապնդում է նաև մի նպատակ՝ անմիջականորեն
նրա ձեռնարկություններում ընդլայնել ժողովրդական սպառման առարկանե-
րի արտադրությունը։ Ծանր արդյունաբերության մի շարք ճյուղեր ընթացիկ
հնգամյակում նշանակալիորեն կավելացնեն կուլտուր-կենցաղային ու տնտե-
սական գործածության առարկաների արտադրությունը։ Այս ուղղությամբ ար-
դեն գործնական քայլեր են արվում։ Երկրի պաշտպանական արդյունաբերու-
թյան ձեռնարկություններում թողարկվող արտադրանքի ամբողջ ծավալի 42
տոկոսը քաղաքացիական նպատակների համար է վաճառվում։ Սովետական
Հայաստանի ծանր արդյունաբերության ձեռնարկություններն արտադրում են
սառնարաններ, կուլտուր-կենցաղային ու տնտեսական գործածության այլ
առարկաներ։

Պատմության գիրկն անցավ իններորդ հնգամյակի առաջին տարին։ Ինչպես Սովետական Միության աշխատավորները, այնպես էլ ծանր արդյունաբերության բնագավառում գործողները ծավալելով սոցիալիստական մրցությունը, հաջողությամբ իրագործեցին 1971 թվականի պետական առաջադրանքները։ Անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ, Սովետական Միությունում ավելի է արտադրվել էլեկտրաէներգիա՝ 59 միլիարդ կվտ-ժամ, նավթ՝ 23 միլիոն տոննա, գազ՝ 14 միլիարդ խմ։ Երկրում ձուլվել է չուգուն՝ 89,3, պողպատ՝ 121 միլիոն տոննա, թողարկվել է 95,8 միլիոն տոննա գլանվածք, արդյունահանվել է 641 միլիոն տոննա ածուխ։ Պողպատի ձուլման ասպարեզում ՍՍՀՄ ետ էր մնում ԱՄՆ-ից՝ 1961 թվականին՝ 22, 1967-ին՝ 16, 1970-ին՝ 6 տոկոսով։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ այժմ տարբերությունը գրեթե վերացվել է։ Ավտոմոբիլների թողարկումն ընդհանուր առմամբ աճել է 25, իսկ մարդատարներինը՝ 54 տոկոսով։ 1971 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ավելի է արտադրվել հանքային պարարտանյութ՝ 6 միլիոն, պլաստմասսա և սինթետիկ ձյութ՝ 190 հազար, քիմիական թել՝ 53 հազար տոննա, դարբնոցա-մամլակային մեքենա՝ 27, մետաղահատ հաստոց՝ 79, ավտոմատացման ու հաշվողական տեխնիկայի միջոցներ և սարքեր՝ 517, գյուղատնտեսական մեքենաներ՝ 220 միլիոն ռուբլու։ Ավելացել է գունավոր ու հազվագյուտ մետաղների, նավթաքիմիայի, նավթավերամշակման արտադրանքների և շատ այլ արտադրատեսակների արտադրությունը, աճել է կարևորագույն օգտակար հանածոների հետախուզված պաշարները։

Ներկայումս Սովետական Միությունն աշխարհում առաջին տեղն է գրավում ածխի, երկաթահանքաքարի արդյունահանությամբ, կոքսի արտադրությամբ, չուգունի ձուլմամբ, մագիստրալային ջերմաքարշիչների ու էլեկտրաքարշիչների, կոմբայնների, ցեմենտի թողարկումով։

ՍՍՀՄ իններորդ հնգամյա պլանի վիթխարի մասշտաբները մի անգամ ևս
ապացուցում են կոմունիզմի կառուցման լենինյան պլանի ճշտությունը, պլան,
որը մշակվեց ու կիրառվեց կապիտալիզմի դարավոր զարգացման տնտեսա-
տեխնիկական հարուստ փորձի քննադատական ուսումնասիրության և լենին-
յան հանճարի շողերով լուսավորված մտքի հանրագումարների հիման վրա։
Ծանր ինդուստրիայի արագ զարգացումը հանդիսացավ սոցիալիստական մեծ
հայրենիքի տնտեսական բարգավաճման, նրա քաղաքական լիակատար ան-
կախության, ռազմական անպարտելիության, իմպերիալիզմի կողմից կեղեք-
ված բազում ժողովուրդների վերջնական ազատագրման ու սոցիալիզմի հա-
մաշխարհային սիստեմի անսասանության հուսալի գրավականը։

# ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## ԼԵՆԻՆՅԱՆ ԻՄԱՍՏՈՒԹՅԱՆ ԿԵՆԴԱՆԻ ՄԱՐՄՆԱՎՈՐՈՒՄԸ

Մ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

*Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր*

Պատմությանը հայտնի են բազմապիսի պետական կազմավորումներ, բայց դրանցից և ոչ մեկը չի կարող համեմատվել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հետ, որն ստեղծվել է ազատ ժողովուրդների կամավորության ու իրավահավասարության հիմքի վրա և դարձել նրանց անխախտ բարեկամության ու համագործակցության մարմնացումը: Նա անցել է կեսդարյա դժվարին, բայց հերոսական ուղի և դրսևորել անսասան դիմացկունություն ու հարաճող կենսունակություն թե՛ խաղաղ շինարարության տարիներին և թե՛ ահեղ պատերազմների փորձության ժամին: Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում Սովետական Միությունը վերածվեց սոցիալիստական հզոր տերության, ուր այսօր բարձրանում է կոմունիզմի հոյակապ շենքը:

Այդ ամենը կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության փայլուն հաղթանակն է, որն ունի համաշխարհային-պատմական նշանակություն: ՍՍՀՄ կազմակերպիչը Լենինն էր, որի հանճարը բացառիկ ուժով ճառագայթեց պետական շինարարության ասպարեզում և լուսավորեց բազմազգ սովետական հասարակության զարգացման լայնահուն ուղին:

* * *

ՍՍՀՄ կազմավորումն անխզելիորեն կապված է ազգային հարցի լենինյան ծրագրի հետ, որի իմացությունը հասկանալի է դարձնում նրա համար մղվող պայքարը: Ինչ խոսք, ազգային հարցը կարևոր տեղ է գրավում ժողովուրդների կյանքում, ուստի նաև գիտության մեջ: Առաջինը գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը տվին նրա լուծման ելակետային դրույթները, որոնք նոր պայմաններում զարգացրեց Վ. Ի. Լենինը և մշակեց



ամբողջական ուսմունք ազգային-գաղութային հարցի մասին: Նա ցույց տվեց, որ ազգային ճնշումն ու թշնամությունը շահագործողական կարգերի ծնունդ են և նրանց վերացումն էլ կբերի ժողովուրդների ազատություն ու համերաշխություն: Հետևապես, ազգային հարցի արմատական լուծումը կապված է սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման հետ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն արմատական շրջադարձ էր նաև ազգային հարաբերությունների ասպարեզում: Սովետական իշխանությունը ծնվեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշով և հռչակեց բոլոր մեծ ու փոքր ժողովուրդների իրավահավասարությունը:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը բացառիկ ուշադրություն դարձրին ժողովուրդների միջև եղած այն փաստական անհավասարության վերացմանը, որը մնացել էր անցյալից. դա ազգային շըրջանների՝ կենտրոնական Ռուսաստանի համեմատությամբ, տնտեսական ու կուլտուրական հետամնացությունն էր, որը հաջողությամբ հաղթահարվեց ազգային ճիշտ քաղաքականության կիրառման շնորհիվ: Այն դրսևորվեց սովետական պետության մեծագույն հոգատարությամբ նախկին ճնշված ժողովուրդների նկատմամբ, ազգային կադրերի աճեցմամբ, ազգային շրջանների զարգացման արագ տեմպերով, նրանց բազմակողմանի առաջընթացով: Լենինը դեռ 1919 թվականին, պատասխանելով ամերիկյան ժուռնալիստի հարցերին, ասաց. «... մենք ամեն կերպ օգնում ենք ամեն մի ժողովրդի ինքնուրույն, ազատ զարգացմանը» (Երկեր, հ. 29, էջ 640): Միայն սովետական իշխանության շնորհիվ, Սովետական Ռուսաստանի օգնությամբ, ազգային շըրջանները հասան տնտեսության ու կուլտուրայի զարգացման բարձր մակարդակի, շատ ժողովուրդներ առաջին անգամ մայրենի լեզվով ձեռք բերին գիր ու գրականություն և առանց կապիտալիզմի շրջանն անցնելու՝ անցան սոցիալիզմին:

Սոցիալիստական հեղափոխության նախօրյակին՝ 1917 թվականի հունիսին Լենինը գրեց. «Թող Ռուսաստանը լինի ազատ հանրապետությունների միություն»: Ակներև է, որ Լենինը կանխատեսում էր սովետական-սոցիալիստական տիպի ֆեդերացիան, որպիսին և հանդես եկավ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո: Այդ ժամանակ նա ամենայն որոշակիությամբ ընդգծեց, որ սովետական հանրապետությունների երևան գալուց հետո կուսակցությունը պաշտպանում է «ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԻՊՈՎ կազմակերպված պետությունների ֆեդերատիվ միավորում» (նույն տեղը, հ. 29, էջ 200): Այդպիսի ֆեդերացիան ապահովում էր ժողովուրդների իրավահավասարությունն ու կամավոր միությունը, այն, ինչ Լենինն անվանում էր «անջատվում ենք, որպեսզի միավորվենք»: Ուրեմն, մի կողմից՝ ինքնուրույնություն, մյուս կողմից՝ դեմոկրատական կենտրոնացում: Դրանում տարօրինակ ոչինչ չկա, որովհետև իսկական բարեկամությունն ու միասնությունն ստեղծվում է իրավահավասարության ու համագործակցության վրա:

Կոմունիստական կուսակցությունը պետական շինարարության մեջ ևս կիրառում էր դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, որի առթիվ Լենինը գրել է. «Մենք կողմնակից ենք դեմոկրատական ցենտրալիզմին: Եվ պետք է պարզ ըմբռնել, թե որքան շատ է տարբերվում դեմոկրատական ցենտրալիզմը, մի կողմից, բյուրոկրատական ցենտրալիզմից, մյուս կողմից՝ անարխիզմից:

Ցենտրալիզմի հակառակորդները շփոթում են քաշում ավտոնոմիան և ֆեդերացիան, իբրև պայքարի միջոցներ ցենտրալիզմի պատահականությունների դեմ: Իրականում դեմոկրատական ցենտրալիզմը ամենևին չի բացառում ավտոնոմիան, այլ ընդհակառակը՝ ենթադրում է նրա անհրաժեշտությունը: Իրականում, նույնիսկ ֆեդերացիան, եթե այն իրագործված է տնտեսական տեսակետից խելացի սահմաններում, եթե այն հիմնված է ազգային լուրջ տարբերությունների վրա, որոնք հարուցում են պետական որոշ առանձնացման իրական անհրաժեշտություն,— նույնիսկ ֆեդերացիան ամենևին չի հակասում դեմոկրատական ցենտրալիզմին: Միշտ և ամենուրեք ֆեդերացիան իսկական դեմոկրատական հասարակարգում, իսկ առավել ևս պետական կազմության սովետական կազմակերպության պայմաններում, միայն անցումային քայլ է դեպի իսկական դեմոկրատական ցենտրալիզմը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 243):

Լենինյան իմաստության առաջին ու պերճախոս հաստատումը դարձավ Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունը, որպիսին հռչակվեց 1918 թվականի հունվարին՝ սովետների համառուսաստանյան III համագումարում: Այնտեղ ընդունվեց Վ. Ի. Լենինի գրած «Աշխատավոր ու շահագործվող ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», որը սահմանադրական ակտ էր և ազդարարում էր, որ Ռուսաստանը հանդիսանում է ժողովուրդների ազատ միություն, «սովետական ազգային հանրապետությունների ֆեդերացիա»: Նույնը մտցվեց ՌՍՖՍՀ առաջին սահմանադրության մեջ, որն ընդունվեց 1918 թվականի հուլիսին՝ սովետների համառուսաստանյան V համագումարում: Սովետական Ռուսաստանը ո՛չ միայն օրինակ էր, այլև ամուր հենարան սոցիալիստական մյուս հանրապետությունների ստեղծման ու զարգացման համար: Աներկբայելի է ռուս ժողովրդի ազատարար ու համախմբող դերը մեր հայրենիքի մյուս ժողովուրդների համար:

Ռուսաստանյան ֆեդերացիայի մեջ միավորված էին բազմաթիվ ժողովուրդներ և կազմում էին ավտոնոմ ազգային հանրապետություններ: Սակայն նախկին ռուսական կայսրության տարածքում ՌՍՖՍՀ-ից բացի ստեղծվեցին նաև Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի սովետական սոցիալիստական հանրապետությունները, ինչպես նաև Խորեզմի ու Բուխարայի ժողովրդական սովետական հանրապետությունները: Դրանք ինքնուրույն պետություններ էին, բայց իրենց խնդիրներով միանման ՌՍՖՍՀ-ին, որն աչքի էր ընկնում հեղափոխական ավանդույթներով, քաղաքական, տնտեսական ու կուլտուրական խոշոր կենտրոններով, եղբայրական աջակցությամբ ու օգնությամբ: Պատահական չէ, որ հենց սկզբից նա կատարում էր ավանգարդային դեր, հավասարների մեջ ավագ եղբոր դեր և նրա շուրջն էին համախմբվում մնացած սովետական հանրապետությունները: Դա միանգամայն օրինաչափ պրոցես էր, և արդեն քաղաքացիական պատերազմի տարիներին ստեղծվեց սովետական հանրապետությունների ու ժողովուրդների ռազմա-քաղաքական ամուր դաշինք՝ ուղղված մեր երկրի ներքին ու արտաքին թշնամիների դեմ:

Համառուսաստանյան Կենտգործկոմի 1919 թվականի հունիսի 1-ի դեկրետում նշվում է, որ միջազգային իմպերիալիզմը և ներքին հակահեղափոխությունը մեր երկրի դեմ նյութել են ահավոր պատերազմ, ուստի, գոյություն ունեցող բոլոր «սովետական սոցիալիստական հանրապետությունների



ռազմական միությունը պետք է առաջին պատասխանը լինի ընդհանուր թշնամիների հարձակման դեմ» (**Образование СССР, Сборник документов (1917—1924), М.—Л., 1949, стр. 126**): Այդպես էլ եղավ. կենտգործկոմի դեկրետը հանդիսացավ, մի կողմից՝ սովետական հանրապետությունների արդեն ծավալվող կամավոր համախմբման արձագանք (օրինակ, մինչ այդ նման հարցով համառուսաստանյան կենտգործկոմին էին դիմել Ուկրաինայի ու Բելոռուսիայի կառավարական մարմինները), մյուս կողմից՝ այդ միավորումն արագացնելու ու ամրապնդելու կոչ: Շուտով ստեղծվեց սովետական բոլոր զինված ուժերի ընդհանուր հրամանատարություն, տրանսպորտի միասնական կենտրոն, գործողությունների համաձայնեցվածություն, ռեսուրսների համընդհանուր մոբիլիզացում:

Թևակոխելով խաղաղ շինարարության փուլը, սովետական հանրապետություններն ավելի ուժեղացրին իրենց միասնությունը: Առկա էին դրա քաղաքական ու տնտեսական նախադրյալները. այդ էին պահանջում նրանց տնտեսական ու կուլտուրական զարգացման շահերը, պաշտպանունակության ամրապնդումը, դիվանագիտական ընդհանուր ճակատի ստեղծումը իմպերիալիզմի դեմ: Վ. Ի. Լենինը սովետական ժողովուրդների միավորման լավագույն ձևը համարեց ֆեդերացիան, այսինքն՝ այն միասնական պետական կառուցվածքը, որի մեջ մտնող ազգային հանրապետությունները կլինեն սուվերեն, բայց և բոլորի համար կգործեն ընդհանուր կառավարական օրգաններ, կենտրոնացված ու դեմոկրատական միասնական ղեկավարություն, ընդհանուր քաղաքացիություն, ֆինանսներ, բանակ, արտաքին քաղաքականություն:

Հիմնավորելով այդ գաղափարը Վ. Ի. Լենինը դեռ 1920 թվականի հունիսին գրեց. «Ճանաչելով ֆեդերացիան որպես անցման ձև դեպի լրիվ միասնություն, անհրաժեշտ է ձգտել ավելի ու ավելի սերտ ֆեդերատիվ միության, նկատի ունենալով, առաջին՝ ամբողջ աշխարհի ռազմական տեսակետից անհամեմատ ավելի զորեղ իմպերիալիստական պետություններով շրջապատված սովետական հանրապետությունների գոյությունը պաշտպանելու անհնարինությունն առանց սովետական հանրապետությունների ամենասերտ դաշինքի. երկրորդ՝ սովետական հանրապետությունների տնտեսական սերտ դաշինքի անհրաժեշտությունը, առանց որի անիրագործելի է իմպերիալիզմի կողմից ավերված արտադրաուժերի վերականգնումը և աշխատավորների բարեկեցության ապահովումը. երրորդ՝ միասնական, մի ընդհանուր պլանով բոլոր ազգերի պրոլետարիատի կողմից կարգավորվող համաշխարհային տնտեսության՝ որպես ամբողջության ստեղծման տենդենցը, որը միանգամայն ակնհայտորեն դրսևորվել է արդեն կապիտալիզմի օրով և անպայման ենթակա է հետագա զարգացման ու լիակատար ավարտման սոցիալիզմի օրով» (Երկեր, հ. 31, էջ 168):

1920—21 թվականներին Լենինի անմիջական ղեկավարությամբ ուժեղանում են ֆեդերատիվ կապերն սովետական անկախ հանրապետությունների միջև: Դա հատկապես արտահայտվում է ՌՍՖՍՀ հետ Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի, Բուխարայի ու Խորեզմի կնքած պայմանագրերով, որոնք ամրապնդում են նրանց տնտեսական ու կուլտուրական կապերը: Փաստորեն ստեղծվում են միացյալ ժողովրդական կոմիսարիատներ (ռազմական գործերի, ֆինանսների, արտաքին առևտրի, աշխատանքի և այլն), որոնք մտնում էին ՌՍՖՍՀ ժողկոմսովետի մեջ և իրենց լիազորներն ունեին մյուս հանրապետություններում: Մյուս կողմից՝ այդ հանրապետությունների

ներկայացուցիչները սիստեմատիկաբար մասնակցում էին կենտրոնական կառավարության աշխատանքներին: ՌՍՖՍՀ պետպլանի միջոցով կատարվում էին տնտեսության պլանային կարգավորման առաջին քայլերը: Հռչակավոր ԳՈԷԼՌՈ-ի պլանը տարածվում էր սովետական ողջ երկրի վրա: Հայտնի է, որ Լենինն այն համարեց կուսակցության երկրորդ ծրագիր, որը, բնականաբար, վերաբերում էր բոլոր հանրապետություններին:

Լենինը պահանջում էր, որ սովետական հանրապետությունների հարաբերությունները լինեն իրավահավասար ու բարեկամական՝ առանց նացիոնալիզմի որևէ ազդեցության ու արտահայտության: Այն ժամանակ նա հատկապես վտանգավոր էր համարում մեծապետական շովինիզմը և շեշտում դրա դեմ վճռական պայքար մղելու անհրաժեշտությունը:

Սովետական Ռուսաստանն անշահախնդիր օգնություն էր ցույց տալիս բոլոր հանրապետություններին և Լենինը զգուշացնում էր, որ ռուս ընկերները, մեկնելով ազգային շրջաններ, պետք է հանդես գան որպես սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մունետիկներ՝ առանց որևէ ինքնապարծության ու գոռոզամտության:

Միջազգային հարաբերությունների բնագավառում ևս ակնառու էր սովետական հանրապետությունների միասնությունը: Այսպես, 1922 թվականին՝ Ջենովայի կոնֆերանսում ՌՍՖՍՀ պատվիրակությունը (Գ. Չիչերինի գլխավորությամբ) ներկայացնում էր սովետական բոլոր հանրապետությունների (Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի, Բուխարայի, Խորեզմի, Հեռավոր արևելյան) շահերը, որն անպայման նպաստեց իմպերիալիստների նենգամիտ պլանների ձախողմանը: Բնորոշ է նաև, որ մինչ այդ՝ 1921 թվականին, Թուրքիայի հետ Կարսի պայմանագիրը կնքվեց Անդրկովկասի բոլոր հանրապետությունների կողմից՝ ՌՍՖՍՀ մասնակցությամբ:

Այդպիսով, շնորհիվ կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն քաղաքականության, հմտորեն զուգակցվեցին սովետական հանրապետությունների ազգային ու ինտերնացիոնալ շահերը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Դա օրինաչափ երևույթ էր և բխում էր բանվորա-գյուղացիական պետության բնույթից, նրա օբյեկտիվ զարգացումից ու հեռանկարներից:

Այնուամենայնիվ, միջհանրապետական հարաբերությունների ԼԻԱԿԱՏԱՐ կանոնավորումը և իրավական նորմերի օրենսդրական ամրապնդումը կարող էր ավարտուն տեսք ստանալ միայն ՄԻԱՍՆԱԿԱՆ սովետական պետության շրջանակներում: Այդ զգում էին սովետական բոլոր հանրապետությունները և 1922 թվականին ավելի ուժեղացավ նրանց միավորման շարժումը, որն ուներ իսկական ժողովրդական բնույթ և գլխավորվում էր կոմունիստական կուսակցության կողմից:

Բազմազգ սովետական պետության կազմավորման ուղու վրա նոր քայլ էր Անդրֆեդերացիայի ստեղծումը: Այն կենսական անհրաժեշտություն էր և պայմանավորված էր քաղաքական, տնտեսական, ռազմա-պաշտպանական ու դիվանագիտական հանգամանքներով: Երկրամասի հետամնացության վերացման և՛ տնտեսական ու կուլտուրական զարգացման, և՛ ազգային համերաշխության ու խաղաղության հաստատման անհրաժեշտությունը պահանջում էր միավորել Անդրկովկասի հանրապետությունները մի միության՝ ֆեդերացիայի մեջ:

Լենինը երկրամասի ժողովուրդների տնտեսական սերտ համագործակցությունը համարում էր նրանց քաղաքական համերաշխության բանալին և 1921 թ.



ապրիլի 14-ին՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ-ընկերներին» գրած նամակում հույս էր հայտնում, որ Կովկասի հանրապետությունների «...սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուական ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32 էջ 402):

Անդրֆեդերացիան ստեղծվեց աստիճանաբար: Սկզբում միավորվեցին երկաթուղիները, արտաքին առևտուրը, ապա ստեղծվեց Կովկասի տնտեսական բյուրո՝ կոորդինացնելու հանրապետությունների ժողկոմների գործունեությունը: Արդեն 1921 թ. նոյեմբերին կուսակցության Կովկասյան բյուրոյի ընդլայնված պլենումը հասունացած համարեց Ադրբեջանի, Հայաստանի ու Վրաստանի ֆեդերատիվ միավորման հարցը: Այն հավանություն ստացավ ՌԿ(բ)Կ Կենտկոմի կողմից և Լենինն էլ գրեց Քաղբյուրոյի որոշումը, որտեղ ասված է. «Անդրկովկասյան հանրապետությունների ֆեդերացիան համարել սկզբունքորեն բացարձակորեն ճիշտ և անպայման իրագործման ենթակա» (Երկեր, հ. 33, էջ 136): Նա միաժամանակ պահանջում էր, որ Անդրկովկասի կոմունիստները այդ ուղղությամբ լայն բացատրական աշխատանք տանեն ժողովրդական մասսաների շրջանում: Հարկ եղավ վճռական հակահարված տալ նացիոնալ-ուկլոնիստներին, որոնք ազգային նեղ շահերը հակադրում էին սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ շահերին:

Անդրկովկասի կոմունիստների ու աշխատավոր մասսաների ջերմ հավանության պայմաններում Ադրբեջանի, Հայաստանի ու Վրաստանի կենտգործկոմների լիազոր-կոնֆերանսը (Թիֆլիսում) 1922 թվականի մարտի 12-ին հաստատեց ֆեդերատիվ միավորման պայմանագիրը: Ստեղծվեց Անդրկովկասի սոցիալիստական սովետական հանրապետությունների ֆեդերատիվ միություն, որը 1922 թվականի դեկտեմբերի 13-ին՝ երկրամասի սովետների I համագումարում (Բաքվում) վերակազմվեց Անդրկովկասի սոցիալիստական ֆեդերատիվ սովետական հանրապետության (ԱՍՖՍՀ), պահպանելով նրա մեջ մտնող սովետական հանրապետությունների ինքնուրույնությունը: Դրանով ստեղծվեց սովետական ֆեդերացիայի նոր աստիճան. եթե ՌՍՖՍՀ մեջ մտնում էին ավտոնոմ ազգային հանրապետություններ, իսկ Ռուսաստանն էլ պայմանագրորեն գտնվում էր ֆեդերատիվ կապերի մեջ սովետական մնացած հանրապետությունների հետ, ապա Անդրֆեդերացիայի կազմում միավորվեցին ինքնուրույն հանրապետություններ և այդպիսով սովետական պետական շինարարության մեջ ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ԳՈՐԾՆԱԿԱՆՈՒՄ ԿԻՐԱՌՎԵՑ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՖԵԴԵՐԱՑԻԱՅԻ ՁԵՎԸ: Երբ Անդրֆեդերացիան կատարեց իր միսիան, 1936 թվականին այն վերացվեց ու նոր սահմանադրությամբ Ադրբեջանը, Հայաստանն ու Վրաստանն առանձին-առանձին մտան ՍՍՀՄ մեջ որպես միութենական հանրապետություններ:

* * *

Ղեկավարելով բազմազգ սովետական պետության ստեղծման պրոցեսը և օգտագործելով ձեռք բերած փորձը, Լենինը հայտնագործեց նաև սոցիալիստական ֆեդերացիայի բարձրագույն ձևը՝ ՍՍՀՄ-ը: Բնորոշ է, որ դեռ նախքան Սովետական Միության կազմավորումը, նա քանիցս առաջ է քաշել ինքնուրույն

հանրապետությունների այսօր ու կամավոր միավորման գաղափարը: Այդպես, 1919 թվականի հունիսին՝ «Մեծ նախաձեռնություն» հոդվածում Լենինը, խոսելով կոմունիստական շաբաթօրյակների մասին, նշում է, որ դրանց մասնակիցների անձնվեր աշխատանքը վերաբերում է «... ամբողջ հասարակությանը՝ տասնյակ և հարյուր-միլիոնավոր մարդկանց, որոնք սկզբում միավորվում են մեկ սոցիալիստական պետության մեջ, հետո սովետական հանրապետությունների միության մեջ» (Երկեր, հ. 29, էջ 524): Նույն թվականի դեկտեմբերին Լենինը Ուկրաինայի բանվորներին ու գյուղացիներին ուղղած նամակում ընդգծում է, որ միավորումը մեծ ուժ է, եթե այն կատարվում է առանց որևէ բռնության ու ճնշման.«Մենք ազգերի ԿԱՄԱՎՈՐ միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա..., լիովին կամավոր համաձայնության վրա (նույն տեղը, հ. 30, էջ 368): Երբ արդեն կատարված էր վիթխարի աշխատանք, երբ սովետական ժողովուրդները սեփական փորձով համոզվել էին ձեռք բերված իրավահավասարության անխախտելիության ու եղբայրական համագործակցության օգտակարության մեջ, վերջ էր տրվել անցյալի անվստահությանն ու թշնամանքին և ծավալվել էր բազմազգ միասնական պետություն ստեղծելու հզոր շարժում, ՍՍՀՄ կազմավորման հարցը 1922 թվականին մտավ իր վճռական փուլի մեջ: Ուկրաինան, Բելոռուսիան, Անդրկովկասը դիմեցին ՌՍՖՍՀ ղեկավար մարմիններին՝ լիովին կոնկրետացնելու և ձևակերպելու միջհանրապետական փեդերատիվ կապերը:

Միավորման շարժումը ղեկավարում էր կոմունիստական կուսակցությունը և արդեն 1922 թվականի օգոստոսի 10-ին ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն հանձնարարեց կազմբյուրոյին՝ ստեղծելու հատուկ հանձնաժողով, որը Կենտկոմի հերթական պլենումի համար նախապատրաստեր ՌՍՖՍՀ և անկախ սովետական հանրապետությունների փոխհարաբերությունների հարցը:

Սեպտեմբերի 23—24-ին տեղի ունեցան ՌԿ(բ)Կ Կենտկոմի հանձնաժողովի նիստերը՝ Վ. Մոլոտովի նախագահությամբ, որտեղ մեկի (Վրաստանի ներկայացուցչի) ձեռնպահությամբ հավանություն տրվեց Ստալինի նախագծին: Ապա մեկ ձայնի գերակշռությամբ (5:4) մերժվեց Գ. Պետրովսկու առաջարկը՝ հանձնաժողովի բանաձևը քննարկելու ազգային հանրապետությունների կուսակցական շրջաններում:

Ընդունված բանաձևով Ուկրաինան, Բելոռուսիան, Ադրբեջանը, Հայաստանն ու Վրաստանը պետք է դառնային ՌՍՖՍՀ ավտոնոմ հանրապետություններ, իսկ Բուխարան, Խորեզմը և Հեռավորարևելյան հանրապետությունն առայժմ մնում էին պայմանագրային սիստեմի մեջ: ՌԿ(բ)Կ Կենտկոմի հավանության դեպքում այդ բանաձևը պետք է իջեցվեր ազգային հանրապետությունների կոմկուսների Կենտկոմներին որպես հրահանգ (տե՛ս ПСС, т. 45, стр. 557):

Հասկանալի է, որ նման որոշումը ճիշտ չէր (ոտնահարվում էին անկախ հանրապետությունների իրավունքները) և տարաձայնությունների պայմաններում հարցը պիտի ավելի բարդանար: Հիվանդության պատճառով Լենինը, որը գտնվում էր Գորկայում, իրազեկ չէր կատարվածին և չէր մասնակցել այդ ամենի քննարկմանը: Բայց ահա սեպտեմբերի 25-ին նրան են ուղարկվում հանձնաժողովի նյութերը, ինչպես նաև Ադրբեջանի, Հայաստանի ու Վրաստանի կոմկուսների կենտկոմների բանաձևերը: Միաժամանակ, առանց սպասելու



Լենինի ցուցումներին, հանձնաժողովի բանաձևն ուղարկվում է ՌԿ(բ)Կ Կենտկոմի բոլոր անդամներին ու անդամության թեկնածուներին, որոնք հոկտեմբերի սկզբին պիտի հավաքվեին պլենումի:

Վ. Ի. Լենինը հանգամանորեն ծանոթանում է ստացված նյութերին և միաժամանակ զրույցներ ունենում Ստալինի, Օրջոնիկիձեի, Սոկոլնիկովի, Մյասնիկյանի, Մդիվանու և ուրիշների հետ: Նա վճռականորեն դուրս է գալիս «ավտոնոմիզացիայի» պլանի դեմ և սեպտեմբերի 26-ին հատուկ նամակ գրում քաղբյուրոյի անդամներին, որտեղ քննարկվող հարցը համարում է «խիստ կարևոր» և գտնում, որ Ստալինը «շտապում է»: Ապա Լենինն առաջադրում է իր պլանը, որով սովետական բոլոր անկախ հանրապետությունները (այդ թվում նաև ՌՍՖՍՀ-ն) պետք է կամավորության ու իրավահավասարության սկզբունքներով միավորվեն մի ընդհանուր միության մեջ. «Մենք մեզ իրավահավասար ենք ճանաչում Ուկրաինական ՍՍՀ ու մյուսների հետ և միասին ու նրանց հետ հավասարապես մտնում ենք նոր միության, նոր փեդերացիայի մեջ— Եվրոպայի և Ասիայի Սովետական Հանրապետությունների Միություն» (**ПСС**, т. 45, стр. 211): Ըստ էության խոսքը ՍՍՀՄ մասին է: Լենինը, հատկապես մտահոգված ազգային հանրապետությունների իրավունքների պաշտպանությամբ, գրում է. «Կարևոր է, որ մենք սնունդ չտանք «անկախականներին», չվերացնենք նրանց ԱՆԿԱԽՈՒԹՅՈՒՆԸ, այլ ստեղծենք մի նոր հարկ ևս, իրավահավասար հանրապետությունների փեդերացիա» (նույն տեղ, էջ 212):

Ինչպիսի՜ խորիմաստ ինտերնացիոնալիզմ, այն ապահովում էր սովետական ժողովուրդների հավասարությունն ու բարեկամությունը և դառնում միասնական պետության առհավատչյան:

1922 թվականի հոկտեմբերի 6-ին տեղի ունեցավ ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը, որին Լենինը հիվանդության պատճառով չկարողացավ մասնակցել:

Պլենումը միահամուռ պաշտպանեց Լենինի առաջարկը և ընդունեց նրա ոգով կազմված բանաձև, որպես Կենտկոմի հրահանգ: Միաժամանակ հանձնարարվեց նոր (ավելի լայն) հանձնաժողովին մշակել ՍՍՀՄ կազմավորման օրենքի նախագիծ, նյութեր նախապատրաստել դաշնակցային (միութենական) պայմանագրի ձևակերպման համար: Այդ հանձնաժողովը կազմեց ՍՍՀՄ սահմանադրության հիմնական կետերի նախագիծը, որը նոյեմբերի 30-ին արժանացավ քաղբյուրոյի հավանությանը և ուղարկվեց հանրապետությունների կոմկուսներին՝ լայն քննարկման համար: Դեկտեմբերի 18-ին տեղի ունեցավ ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը, որը քննարկեց ՍՍՀՄ կազմավորման դեկլարացիայի ու դաշնակցային պայմանագրի նախագծերը և գտավ անհրաժեշտ հրավիրել սովետների համամիութենական առաջին համագումար, որտեղ պիտի ձևավորվեր Սովետական Միությունը:

Սովետական բոլոր հանրապետություններում ժողովրդական զանգվածների շրջանում լայն աշխատանք ծավալվեց և ամենուր աշխատավոր մասսաները ջերմությամբ էին ընդունում ՍՍՀՄ ստեղծման լենինյան գաղափարը: Ուկրաինայում, Բելոռուսիայում, Անդրկովկասում տեղի ունեցան սովետների հանրապետական համագումարներ, որոնք որոշումներ ընդունեցին միասնական պետություն ստեղծելու մասին: Լենինն անդուլ հետևում էր դեպքերի ընթացքին և ուղղություն տալիս սովետական հանրապետությունների կուսակցական ու պետական օրգանների գործունեությանը: 1922 թվականի դեկտեմբերի 10-ին նա ողջույնի հեռագիր ուղարկեց սովետների համաուկրաինական VII համագու-

մարին, որում ասված է. «Համագումարի կողմից քննարկվելիք ամենակարևոր հարցերից մեկը հանրապետությունների միավորման հարցն է: Այդ հարցի ճիշտ լուծումից է կախված մեր պետական ապարատի հետագա կառուցվածքը...» (Երկեր, հ. 33, էջ 540):

1922 թվականի դեկտեմբերին Մոսկվայում հրավիրվեց սովետների համառուսաստանյան X համագումարը, որին մասնակցում էին նաև մյուս հանրապետությունների ներկայացուցիչները: Համագումարը միահամուռ որոշեց ստեղծել միասնական բազմազգ պետություն:

1922 թվականի դեկտեմբերի 30-ին Մոսկվայում բացվեց Սովետների համամիութենական համագումարը, որին Ռուսաստանից, Ուկրաինայից, Բելոռուսիայից ու Անդրկովկասից մասնակցում էին 2215 պատգամավոր: Նրանք մեծագույն խանդավառությամբ Լենինին ընտրեցին համագումարի պատվավոր նախագահ և ողջույնի հեռագիր ուղարկեցին ՍՍՀՄ կազմակերպչին:

Համագումարը հռչակեց դեկլարացիա ու պայմանագիր, որպես բազմազգ սովետական պետության կազմավորման կարևորագույն փաստաթղթեր: Դեկլարացիայում շարադրվում են ՍՍՀՄ ստեղծման շարժառիթներն ու նշանակությունը և մասնավորապես նշվում է, որ միայն սովետական իշխանության պայմաններում կարող էր վերջ տրվել ազգային ճնշմանը և ստեղծվեր ժողովուրդների փոխադարձ վստահություն ու համագործակցություն: Դրա մարմնացումն է ՍՍՀՄ-ը, որը հանդիսանում է «իրավահավասար ժողովուրդների կամավոր միավորում» և նրա դռները բաց են բոլոր սոցիալիստական հանրապետությունների համար (ինչպես գոյություն ունեցող, այնպես և հետագայում կազմավորվող), որոնցից յուրաքանչյուրն ունի նաև Միությունից դուրս գալու իրավունք: Դաշնակցային պայմանագիրը որոշում էր միութենական ու հանրապետական գերագույն օրգանների կառուցվածքն ու նրանց իրավասության շրջանակները, սահմանում ՍՍՀՄ միասնական քաղաքացիություն:

Լենինը նշում էր, որ ազգերի կատարյալ իրավահավասարության հիմքի վրա կառուցված ՍՍՀՄ կապահովի սովետական բոլոր ժողովուրդների բարգավաճումն ու անխախտ միասնությունը, իսկ դա կունենա նաև միջազգային վիթխարի նշանակություն:

Կյանքը լիովին հաստատեց Լենինի կանխատեսումները: ՍՍՀՄ ստեղծումը դարձավ կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության մեծագույն հաղթանակը: Ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, բազմազգ սոցիալիստական պետության ստեղծման գործում մեծագույն ծառայություն ունի կուսակցության և ժողովրդի առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը: Նա հայտնագործեց ու հիմնավորեց սովետական ֆեդերացիայի բազմազան ձևերը, այդ թվում՝ ամենակատարյալը՝ ՍՍՀՄ-ը:

Ընդամենը 50 տարում ՍՍՀՄ-ը դարձել է սոցիալիստական ազգերի միասնական ընտանիք, որը կառավարվում է կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ և բոլոր ժողովուրդների ակտիվ մասնակցությամբ: Նրանց անխախտ բարեկամությունը դարձել է սովետական հասարակության ուժի ու հզորության աղբյուրը, մեր հայրենիքի անսասանության հիմքը և կոմունիզմի կառուցման մեծ գործոնը:

ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն հատկապես ընդգծեց, որ՝ մեր պետության պատմության մեջ ՍՍՀՄ կազմավորումն իր քաղաքական նշանակությամբ և սոցիալ-տնտեսական արդյունքներով ակնառու տեղ է գրավում: Այն



համերաշխ ընտանիքում տեղի է ունենում բոլոր ժողովուրդների ծաղկում ու մերձեցում և այժմ մեր երկրում առաջացել է ԸՆԴՀԱՆՐՈՒԹՅՈՒՆ՝ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴ. «Համատեղ աշխատանքում, սոցիալիզմի համար մղված պայքարում, նրա պաշտպանության մարտերում ծնունդ առան դասակարգերի ու սոցիալական խմբերի, ազգերի և ազգությունների նոր, ներդաշնակ հարաբերություններ՝ բարեկամության և համագործակցության հարաբերություններ: Մեր մարդիկ լցված են մարքս-լենինյան գաղափարախոսությամբ, կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակների ընդհանրությամբ: Սովետական բազմազգ ժողովուրդը այդ միաձույլ համախմբվածությունը ցուցադրում է իր աշխատանքով, կոմունիստական կուսակցության քաղաքականությանը միահամուռ հավանություն տալով» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 101):

Սովետական բազմազգ պետության անօրինակ նվաճումների հանդեպ լիովին զրպարտչական են իմպերիալիզմի գաղափարախոսների չարանենգ հարձակումները կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության վրա և միայն դրսևորում են հակակոմունիզմի կատարյալ սնանկությունը:

Սովետական Միության փորձն ունի միջազգային նշանակություն: Այն խորապես ուսանելի է սոցիալիստական բոլոր երկրների համար: Ազգային հարցի արմատական լուծումը մեր երկրում ոգեշնչում է կապիտալի աշխարհի ճնշված ժողովուրդներին նրանց ազատագրական պայքարում: Այդ ժողովուրդները ենթարկվում են կեղեքման ու հալածանքների, ինչպես, օրինակ, նեգրերը ԱՄՆ-ում: Ամերիկյան իմպերիալիզմը ժողովրդասպան պատերազմ է մղում Վիետնամի, Լաոսի, Կամբոջայի հերոս ժողովուրդների դեմ և ընդհանրապես դարձել է միջազգային ժանդարմ: Բայց դրանով իսկ նա դարձել է նաև ժողովուրդների ատելության առարկա: Այժմ իմպերիալիզմի դեմ ավելի ու ավելի են համախմբվում արդիականության հզոր ուժերը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, միջազգային պրոլետարիատն ու ազգային-ազատագրական շարժումները: Աշխարհի ժողովուրդները պատմական օրինաչափությամբ գնում են դեպի սոցիալական ու ազգային ազատագրում, որի մայրուղին կանխագծված է Լենինի կողմից ստեղծված ՍՍՀՄ օրինակով: Ընդգծելով դրա համընդհանուր նշանակությունը ընկ. Յա. Կադարը ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց. «Սովետական Միության աստղն ավելի ու ավելի վեր է բարձրանում, սոցիալիզմի կառուցումը ծավալվում է արդեն երեք մայրցամաքների երկրներում, ողջ երկրագնդի ժողովուրդները, ազգերն ուզում են և պետք է ապրեն ազատ ու խաղաղ» (**Приветствия** *XXIV* **съезду КПСС, М.** *1971*, **стр.** *16*):



# ՄԵՐ ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑԸ

## ԿԱՐԵՎՈՐ ԵՎ ՈՒՇԱԴՐԱՎ ՀԱՐՑԵՐ

Մեր ամսագրի խմբագրությունը նամակներ է ստացել մի խումբ դեպուտատներից Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Ն. Հարությունյանի՝ «Իզվեստիա» թերթում (8 հոկտեմբերի 1971 թ.) տպագրված և «Սովետական Հայաստան» թերթում (9 հոկտեմբերի 1971 թ.) արտատպված «Մեծ իրավունքներ, հստակ պարտականություններ» հոդվածի կապակցությամբ: Ընթերցողները, հավանություն տալով դրա դրույթներին, խնդրել են ընկ. Ն. Հարությունյանին՝ ամսագրի էջերում կարծիք հայտնել իրենց հուզող մի շարք հարցերի վերաբերյալ:

Ամսագրի խմբագրությունը նպատակահարմար գտավ հարցազրույց կազմակերպել Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Ն. Հարությունյանի հետ, խնդրելով նրան ավելի հանգամանորեն պարզաբանել իր վերոհիշյալ հոդվածի առթիվ ծագած մի քանի հարցեր:

Ընկ. Ն. Հարությունյանը սիրով ընդառաջեց դեպուտատների և խմբագրության խնդրանքին:

Ստորև հրապարակում ենք դեպուտատների առաջ քաշած հարցերը և Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Ն. Հարությունյանի պատասխանները:

ՀԱՐՑ— ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Ս. Միքայելյանը (Լենինական) վկայակոչում է իր դեպուտատական գործունեության հետ առնչված մի փաստ: Լենինական քաղաքի Սպարտակ և Մերկուրով փողոցների մի խումբ բնակիչներ խնդրել էին իրեն՝ օգնելու № 22 դպրոցի շրջապատի ասֆալտապատման գործում: Ինքը միջնորդել է քաղսովետի գործկոմ, այնտեղ համաձայնել են և կազմել նախահաշիվ՝ այդ աշխատանքը 1971 թվականին կատարելու համար: Արդյունքի մասին ինքը տեղյակ է պահել ընտրողներին, որոնք գոհունակությամբ են ընդունել պատասխանը: Սակայն տարին ավարտվել է, մինչդեռ ոչ մի գործ չի կատարվել, թեև մի քանի անգամ ինքն անձամբ հիշեցրել է քաղսովետի գործկոմի ղեկավարներին: Ստացվում է, որ առանձին անպատասխանատու անձանց պատճառով դեպուտատը չկատարեց ընտրողների նակազը:

Ընկ. Միքայելյանը գտնում է, որ իրոք, հասունացել է դեպուտատի իրավասությունը սահմանելու անհրաժեշտությունը: Բայց, միաժամանակ, հարցնում է. արդյոք չպե՞տք է օրինական պատասխանատվության ենթարկել հիմնարկ-ձեռնարկությունների և կազմակերպությունների այն ղեկավարներին, ովքեր ժամանակին ընթացք չեն տալիս դեպուտատի միջնորդություններին, կամայականորեն չեն լուծում նրանց բարձրացրած հարցերը:

ՊԱՏԱՍԽԱՆ— «Մեծ իրավունքներ, հստակ պարտականություններ» հոդ-



վածի կապակցությամբ առաջացած հարցադրումներն ինքնին վկայում են շոշափված խնդիրների այժմեականության, օրենսդրաբար դրանց արագ լուծման կարևորության և դեպուտատական գործունեության համակողմանի ակտիվացման մասին:

Ինքնին հասկանալի է, որ մամուլում հրապարակվող հոդվածներն ու բարձրացվող հարցերը, լինելով շոշափված խնդրի վերաբերյալ կարծիքների պատշաճ դրսևորումներ, չեն կարող սպառիչ լինել ըստ էության և գործնականում անվերապահ կիրառելու իմաստով, քանի դեռ նրանք չեն ստացել օրինական ուժ, ճանաչում: Այս ճշմարտության հիշատակումն անհրաժեշտ համարեցինք այն առումով, որ արծարծվող հարցին վերաբերող առանձին հեղինակների տեսակետներն ու կարծիքները, դիտողություններն ու առաջարկները կնպաստեն խնդրի առավել ճիշտ ըմբռնմանը և կապահովեն մշակվող և այդ հասարակական հարաբերությունները կարգավորող իրավական ակտի լիարժեքությունը:

Առաջ քաշված հարցը ընդհանուր է թե հարցադրմամբ, թե ըստ էության: խոսքը վերաբերում է դեպուտատների բարձրացրած հարցերի լուծմանը:

Այստեղ պետք է սահմանազատել նակազ հասկացողությունը և այն հարցերը, որոնք առաջ են քաշվում դեպուտատների կողմից՝ իրենց պարտականությունները կատարելու կապակցությամբ և ընթացքում:

Ընտրողների նակազը դեպուտատի միջոցով պետական գործերին յուրաքանչյուր քաղաքացու մասնակցության կարևոր ձևերից մեկն է և, միաժամանակ, օրինակն այն բանի, թե մասսաների կամքն ինչպես է իրավական ուժ ձեռք բերում՝ իշխանության մարմինների գործունեության պրոցեսում:

Պետք է նշել, որ նակազները չեն սահմանափակվում միայն բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման ոլորտով: Ընտրողների նակազներում զգալի տեղ են գրավում արտադրության արդյունավետության բարձրացման, նյութական արժեքների խնայողության, ռեզերվների բացահայտման, աշխատանքի արտադրողականության և այլ շատ կարևոր հարցեր: Այդ նակազների կատարման միջոցառումների պլանների հաստատման հարցը օրենսդրությամբ արդեն ամրապնդված է: Ընդգծելով դրա կարևորությունը՝ օրենքն այդ իրավունքը վերապահել է սովետին: Նշանակում է, որ նակազը տվյալ սովետի կողմից օրենքով սահմանված կարգով արդեն լուծման ընդունված հարց է: Սա շատ կարևոր հանգամանք է: Բանն այն է, որ դեպուտատների միջոցով բարձրացվող հարցերի մեծ մասի լուծումը կապված է քաղաքի, շրջանի, գյուղի տնտեսության կարգացման տարեկան պլանի հետ: Եթե տվյալ սովետում քննարկվել ու միջոցառումներ են նշվել դեպուտատների միջոցով ընտրողների կողմից առաջ քաշված հարցերի առթիվ, ապա դրանք դառնում են նակազ և հաշվի են առնվում պլաններում: Մյուս հարցերը կարող են նախատեսվել տնտեսության կարգացման և սոցիալ-կուլտուրական շինարարության հեռանկարային պլաններում՝ ըստ դրանց կարևորության:

Մի էական հազամանք ևս: Դեպուտատներն իրենք պետք է նախ գնահատեն ընտրողների առաջ քաշած խնդիրներն ըստ էության, փոխադարձաբար քննարկեն ու լուծեն այն հարցը, թե առաջարկվող միջոցառումները որքանով են ռեալ, նպատակահարմար և չկա՞ն արդյոք առավել շտապ լուծում պահանջող և կարևոր այլ խնդիրներ, ու նոր միայն դրանք դարձնեն համապատասխան քննության առարկա:

Սպառիչ պատասխան տալ ընտրողների նակազները չկատարող պաշտոնատար անձանց պատասխանատվության ձևերի ու կարգի մասին հարցին, տակավին վաղաժամ է, քանի դեռ չի ընդունված դեպուտատական ստատուսի վերաբերյալ օրենքը: Բայց, այսօրվա դրությամբ, կան նորմաներ, որոնք անմիջականորեն վերաբերում են շոշափված հարցին: Օրենսդրաբար սահմանված են դեպուտատների նամակների լուծման, նրանց հարցումներին, հարցապնդումներին պատասխանելու կարգը, ժամկետները: Անբարեխիղճ պաշտոնատար անձանց վարքագծի հարցը կարելի է քննարկման դնել պետական, հասարակական մարմիններում, վերադաս կազմակերպություններում և այլն:

Դեպուտատների իրավունքների ու պարտականությունների, ընտրողների առջև իրենց աշխատանքի և սովետի գործունեության վերաբերյալ հաշվետվությամբ հանդես գալու, նրանց ետ կանչելու և շատ այլ հարցեր նույնպես սահմանված են օրենսդրությամբ, այդ թվում հիմնական օրենքով: Ինչպես նկատվում է, մեր հարցազրույցի մեջ շոշափված խնդիրների առթիվ կան օրենսդրական սահմանումներ, որոնք կարգավորում են դեպուտատական գործունեությունը և դրան վերաբերող շատ հարցեր: Մնում է, որ այդ օրենքները պահպանվեն ու կիրառվեն ըստ էության:

ՀԱՐՑ— Կիրովականի քաղաքային սովետի դեպուտատ Մ. Սեդրակյանը գրում է. հնարավոր չէ՞ դեպուտատի իրավասությունը սահմանելիս, նախատեսել նաև տարբեր օղակների դեպուտատների աշխատանքային գործունեության ֆունկցիոնալ կապ: Նպատակահարմար չէ՞, որ միութենական և հանրապետական Գերագույն սովետների, շրջանային բաժանում ունեցող քաղաքների, քաղաքային ու գյուղական շրջանների շրջանային սովետների դեպուտատները, որոնք ընտրված են նույն տերիտորիայի ընտրողների կողմից, համապատասխանաբար կոորդինացնեն պետական իշխանության ստորադաս օղակների դեպուտատների գործունեությունը: Արդյունավետ չէ՞, որ միութենական ու հանրապետական Գերագույն սովետների դեպուտատները տվյալ գումարման ժամանակաշրջանում (ամբողջ 4 տարի) ազատվեն գրաված պաշտոնից, ստանան համապատասխան աշխատավարձ և լիովին կատարեն իրենց դեպուտատական պարտականությունները:

ՊԱՏԱՍԽԱՆ— Կիրովականի քաղաքային սովետի դեպուտատ ընկ. Մ. Սեդրակյանի առաջարկությունն ընդունելի է այնքանով, որքանով այն վերաբերում է պետական իշխանության տարբեր օղակների դեպուտատների համագործակցությանը: Բայց միայն այդքանով:

Պետք է նկատի ունենալ, որ ՍՍՀՄ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է աշխատավորների դեպուտատների սովետների միասնական համակարգին, սակայն պետական իշխանության յուրաքանչյուր օղակ լիիրավ է իր լիազորություններում և սովետի վերադաս օղակի առանձին անդամը՝ դեպուտատը, չի կարող վերադաս համարվել ստորադաս օղակի անդամի նկատմամբ:

Այստեղ ընկ. Մ. Սեդրակյանի հարցադրումը, այս ճշտման պայմանով, մերձենում է դեպուտատական խմբի կամ խորհրդի հասկացողությանը: Դեպուտատական խորհուրդներն ստեղծվել են շատ տեղերում և գործում են արդյունավետ: Կրկնում եմ, այստեղ աշխատանքը հիմնված է ոչ թե ենթակայության, «վերադասության» վրա, այլ միայն ու միայն՝ համագործակցության:



Այս առթիվ անհրաժեշտ է վերհիշել Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ պետական պարտականությունները յուրաքանչյուր աշխատավոր պետք է կատարի «...արտադրողական աշխատանքի 8-ժամյա «դասը» վերջացնելուց հետո. դրան անցնելն առանձնապես դժվար է, բայց այս անցման մեջ է միայն սոցիալիզմի վերջնական ամրապնդման երաշխիքը» (Երկեր, հատ. 27, էջ 328):

Այստեղից հետևում է, որ դեպուտատական (հասարակական) պարտականությունների կատարումը չի կարող հակադրվել արտադրության շահերին. բնորոշը, գլխավորը, էականը այստեղ շահերի սերտաճման հարաբերություններն են, որոնք, ինչ խոսք, կապված են «դժվարությունների» հետ: Մեկանում դեպուտատական գործունեության շրջանակները չեն կարող սահմանափակվել սոսկ աշխատանքային ժամանակատևողությամբ՝ բառիս նեղ իմաստով: Բնակչության ընդունելությունը, ընտրողների հետ հանդիպումները և այլն կազմակերպվում են սահմանված օրերին (որպես կանոն ոչ-աշխատանքային ժամերին): Շատ տեղերում շրջանային (քաղաքային) սովետների գործադիր կոմիտեների շենքերում կահավորված են հատուկ ընդունարաններ, որտեղ նշանակված օրերին ու ժամերին դեպուտատները ընդունում են քաղաքացիներին ու զբաղվում նրանց կողմից բարձրացվող հարցերի լուծմամբ: Դեպուտատն այն անձը չէ, որն ընտրողի պահանջով նրա դիմումը հանձնի այս կամ այն մարմնի ղեկավարին, դեպուտատը պետք է օգնի քաղաքացուն՝ ճիշտ կողմնորոշվելու կոնկրետ խնդրում, խորհուրդ տա նրան և, բարձրացվող հարցի ճշտության մեջ համոզվելուց հետո, հարկ եղած դեպքում, միջամտի դրա լուծմանը և այլն:

Դեպուտատական պարտականությունների կատարումը պետական ծառայություն չէ, այլ պետական պարտականությունների կատարում՝ հասարակական հիմունքներով: Ինքնըստինքյան հասկանալի է, որ երբեմն, որոշ պարտականությունների կատարման կապակցությամբ (սովետի սեսիային, գործկոմի նիստին մասնակցելը և այլն) դեպուտատներն ազատվում են հիմնական աշխատանքից՝ պահպանելով աշխատավարձը, ինչպես այդ սահմանված է օրենսդրությամբ:

ՀԱՐՑ— Իջևանի շրջանային սովետի դեպուտատ Ս. Նապինյանը գրում է. նպատակահարմար չէ՞ օրենսդրությամբ ավելի ընդլայնել սովետների մշտական հանձնաժողովների իրավունքները, որ նրանք իրենց որոշումներով կարողանային օպերատիվ կերպով լուծելու ոչ մեծ մասշտաբի հարցեր:

ՊԱՏԱՍԽԱՆ— Կարծում ենք, որ ճիշտ չէ, երբ սովետների հանձնաժողովների գործունեության արդյունավետության միակ գրավականն է համարվում դրանց իրավասության ընդլայնումը:

Բանն այն է, որ մշտական հանձնաժողովները որպես սովետների օժանդակ մարմիններ, կոչված են զբաղվելու սովետի իրավասության հարցերի ուսումնասիրման, նախնական քննարկման ու նախապատրաստման, որոշումների իրականացմանը ակտիվորեն աջակցելու խնդիրներով: Նրանք չեն կարող փոխարինել սովետին ու նրա գործադիր-կարգադրիչ մարմնին: Եթե նկատի ունենանք նաև, որ աշխատավորների դեպուտատների սովետը պետական իշխանության լիիրավ ու միակ տեղական մարմինն է, ուստի պարզ կլինի, թե ինչու մշտական հանձնաժողովների որոշումները չեն կարող ունենալ անվերապահ պարտադրություն: Դա կլիներ իշխանություն՝ իշխանության մեջ:

Առաջարկն այն մասին, որ պետական իշխանության բարձրագույն մարմնի դեպուտատները տվյալ գումարման ամբողջ ընթացքում «ազատվեն գրաված պաշտոնից, ստանան համապատասխան աշխատավարձ և լիովին կատարեն իրենց դեպուտատական պարտականությունները...» ոչ միայն անընդունելի է, այլև սխալ. այն հակասում է սոցիալիստական պետության բուն գաղափարին: Սովետական դեպուտատը, որպես քաղաքական գործիչ, իր պարտականությունները կատարում է հասարակական կարգով՝ առանց վճարի: Նա դեպուտատ է ընտրվել իբրև արտադրության առաջավոր, որպեսզի մասնակցի երկրի կառավարման ընդհանուր գործին: Դեպուտատը սոսկ պառլամենտական չէ:

ՀԱՐՑ— Կիրովականի քաղաքային սովետի դեպուտատ Գ. Խաչատրյանը գրում է. մի՞թե հնարավոր չէ այնպիսի կարգ սահմանել, որպեսզի տեղական իշխանության տերիտորիայում գործող հանրապետական և համամիութենական գերատեսչական ենթակայության ձեռնարկությունները խստիվ կատարեն տվյալ սովետի տերիտորիայում գործող իրավական ակտերը, օրենքները և նրանց ղեկավարները խստացված պատասխանատվություն կրեն օդի, ջրի մաքրության և մյուս հարցերը ճիշտ չլուծելու համար:

ՊԱՏԱՍԽԱՆ— Դեպուտատ Գ. Խաչատրյանի շոշափած հարցն, անշուշտ, կարևոր է, սակայն այդ կապակցությամբ գործող օրենսդրությամբ սահմանված սանկցիաները լրացնելու և կամ խստացնելու անհրաժեշտություն չկա, այլ պետք է ճշտորեն պահպանել դրանք: Այլ կերպ ասած, մեր հնարավորությունները լիարժեք են: Անհրաժեշտ է միայն հետևողականորեն կենսագործել այդպիսիք: Աշխատավորների դեպուտատների քաղաքային, քաղաքի շրջանային սովետների մասին Հայկական ՍՍՀ օրենքի 7-րդ հոդվածը սպառիչ կերպով կարգավորում է ընկ. Գ. Խաչատրյանի կողմից բարձրացվող հարցը: Ավելին, Հայկական ՍՍՀ քրեական օրենսգրքի 240 հոդվածով քրեական պատասխանատվություն է սահմանված ջրամբարները, օդը և հողը կեղտոտելու համար:

Այլ բան է, երբ մեկանում օրենքի կիրառման բնագավառում կան թերացումներ, բայց դա ոչ թե օրենսդրության, այլ գործողության թերացում է միայն:

ՀԱՐՑ— Կիրովականի քաղաքային սովետի դեպուտատ Գ. Ասիրյանը նշում է, որ քաղաքային սովետի դեպուտատն իր պարտականությունները կարող է կատարել աշխատանքից հետո, և տվյալ ձեռնարկության ղեկավարը պարտավոր է դեպուտատի համար պայմաններ ստեղծել՝ դեպուտատական պարտականությունները կատարելու համար: Սակայն այդպես չէ: Նախ, դեպուտատն իր աշխատանքից հետո չի կարող լուծել այնպիսի հարցեր, որոնք առնչվում են հիմնարկ-ձեռնարկությունների հետ, որոնց աշխատանքային օրը նմանապես վերջացել է: Երկրորդ, օրենքը չի պարտավորեցնում հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին աշխատանքի ժամերին դեպուտատներին թույլատրել բացակայելու՝ դեպուտատական պարտականություններ կատարելու համար:

Չէ՞ որ նման պայմաններում դեպուտատը կդժվարանա կատարել ընտրողների նակազը և իր մյուս պարտականությունները:

ՊԱՏԱՍԽԱՆ— Ընկ. Գ. Ասիրյանը դեպուտատական գործունեության հարցերը պայմանավորում է արտադրական-աշխատանքային կբաղվածության կապակցությամբ առաջացող դժվարությունների հետ:



Հարցադրման առթիվ այս սկզբունքի հիշատակումը ամենևին չի ենթադրում, թե սովետների մշտական հանձնաժողովների իրավական վիճակի հետագա դեմոկրատացումն ու ընդլայնումը բացառվում են: Ընդհակառակը, աշխատավորների դեպուտատների տեղական սովետների վերաբերյալ վերջերս ընդունված ակտերում նորն այն է, որ ընդլայնված է մշտական հանձնաժողովների վերահսկողության ոլորտը: Սահմանված է, որ մշտական հանձնաժողովների հանձնարարականները պետք է քննարկվեն այն մարմինների ու կազմակերպությունների կողմից, որոնց դրանք հասցեագրվել են:

Մշտական հանձնաժողովների դերի բարձրացումը պետք է տեղի ունենա նրանց աշխատանքի էական բարելավմամբ, օրենքով վերապահված լայն իրավունքների արդյունավետ օգտագործմամբ, ինչպես նաև գործունեության ձևերի ու մեթոդների հետագա կատարելագործմամբ: Առանց այս հնարավորությունների լրիվ կենսագործման նոր իրավական միջոցներ սահմանելը այսօրվա դրությամբ հազիվ թե լինի անհրաժեշտ:

ՀԱՐՑ— Քաղաքային սովետի դեպուտատներ Ֆ. Տոնոյանը (Լենինական), Պ. Բարիկյանը և Գ. Խաչատրյանը (Կիրովական) հարցնում են՝ հնարավոր չէ՞ տեղական սովետի դեպուտատին իրավունք վերապահել՝ տրանսպորտում, փողոցում, խանութում կամ հասարակական վայրերում ու այլ օբյեկտներում օրինականության խախտումները և հակահասարակական երևույթները օրենքի ուժով կանխելու համար:

ՊԱՏԱՍԽԱՆ— Թվում է, որ դրա անհրաժեշտությունը չկա: Իրականում դեպուտատը, որպես քաղաքացի, նման միջամտության իրավունք համենայն դեպս ունի: Մշակված ու վաղուց գործածության մեջ են բազմաթիվ կանոններ, որոնցով քաղաքացիներն իրենց առաջարկներով, դիտողություններով ու գանգատներով կարող են դիմել ցանկացած մարմնին, կազմակերպությանը, պաշտոնատար անձին: Բացի այդ, յուրաքանչյուր սովետ իր դեպուտատների թվից կազմում է մշտական հանձնաժողովներ, այդ թվում սոցիալիստական օրինականության ու հասարակական կարգի պահպանության: Մշտական հանձնաժողովներին վերապահված են լայն իրավունքներ, իսկ հիմնարկ-ձեռնարկությունների, կազմակերպությունների ղեկավարների վրա դրված են պարտականություններ՝ դրանց պահանջները կատարելու իմաստով:

Պետական ու հասարակական շատ կազմակերպություններ, բնակչության հասարակական ինքնագործունեության մարմիններ նույնպես օժտված են օրինականության հետագա ամրապնդման, հակահասարակական երևույթների դեմ պայքարելու լիազորություններով: Այդ օղակների արդյունավետ աշխատանքն ավելի քան բավարար է տրանսպորտում, առևտրի ձեռնարկություններում, հասարակական վայրերում պատշաճ կարգ ու կանոն ստեղծելու համար:

ՀԱՐՑ.— Կիրովականի քաղաքային սովետի դեպուտատ Գ. Ասիրյանը հարցնում է. ինչպե՞ս վարվել այն դեպուտատի հետ, որն այլևս չի ապրում այն քաղաքում, որտեղ ընտրվել է դեպուտատ և չի հայտնում իր ուր լինելը: Այս դեպքում չի՞ կարելի նրան իր լիազորություններից զրկել՝ առանց դիմումի:

ՊԱՏԱՍԽԱՆ— Թվում է, որ նման մոտեցումը միակողմանի է: Եթե դեպուտատը չի արդարացնում իրեն ցույց տրված վստահությունը, նա օրենքով սահմանված կարգով ետ է կանչվում ընտրողների մեծամասնության որոշմամբ:

Ահա այն, ինչ անհրաժեշտ համարեցինք ասելու սույն հարցազրույցում:

## ԿՈՄՍԿՈՄԻՏԵՆ ԵՎ ԱՐՏԱԴՐԱՄԱՍԱՅԻՆ ԿՈՄՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ

Երևանի էլեկտրալամպերի գործարանը վերջին տարիներին հզորացել ու դարձել է երկրի խոշորագույն արդյունաբերական ձեռնարկություններից մեկը, որի բազայի վրա 1966 թ. կազմակերպվեց «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումը։ Այդ ժամանակամիջոցում մեզ մոտ աճել, կազմակերպչորեն ավելի են ամրապնդվել նաև արտադրամասային կուսկազմակերպությունները և կուսակցական խմբերը։

Մեր գործարանում կան 14 սկզբնական (արտադրամասային) կուսկազմակերպություններ և 28 կուսխմբեր, որոնցում հաշվառման են վերցված 820 ՍՄԿԿ անդամ-թեկնածուներ։ Կուսբյուրոների անդամներ, քարտուղարներ և կուսակցական խմբերի ղեկավարներ են ընտրված աշխատանքը սիրող, կոլեկտիվի հարգանքը վայելող մարդիկ, որոնք, առանց բացառության, ունեն միջնակարգ, միջնակարգ-մասնագիտական և բարձրագույն կրթություն։

Պարբերաբար անդրադառնալով արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսկցական խմբերի գործունեությանը՝ կուսկոմիտեն նրանց ամեն կերպ օգնում է ճիշտ պլանավորելու աշխատանքը, գործիմացությամբ ընտրելու քննարկվող հարցերը, կազմակերպվելիք միջոցառումները։ Ընդ որում, հարցերը նախապատրաստվում են բազմակողմանիորեն ու ժամանակին, որի շնորհիվ դրանց քննարկումն անցնում է գործարար մթնոլորտում, ծավալվում է կարծիքների լայն փոխանակություն։

Մեծ կարևորություն ունի սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների և կուսխմբերի ղեկավարների ուսուցման կազմակերպումը։ Դա մեզ մոտ սիստեմատիկ բնույթ է կրում։ Կուսկոմիտեին կից գործում է մշտական սեմինար, ուր արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարներին ու կուսխմբերի ղեկավարներին ուսուցանում ենք կուսակցական աշխատանքի ձևերն ու եղանակները, ընդհանրացնում նրանց լավագույն և ուսանելի փորձը։ Այդ սեմինարում զեկուցումներով հանդես են եկել արտադրամասերի կուսկազմակերպությունների քարտուղարները։

Այդ զեկուցումներում հանգամանորեն վերլուծվել են արտադրամասային կուսկազմակերպությունների և նրանց կուսբյուրոների գործունեությունը հի-



շյալ հարցերի կապակցությամբ, ընդհանրացվել կուտակած փորձը։ Պարզ է,
դրանք ուսանելի շատ բան կարող են տալ։ Սեմինարների անցկացման այս
ձևը առավել արդյունավետ է այն իմաստով, որ կուսկազմակերպությունների
քարտուղարները, նախքան սեմինարը, ուսումնասիրում են գործերի վիճակը
քննարկվելիք հարցի առումով և հատուկ պատկերացում են ունենում դրա
վերաբերյալ։ Քննարկման ընթացքում արված խելացի դիտողություններն ու
առաջարկությունները ոչ միայն նպաստում են բացահայտված թերությունների
վերացմանը, այլև ուսուցողական մեծ նշանակություն են ունենում սեմինարի
մասնակիցների համար։

Կուսակցական կոմիտեի նախաձեռնությամբ փորձի փոխանակման նպա-
տակով սեմինարներ են անցկացվում նաև ուրիշ ձեռնարկությունների կուս-
կազմակերպությունների հետ համատեղ։ Կուսկոմիտեին հաջողվել է ամրա-
պնդել ամենօրյա կապը արտադրամասային կուսկազմակերպությունների հետ։

Կուսկոմիտեն ամեն կերպ ջանում է բարձրացնել արտադրամասային
կուսկազմակերպությունների պատասխանատվությունը կոլեկտիվի առջև ծա-
ռացած խնդիրների լուծման գործում։ Այդ նպատակով պարբերաբար քննար-
կում ենք կուսբյուրոների, կուսակցական խմբակավարների, արտադրամասե-
րի պետերի հաշվետվությունները։ Նրանք հաշիվ են տալիս ներկուսակցական
գործունեության, կոլեկտիվի անդամների շրջանում տարվող քաղաքական ու
մասսայական աշխատանքների մասին։ Նմանօրինակ հարցեր քննարկվում են
նաև արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովներում և նրանց
բյուրոների նիստերում։ Քննարկվող հարցերի մեծամասնությունը, այն վե-
րաբերի դաստիարակչական, արտադրական, թե ներկուսակցական աշխա-
տանքին, կրում է հաշվետվության ձև։ Սա արդյունավետ միջոց է այն իմաս-
տով, որ թե՛ ուսումնասիրությունից, թե՛ քննարկումից մենք պարզորոշ պատ-
կերացում ենք կազմում ոչ միայն տվյալ կուսկազմակերպության, այլև ար-
տադրական կոլեկտիվի գործերի վիճակի մասին, կարողանում ենք ճիշտ կողմ-
նորոշվել այս կամ այն խնդիրը լուծելիս։

Կուսկոմիտեում և արտադրամասային կուսկազմակերպություններում
կարգ է սահմանված հաղորդումներ տալ կոմունիստներին վերադաս կուսակ-
ցական օրգանների որոշումների մասին, քննարկել սեփական որոշումների
կենսագործման ընթացքին վերաբերող հարցեր, պատժել որոշումների կա-
տարման նկատմամբ անտարբեր վերաբերմունք ցուցաբերողներին։ Այսպես,
Կ. Հայրումյանը, Ա. Խաչատրյանը, կուսակցական որոշումը չկատարելու հա-
մար, հեռացվել են ՍՄԿԿ շարքերից, Ռ. Թորոսյանը, Ս. Ավանեսյանը՝ են-
թարկվել կուսակցական տույժի։

Վ. Ի. Լենինը պահանջում էր կուսակցական, սովետական ու տնտեսական
մարմիններից՝ սահմանել հաշվառման ու հաշվետվության հստակ կարգ,
ընդունել սկզբունքային ու հիմնավորված որոշումներ և ապահովել դրանց կա-
տարումը։ Կուսկոմիտեն իր գործունեության ընթացքում միշտ ելակետ և ղեկա-
վարող ուղեցույց է ընդունում լենինյան այդ ցուցումը, որն իր զարգա-
ցումն ստացավ ՍՄԿԿ XXIV համագումարում։ «Աշխատողների անձնական
պատասխանատվությունը բարձրացնելու գործում,— ասաց Լ. Ի. Բրեժնևը
ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ,— կոչված է կարևոր դեր խաղալու
կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման՝ լավ հիմքերի
վրա դրված ստուգումը»։

Կուսկոմիտեի նախաձեռնությամբ ստեղծված է հատուկ գրքույկ, որտեղ գրանցվում են միավորման և գործարանի տվյալ տարվա սոցպարտավորությունները, ներդրվելիք կազմակերպչական-տեխնիկական միջոցառումները և կուսակցական կոնֆերանսում, արտադրամասային կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների կողմից արված քննադատական դիտողությունների և առաջարկությունների վերաբերյալ կուսկոմիտեում հաստատված միջոցառումների պլանը։ Այդ գրքույկը ժամանակին ստանում են գործարանի բոլոր կազմակերպությունները, համապատասխան ծառայությունները, բաժինները և մասնագետները, որոնք միջոցներ են ձեռնարկում նախատեսված աշխատանքը ժամանակին կատարելու համար։

Թվարկված, ինչպես նաև մի շարք միջոցառումների շնորհիվ արտադրամասային կուսկազմակերպությունները կազմակերպչորեն ավելի են ամրապնդվել, դարձել մարտունակ։ Դրանց վկայությունն այն բազմաթիվ նախաձեռնություններն են, որոնք հանդես են բերել նրանք նախընթաց ժամանակահատվածում։ Այսպես, օրինակ, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի, Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակի կապակցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու նպատակով, նորմալ լուսավորման լամպերի հավաքման արտադրամասի 13-րդ բրիգադը որոշեց հերթափոխային արտադրանքի օրական միջին ելքը հասցնել 11.500 լամպի կամ նախորդ տարվա համեմատությամբ տալ 10 տոկոս աճ, արտադրանքի պիտանի ելքը, նախատեսված 82-ի փոխարեն, հասցնել 85 տոկոսի։ Բրիգադի մարդիկ խոստացան զգալիորեն խնայել նյութերը, բարձրացնել արտադրանքի որակը, իջեցնել միջանկյալ պահեստի խոտանի տոկոսը և իրենց տեխնոլոգիական գծի 3 աշխատողների սովորեցնել երկրորդ մասնագիտությունը։

Կուսկազմակերպության բացատրական-մասսայական աշխատանքի շնորհիվ այդ նախաձեռնությանն արձագանքեցին և կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին նաև արտադրամասի բազմաթիվ այլ բրիգադներ։

Կուսակցական կազմակերպության այդ լավ նախաձեռնությունը քննարկվեց կուսկոմիտեում և մասսայականացվեց գործարանի բոլոր արտադրամասերում ու տեղամասերում։ Ամենուրեք բարձրացավ լամպագործների աշխատանքային ակտիվությունը, գործարար մրցություն ծավալվեց նոր պարտավորությունները պատվով կատարելու համար։ Նախաձեռնությունն սկսած 13-րդ արտադրամասում արտադրանքի միջին ելքը, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճեց 16,5 տոկոսով։ Էլեկտրոդների տեղամասի կոլեկտիվը երկու օր աշխատեց խնայված նյութերի հաշվին։ Նրա օրինակին հետևեցին գործարանի շատ արտադրամասեր և տեղամասեր, որոնց կոլեկտիվները որոշակի գործ կատարեցին նոր տեխնիկայի ներդրման և աշխատատար պրոցեսների մեքենայացման ասպարեզում։

Կուսկոմիտեն, աշխատանքը պլանավորելիս, հիմնականում ելակետ է ընդունում կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծումը և նրա անդամների դաստիարակության շահերը։ Իսկ դա մեծապես օգնում է գործին։ Այսպես, ցոկոլների արտադրամասը 1970 թ. տնտեսական տարին փակեց մետաղյա ժապավենի 48.700 կգ գերածախսով։ Նյութերի գերածախսի տեղիք էր տրվել նաև նախորդ տարիներին։ Աշխատանքային պլանի համաձայն արտադրամասի կուսբյուրոյի և ադմինիստրացիայի հաշվետվությունները մի քանի անգամ քննարկեցինք կուսկոմիտեի նիստում, իսկ ընդունված որոշումների կատար-



ման ընթացքը՝ կուսկոմիտեի նիստերում և սկզբնական կուսկազմակերպության ժողովներում։ Գործարար քննարկումը և որոշումների կատարման գործում հետևողականությունը տվեցին ցանկալի արդյունք. արտադրամասի կուսբյուրոն և ադմինիստրացիան անհրաժեշտ հետևություն հանեցին ստեղծված վիճակից և բարելավեցին այն։ Անցած տարի արտադրամասն արտադրանքի իրացման պլանը կատարեց 102,2, իսկ արտադրանքի թողարկման պլանը՝ 102,4 տոկոսով, կրճատեց գերածախսը և 1971 թ. փետրվարից սկսեց աշխատել օգուտով։ Այժմ արտադրամասն ունի 750 ռ. խնայողություն։

Կուսկազմակերպությունների գլխավոր հոգսերից մեկը կոմունիստների,
կոլեկտիվի անդամների դաստիարակությունն է։ ՍՄԿԿ XXIV համագումարը
նրանց ուշադրությունը բևեռեց այդ կարևոր հարցի վրա։ Համագումարին
տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց, որ
աշխատավորների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքը կու-
սակցական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական և կազմա-
կերպական գործունեության կենտրոնական խնդիրներից է։ Ելնելով կուսակ-
ցության ցուցումներից՝ մեր կուսկոմիտեն գործնական օգնություն է ցույց
տալիս արտադրամասային կուսկազմակերպություններին՝ կոլեկտիվի ան-
դամների դաստիարակության գործը պատշաճ ձևով կազմակերպելու համար։
Կարևոր միջոց է հաշվետվությունների քննարկումը։ Կուսկոմիտեի և բյուրո-
ների նիստերում, կուսժողովներում բրիգադավարները, վարպետները, արտա-
դրամասերի պետերը, ինժեներա-տեխնիկական անձնակազմը պարբերաբար
հաշիվ են տալիս այն մասին, թե ինչպես են իրենք զբաղվում դաստիարակ-
չական հարցերով։ Աշխատանքի կազմակերպման այս մեթոդը զգալիորեն
նպաստել է կոլեկտիվի անդամների դաստիարակության գործում նրանց դերի
բարձրացմանը։

Կուսկոմիտեի և արտադրամասային կուսկազմակերպությունների դաստիարակչական գործունեությունից անբաժանելի են ագիտատորների և պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը, կոմունիստների և անկուսակցականների քաղաքական ուսուցման կազմակերպումը։ Մշակվել և գործածության մեջ է դրվել քաղաքական ուսուցման վերաբերյալ կոմպլեքսային ցուցադրական ձև. բոլոր ունկնդիրներին և պրոպագանդիստներին տրվում են տարվա ընթացքում անցկացվելիք պարապմունքների օրերը և ժամերը հիշեցնող թերթիկներ։ Քաղպարապմունքներին հատկացված սենյակում փակցվել են քաղուսուցման կոմպլեքս ցուցադրական ձեր և մյուս պարագաները։ Իսկ ագիտատորների համար ստեղծել ենք օրագրերի միասնական ձև։ Նրանք գրանցում են իրենց անցկացրած զրույցների թեմաները, իրենց կատարած մյուս աշխատանքները։

Այս ուսումնական տարում կուսակցական ուսուցման սիստեմում գործող
25 տեսական սեմինարներում և քաղխմբակներում, միջին օղակի դպրոցնե-
րում ընդգրկված են 604 կոմունիստներ և անկուսակցականներ։ Նրանք ուսում-
նասիրում են արդյունաբերության էկոնոմիկան, տնտեսագիտություն, քաղա-
քատնտեսության և տնտեսական քաղաքականության տարբեր պրոբլեմներ,
որոնք մշտապես շաղկապվում են առօրյա խնդիրներին։ Ըստ արտադրամասե-
րի առանձնահատկությունների, նայած թե որտեղ տնտեսագիտական կամ
որակական որ հարցն է առավել ուշադրություն պահանջում, ուսումնական
տարվա համար ընտրվում են համապատասխան պրոբլեմային թեմաներ։

Այսպես, նորմալ լուսավորման լամպերի հավաքման արտադրամասում արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարներում ուսումնասիրվում են արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման պրոբլեմները, ցոկոլների արտադրամասում՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցման, հատուկ կոնստրուկտորական բյուրոյում՝ գիտա-տեխնիկական առաջադիմության հարցերը և այլն:

377 կոմերիտականներ և արտամիութենական երիտասարդներ 17 քաղխմբակներում և սեմինարներում նույն կարգով ուսումնասիրում են արդյունաբերության էկոնոմիկայի տարբեր պրոբլեմներ:

Ելնելով աշխատավորության տնտեսագիտական ուսուցման բարելավման մասին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումից՝ գործարանի կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունները, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների հետ միասին, ընթացիկ ուսումնական տարում առանձնահատուկ ուշադրություն է նվիրում կոլեկտիվի անդամների մասսայական ուսուցման ձևերի ընտրությանն ու կատարելագործմանը: Նոր ուսումնական տարում ձեռնարկությունում առաջին անգամ ստեղծվեցին և հաջողությամբ գործում են կոմունիստական աշխատանքի 20 դպրոցներ, որոնցում ընդգրկված են 382 ունկնդիրներ:

Կադրերին տնտեսական և մասնագիտական հարուստ գիտելիքներով զինելու կարևոր օղակ է ժողովրդական համալսարանը: Այն մեզ մոտ ստեղծվել է հիմնականում ինժեներա-տեխնիկական ղեկավար աշխատողների տնտեսագիտական և մասնագիտական որակավորումը բարձրացնելու նպատակով: Այն ունի տնտեսագիտական, լուսատեխնիկայի, ապակու-սիլիկատների, մետաղագիտության, էներգետիկայի և առողջապահության ֆակուլտետներ: Այստեղ ընդգրկված է 326 մարդ:

Վարպետների տնտեսագիտական և մասնագիտական որակավորման բարձրացման նպատակով կազմակերպել ենք վարպետների դպրոց: Այս ուսումնական տարում դպրոցում ընդգրկվել են 121 վարպետներ, որոնք ուսումնասիրում են «Վարպետի դերը արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում», «Վարպետը և տնտհաշվարկը», «Արտադրանքի որակը և վարպետի խնդիրները» և հրատապ այլ թեմաներ՝ կապված ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման հետ:

Կադրերին տնտեսական հարուստ գիտելիքներով զինելու մյուս կարևոր օղակն առաջավոր փորձի տարածման դպրոցներն են, որոնք կազմակերպված են 6 խոշոր արտադրամասերում՝ բանվորների, բրիգադավարների համար: Վերջինս առավել արդյունավետ է այն առումով, որ անմիջականորեն բանվորական տեղամասում լսվում է առաջավոր բանվորի, բրիգադավարի, վարպետի, կարգավորողի փորձը, կատարվում մտքերի փոխանակություն, բացահայտվում նրանց գործունեության լավն ու վատը:

Կադրերի տնտեսագիտական ուսուցման ասպարեզում կուսկոմիտեի և արտադրամասային կուսկազմակերպությունների փորձը ցույց է տալիս, որ ըստ արտադրամասերի առանձնահատկությունների և նրանց առջև դրված խնդիրների կարևորության ուսուցման կազմակերպումը, ուսումնասիրվող թեմաների ճիշտ ընտրությունը միշտ էլ տալիս են մեծ արդյունք: Այսպես, ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մեզ մոտ աշխատանքի արտադրողականության բարձրացման աճի 60 տոկոսը ձեռք է բերվել նոր տեխնիկայի



ու առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, աշխատատար պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, արտադրության ղեկավարման կատարելագործման, իսկ 40 տոկոսը՝ արտադրության ավելի ռացիոնալ կազմակերպման, խոտանի ու աշխատաժամանակի կորուստների կրճատման, բազմահաստոցային սպասարկման անցնելու, կադրերի որակավորումը բարձրացնելու շնորհիվ:

Կուսկոմիտեին և դիրեկցիային հաջողվել է արտադրամասերում ստեղծել ամուր կոլեկտիվներ, ճիշտ ընտրել նրանց ղեկավարող կադրերի կազմը, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների համատեղ գործունեությամբ պատվով լուծել կոլեկտիվի առջև դրված խնդիրները: «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո է՛լ ավելի է աշխուժացել արտադրական կյանքը գործարանի արտադրամասերում, հերթափոխություններում, բրիգադներում: Արտադրամասային կուսկազմակերպությունները գլխավորում են բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին համակած արտադրական խանդավառությունը: Նրանց ղեկավարությամբ մեր մարդիկ դիմում են աշխատանքային խիզախումների, պայքարում գործարանի մակնիշի պատվի համար: Այդ մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ 1970—71 թվականներին վեց եռամսյակ անընդմեջ կոլեկտիվն արժանացավ ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության մրցանակային տեղերի և, ամենակարևորը, ութերորդ հնգամյակի բարձր արդյունքների համար պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Այդ բարձր պարգևին մեր լամպագործները պատասխանեցին կոնկրետ գործերով: Արտադրամասային կուսկազմակերպությունները մոբիլիզացրին նրանց ողջ ուժերն ու եռանդը՝ իններորդ հնգամյակի առաջին տարվա առաջադրանքները պատվով կատարելու համար: Հատկապես ցայտուն են նոր տեխնիկայի ներդրման, արտադրանքի որակի բարելավման, արտադրողականության բարձրացման և մյուս կարևոր ցուցանիշների ասպարեզում ձեռք բերած նվաճումները: Անցած տարի ներդրվեցին 73 կազմակերպչական-տեխնիկական միջոցառումներ, որոնք հնարավորություն տվեցին կրճատել 92 մարդու ձեռքի աշխատանքը, տնտեսել 182,5 հազար ռուբլի: Ատեստացիայի ենթարկված բոլոր 27 անուն էլեկտրալամպերն արժանացան բարձր խմբի որակավորման, իսկ առանձին լամպեր բավարարեցին միջազգային ստանդարտի պահանջները, ինչպես օրինակ, ավտոմոբիլային ցոլարձակ լապտերի լամպը, որը վերջերս արժանացավ Ե—7 որակի եվրոպական նշանին:

Կուսկոմիտեն, արտադրամասային կուսակցական կազմակերպությունների հետ միասին, մշտապես որոնում և օգտագործում է առավել հետաքրքրական և արդյունավետ ձևեր ու մեթոդներ՝ կուսակցական աշխատանքն է՛լ ավելի բովանդակալից դարձնելու, ձեռնարկության առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Ա. Գ. ԳՈՒՐՈՒՆՅԱՆ
Երևանի էլեկտրալամպերի գործարանի
կուսկոմիտեի քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԽԹԱՆՆԵՐԸ

Արտադրանքի որակի բարելավման տնտեսական և նյութական խթանման հարցը պետք է հավասարապես արտացոլի ինչպես ձեռնարկության, կազմակերպության կոլեկտիվի, այնպես էլ նրա առանձին անդամների շահերը։ Նկատի ունենալով այն հանգամանքը, որ նյութական շահագրգռվածության հարցը հիմնականում այս ուղիներով կարող է տնտեսական ներգործություն ունենալ թողարկվող արտադրանքի կամ կատարված աշխատանքի արդյունքի բարելավման վրա, ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը հատուկ ուշադրություն նվիրեց աշխատավորների վարձատրման հարցերին, հատկապես նրանց նյութական շահագրգռվածության բարձրացման գործում։ Այս կապակցությամբ պլենումի որոշումներում նշված է. աշխատավորների խրախուսման ժամանակ ելնել այն բանից, որ աշխատանքի անհատական և կոլեկտիվ վարձատրության չափերը պետք է ուղղակի կախման մեջ դրվեն ո՛չ միայն արտադրանքի քանակից, այլև որակից։

Սակայն, տնտեսավարման պրակտիկան ցույց է տալիս, որ բազմաթիվ ձեռնարկություններ արտադրական-տնտեսական որոշակի դժվարություններով յուրացնում և արտադրում են նորանոր տեսակի մեքենաներ, կատարելագործում են եղածների առանձին կոնստրուկցիաներ, մոդեռնացնում բարոյապես հնացածները և այլն, բայց այս բոլորի համար դեռևս անհրաժեշտ չափով չեն խրախուսվում։

Տնտեսական վերլուծությունը միաժամանակ ցույց է տալիս, որ թողարկվող արտադրանքի ինքնարժեքի բարձրացումը, կապված նրա որակի բարելավման հետ, ժողովրդական տնտեսության մասշտաբով, տնտեսապես ավելի արդյունավետ է, երբ այն կատարվում է բեռնատարողության բարձրացման և շահագործական ծախսերի կրճատման զուգընթաց։

Ինչպես հայտնի է, երկար տարիներ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում արտադրվում էին TM սերիայի ուժային տրանսֆորմատորներ, որոնք բարոյապես հնացել էին և իրենց ինչպես կոնստրուկտորական, այնպես էլ տեխնիկա-տնտեսական մյուս ցուցանիշներով զգալիորեն զիջում էին արտասահմանյան լավագույն նմուշներին։ Գործարանը, էլեկտրամեխանիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղի հետ միասին ձեռնամուխ եղավ մշակելու նոր սերիայի ուժային տրանսֆորմատորներ (TCM)։

TMC նոր սերիայի ուժային տրանսֆորմատորները, TM-ի համեմատությամբ, ունեն հետևյալ առավելությունները. ցածր է քաշը՝ ամբողջ սերիայի համար միջին հաշվով կազմում է 21,6 տոկոս, տրանսֆորմատորային յուղի ծախսը կրճատվում է 31,6 տոկոսով, աշխատատարությունը 16,1, շահագործման ընթացքում տարեկան էլեկտրաէներգիայի կորուստը կրճատվում է ավելի քան 27 տոկոսով։

Նոր սերիայի տրանսֆորմատորների վերոհիշյալ առավելությունների



շնորհիվ գործարանի թողարկած տրանսֆորմատորներից ժողովրդական տնտեսությունը տարեկան միջին հաշվով ստանում է մոտ 638,5 հազար ռուբլու խնայողություն։ Ի դեպ, պետք է նշել, որ այս նույն սերիայի տրանսֆորմատորներն արտադրվում են նաև Միության մի շարք այլ գործարաններում։ Սակայն այս գործում բավարար նյութական խրախուսման չեն արժանացել ոչ ձեռնարկության աշխատողները, ոչ էլ նախագծող կազմակերպությունը։

Ելնելով արտադրանքի որակի բարելավման և նրա պլանավորման ժողովրդատնտեսական կարևորությունից, գործիմաց տնտեսավարները բազմաթիվ առաջարկություններ են արել արտադրության ղեկավարման տնտեսական և վարչական մեթոդների կատարելագործման, անհրաժեշտ ցուցանիշների մշակման և կիրառման մասին, որոնք ռեկլամում են թողարկվող արտադրանքի որակը։ Դրա հետ մեկտեղ առաջարկվում են նախապես մշակված և գիտականորեն հիմնավորված նորմատիվային ցուցանիշներ։ Այս առաջարկությունների հեղինակները հաշվում են, որ եթե տեխնիկական մակարդակի բարձրացման և արտադրանքի որակի բարելավման ցուցանիշները մտցվեն պլաններում, ապա արտադրանքի որակի բարելավմանը կտրվի պետական նշանակություն։

Ինչպես հայտնի է, տնտեսական խրախուսումը տարերային պրոցես չէ։ Այն սոցիալիստական հասարակության մեջ որոշակիորեն կազմակերպված հարաբերությունների սիստեմ է, որի նպատակն է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումն ու նրա պլանաչափ զարգացումը։

Արտադրանքի որակի բարելավման տնտեսական և նյութական խրախուսման սիստեմը պահանջում է զուգակցել ինչպես կոլեկտիվի, այնպես էլ նրա յուրաքանչյուր անդամի շահագրգռվածությունը։ Դա նպաստում է բարձրացնելու անմիջապես կատարողների աշխատանքի որակը, խստորեն պահպանելու պետական համապատասխան ստանդարտների, տեխնիկական պայմանների և այլ նորմատիվային փաստաթղթերի պահանջները, սիստեմատիկաբար բարելավելու պատրաստվող արտադրանքի որակը, նվազագույնի հասցնելու խոտանվող արտադրանքի չափը և ստացվող բողոքագրերը։

Մեր կատարած ուսումնասիրությունները վկայում են, որ մեքենաշինության մեջ պլանավորվող հիմնական ցուցանիշների սիստեմում արտադրանքի իրացման պլանի կատարումը, չնայած դրա հետ կապված որոշակի դժվարություններին, մեծ չափով խթանում է ձեռնարկությունների աշխատանքների բարելավմանը, թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը, ինչպես նաև տնտեսական կապերի կատարելագործմանը։

Հայտնի է, որ Սովետական Միությունում 1946—1959 թ. պարգևատրումներն իրականացվել են արտադրապլանների կատարման և գերակատարման համար։ Իր գոյության սկզբնական շրջանում այս սիստեմն իր դրական դերը խաղալուց հետո, վերջին տարիներին իրեն չէր արդարացնում, որը և պատճառ դարձավ նոր տիպային կանոնադրության մշակմանը. այն գործողության մեջ դրվեց 1959 թվականին, որի հիման վրա պարգևատրումները կատարվում էին հիմնականում ինքնարժեքի իջեցման, արտադրանքի քանակի, ինչպես նաև որակի բարելավման համար։ Բանվորները, ինչպես գործավարձային, այնպես էլ ժամանակավարձային, պարգևատրվում էին քանակական ցուցանիշների կատարման համար, իսկ արտադրամասերի և ընդհանուր գործարանային ինժեներա-տեխնիկական անձնակազմն ու ծառայողները՝ որակական այնպիսի ցուցանիշների համար, ինչպիսին ինքնարժեքն էր։

Պարգևատրման այս սիստեմի հիմնական թերությունը տարբեր ցուցանիշների բազմազանությունն էր, որոնց կատարումը շատ դժվար էր և ձեռնարկությունները զրկվում էին պարգևից։ Դա կորցնում էր աշխատողների հավատը պարգևի նկատմամբ, որի հետևանքով նսեմանում էր վերջինիս խթանող դերը։

Տիպային կանոնադրության մյուս թերություններից էր նաև այն, որ պարգևատրումները վճարվում էին աշխատավարձի ֆոնդի տնտեսման հաշվին։ Լինում էին շատ դեպքեր, երբ ձեռնարկությունները ապահովում էին պարգևատրման պահանջները, բայց աշխատավարձի ֆոնդի տնտեսում չունենալու պատճառով զրկվում էին դրանից։ Իսկ աշխատավարձի ֆոնդի տնտեսման հա-

մար ձեռնարկությունները դիմում էին համախառն արտադրանքի ծավալի ավելացմանը, քանի որ աշխատավարձի ֆոնդը վերահաշվարկվում էր այս ցուցանիշով։ Ինչպես գիտենք, համախառն արտադրանքի ավելացումը հաճախ կատարվում էր թողարկվող արտադրանքի որակի վատացման հաշվին։ Նշանակում է, պարգևատրման այս կարգը մի շարք այլ թերություններ ունենալուց բացի, անհրաժեշտ չափով չէր նպաստում նաև թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը։ Հիշյալ թերությունների վերացման նպատակով ՍՍՀՄ Մինիստրների սովետի աշխատանքի և աշխատավարձի պետական կոմիտեն և ՀԱՄԿԽ-ն 1965 թվականի ապրիլին հաստատեցին նոր տիպային կանոնադրություն՝ արդյունաբերական ձեռնարկություններում պարգևատրման մասին։ Այս կանոնադրությամբ որոշակի շտկումներ կատարվեցին հատկապես պարգևատրման տարբերում։ Նոր կանոնադրությամբ պարգևատրման հիմնական ցուցանիշ դարձավ իրացվող արտադրանքի ծավալը՝ շահույթի պարտադիր ապահովմամբ կամ շահութաբերության պլանի կատարման պայմանով։ Այսպիսով, հետևաբար այստեղ թե՛ պարգևատրման ցուցանիշը և թե պայմանը նպաստում են արտադրանքի որակի բարելավմանը։ Պարգևատրումների նոր կարգում նկատելի է նաև պարգևների չափերի զգալի բարձրացում։ Վերջապես փոխվեց նաև պարգևատրման աղբյուրը։ Շահույթի հաշվին նախատեսվում է ստեղծել նյութական խրախուսման ֆոնդ, որից և վճարվում է պարգևը։ Պարգևատրման ցուցանիշների շարքում կան նաև սահմանված ասորտիմենտը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի որակի բարելավումը։ Գործավարձային և ժամավարձային բանվորները պարգևի մի մասը ստանում են խրախուսման ֆոնդից, ընդ որում բանվորների խրախուսման հիմնական պայմաններից մեկը թողարկվող արտադրանքի որակի բարելավումն է։ Այսպիսով, պարգևատրման աղբյուրը աշխատավարձի ֆոնդից շահույթով փոխարինելը ոչ միայն աշխատողների մոտ հավատ է ստեղծում պարգևի ռեալության նկատմամբ, այլև միասնական շահագրգռվածություն (բոլոր կատեգորիաների աշխատողների մոտ) ձեռնարկության ընդհանուր գործունեության համար։

Արդյունաբերական ձեռնարկությունների գործունեության գնահատման ցուցանիշների, մասնավորապես թողարկվող արտադրանքի որակի բարելավման համար կատարվող պարգևատրումների աղբյուրների վերաբերյալ հարցերը վերջին տարիներին մեծ հետաքրքրություն են առաջացրել տնտեսագիտական գրականության մեջ։ Որոշ տնտեսագետներ ու տնտեսական բնագավառի աշխատողներ առաջարկում են արտադրանքի որակի բարելավման համար ստեղծել խրախուսման հատուկ ֆոնդ (տե՛ս «Экономическая газета» 1964, № 18 «Известия», 14 հունվարի, 1965)։ Նրանք, թեև տարբեր ձևով, այնուամենայնիվ, արտահայտում են այն ռացիոնալ միտքը, որ թողարկվող արտադրանքի որակի բարելավման համար աշխատողների նյութական խրախուսման աղբյուրը կարող է և պետք է լինի արտադրանքի որակի բարձրացումից ստացվող տնտեսական արդյունքը։

Այս իմաստով խոշոր նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի այն որոշումը, որտեղ նախատեսված է նյութական խրախուսման ֆոնդին լրացուցիչ մասհանում շահույթի այն մասից, որն ստացվել է բարձրորակ արտադրանքի համար գների հավելման հաշվին, ինչպես նաև ժողովրդական սպառման նոր և բարելավված որակի արտադրանքի իրացումից ստացված շահույթի մի մասը։ Այս հանգամանքից ճիշտ օգտվելու համար կարևոր նշանակություն ունեն գնագոյացման պրոբլեմները և արտադրանքի որակի բարելավումից ստացված ժողովրդատնտեսական արդյունավետության հաշվարկման հարցերը։

Արտադրանքի որակի բարելավման խրախուսումը ուղղակիորեն կապվում է գնագոյացման պրոբլեմի հետ։ Այս պրոբլեմը տնտեսավարման բարդ և դժվարին խնդիրն է։ Մեր կարծիքով, գնի մեջ պետք է ո՛չ միայն հաշվի առնել հասարակական անհրաժեշտ աշխատանքային, այլև միմյանց փոխարինող արտադրանքների համար աշխատանքի անհատական ծախսերը, թեկուզ ժամա-



նակավորապես։ Գինը պետք է արտացոլի նոր արտադրանքի ժողովրդատնտեսական արդյունավետությունը, նոր տեխնիկայի տնտեսական նպատակահարմարությունը՝ հների համեմատությամբ, ինչպես մեքենայի արտադրողի այնպես էլ նրա սպառողի համար։

Հեղինակների տարբեր կարծիքների և պրակտիկայի վերլուծությունը վկայում է, որ, առաջին հերթին, անհրաժեշտ է, որպեսզի արտադրող ձեռնարկությունն իր կատարած լրացուցիչ ծախսերի համար ստանա լրիվ փոխհատուցում կապված արտադրանքի որակի բարձրացման հետ։ Դրանց հատուցման աղբյուրը պետք է լինի սպառողների ստացած արդյունքը։ Բացի դա, ձեռնարկությունը պետք է ունենա նաև լրացուցիչ շահույթ (արտադրանքի որակի բարձրացումից) նյութական խրախուսման համար։ Վերջապես, սպառողը նոր բարելավված որակի մեքենաների կիրառումից պետք է ստանա այնպիսի արդյունք, որը հատուցի կատարված լրացուցիչ ծախսերը և ապահովի նաև լրացուցիչ շահույթ սպառողի համար։

Արտադրանքի որակի բարելավումից ստացած լրացուցիչ շահույթի բաշխման հարցերի շուրջը (արտադրողների և սպառողների միջև) գոյություն ունեն տարբեր կարծիքներ։ Այսպես, Ա. Եվդոկիմենկոն և Վ. Ֆրոլովն այն կարծիքն են հայտնում, որ արտադրանքի որակի բարելավումից ստացված արդյունքը պետք է հավասարապես բաժանել դրանց արտադրող ձեռնարկությունների և այդ արտադրանքն սպառողների միջև (տե՛ս «Экономическая газета», 1965, № 5, стр. 5—6), որը, ըստ իս, արտադրանքի որակի հետագա բարելավման համար նպատակահարմար չէ։

Մեր կարծիքով, արտադրանքի որակի բարձրացումից ստացված ժողովրդա-տնտեսական արդյունքը բաշխելիս պետք է առաջնությունը տալ արտադրող ձեռնարկությանը, քանի որ, առաջին հերթին, դրան է պատկանում կամ դրանից է կախված բարձրորակ արտադրանքի թողարկման հարցերի լուծումը։ Այս խնդիրը կապվում է նաև նախագծող-կոնստրուկտորական կազմակերպության հետ, որտեղ կարևոր դեր ունի նոր մեքենաների նախագծումը և նախագծողների նյութական շահագրգռվածությունը։ Մեր կարծիքով, այս հարցերը պետք է դրվեն գնագոյացման հիմքում, հաշվի առնելով արտադրանքի որակական կողմը։

1967 թվականի հուլիսի 1-ից գործող նոր մեծածախ գներում լրիվ հաշվի չեն առնված այս պահանջները։ Պարզ է, որ արտադրանքի որակի մակարդակի փոփոխության հետ կապված գներում հնարավոր ավելացում (պակասեցում) հնարավոր է այն դեպքում, երբ գործող նորմատիվային փաստաթղթերում նախատեսվում են դրա որակի օբյեկտիվ ցուցանիշները, որոնք պայմաններ են ապահովում կայուն գների համար։

Օրինակ, Ա. Զավյալկովն առաջարկում է շատ հարմար և պարզ բանաձև նոր արտադրանքի գների որոշման համար (տե՛ս А. Завьялков, Ценообразование на промышленную продукцию, Минск, 1967):

Գպ=Գվս—O(Գվս—Գսս), որտեղ

Գպ—նոր արտադրանքի պլանային գինն է,

Գվս—նոր արտադրանքի գնի վերին սահմանն է,

Գսս—պլանային գների ստորին սահմանն է։

O—համամասնության որոշման գործակիցը, որի մեջ գների տարբերությունը (Գվս) և ստորին (Գսս) սահմաններում բաշխվում են արտադրանքի արտադրողների և սպառողների միջև։

O-ի մեծությունը տարբեր արտադրանքների համար տարբեր է, սակայն դրա որոշման ժամանակ, ինչպես արդեն նշել ենք, պետք է ելնել այն բանից, որ արտադրանքի որակի բարձրացումից ստացված արդյունքի բաժինը, որպես կանոն, մեքենաների արտադրողի համար պետք է մեծ լինի։

Գնի մեջ արտադրանքի որակի արտացոլման հարցն ուսումնասիրելիս տնտեսագետներին, առաջին հերթին, հետաքրքրում են ո՛չ թե որակը բնութագրող տեխնիկական պարամետրերը, այլ այդ պարամետրերի փոփոխման շնորհիվ տնտեսված հասարակական աշխատանքը, այսինքն՝ որակի բարձրացման

# Գիտության աշխարհում

## ԱՐԴԻ ՍՐՏԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

Զ. Լ. ԴՈԼԱԲՋՅԱՆ

Բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Սիրտը մարդու փոքր օրգաններից է. ընդամենը 280 գրամ է կշռում: Այնինչ՝ միջին ծանրություն ունեցող մարդու յուրաքանչյուր կիլոգրամին ընկնում է չորս գրամ սրտային հյուսվածք:*

*Բայց սիրտը ահռելի աշխատանք է կատարում: Եթե պատկերավոր արտահայտվենք, մեկ օրվա ընթացքում բանում է այնքան, որ անհրաժեշտ է 29 տոննա ծանրությունը մեկ մետր բարձրացնելու համար: Մարդու կյանքի միջին տևողության 70 տարիների ընթացքում այն կծկվում է 3 միլիարդ անգամ, ամեն անգամ դուրս մղելով 60 գրամ արյուն:*

*Այս է մեր ներածականը: Առողջ սիրտը կարիք չունի ավելորդ բնութագրման: Այն քաջ հայտնի է ամենքին: Ավելի շատ հարկ է խոսել հիվանդ սրտի մասին: XX դարի մարդը փոխել է ամեն ինչ: Նա փոխել է նաև հիվանդությունների կազմն ու պատկերը: Այսօր հաշմանդամության և մահացության հիմնական պատճառները սրտային հիվանդություններն են: Մեր մոլորակի վրա յուրաքանչյուր 4 րոպեն մեկ մարդ է մեռնում սրտային հիվանդությունից: Ամերիկայի Միացյալ Նահանգներում տարեկան 600 հազար մարդ դառնում է միայն սրտամկանի ինֆարկտի զոհ: Յուրաքանչյուր 3 ֆրանսիացուց երկուսը վախճանվում է սրտային այս կամ այն հիվանդությունից, այսինքն՝ 2 անգամ ավելի, քան քաղցկեղից: 1969 թվականին Սովետական Միությունում 100 հազար մարդուց 374-ը մեռել է սրտային հիվանդությունից և կենտրոնական նյարդային համակարգի անոթային ախտահարումներից:*

*Կարելի է այս թվերը շարունակել, ավելացնելով, որ սրտային հիվանդությունները այլևս միայն տարեցներին չեն ախտահարում: Վերջին 10 տարիների ընթացքում 5—15 տոկոսով ավելացել է մինչև 31 տարեկան տղամարդկանց մահացությունը սրտամկանի ինֆարկտից: Այդ նույն շրջանում, եթե 45—64 տարեկան անհատների մոտ սրտային հիվանդություններից մահացությունն ավելացել է 16—39 տոկոսով, ապա 35—44 տարեկանների մոտ հասել է մինչև 60 տոկոսի:*



*Եվ այսօր մարդկության առաջ մի նոր դժվարին խնդիր է ծառացել: Սուր վարակիչ շատ հիվանդություններ վերացել են, բայց դրանց, ասես, փոխարինել են սրտային հիվանդությունները: Սա անհանգստացուցիչ կարևորագույն հարց է համայն մարդկության համար: Սրտային հիվանդությունների պատճառներն արմատներ ունեն XX դարի մարդու ապրելակերպի, աշխատանքի, հանգստի, սննդի, բնական շրջապատի, մարդկային փոխհարաբերությունների ոլորտներում: Այստեղ սոցիալական պատճառների մի ամբողջ կծիկ կա, որի շատ օղակներ արդեն հայտնի են գիտությանը:*

*Կյանքը նոր խնդիր թելադրեց բժշկագիտությանը— կանխել և բուժել սրտային հիվանդությունները: Ծագեց նոր գիտություն— սրտաբանությունը— համադրական մի գիտություն, ուր պարփակված են բժշկագիտության գրեթե բոլոր բնագավառները— ներքին հիվանդություններ, վիրաբուժություն, բնախոսություն, կենսաքիմիա, ռենտգենաբանություն և այլն: Այս գիտության մեջ լայնորեն ներդրվել են ժամանակակից տեխնիկայի, քիմիայի, ֆիզիկայի, կիբեռնետիկայի նվաճումները: Բժիշկն իր մտածողությունը պետք է համադրի թվերի, կորագծերի, պատկերների հետ: Այստեղ անհրաժեշտ են աշխատանքի խիստ կազմակերպվածություն, հարուստ սարքավորված գիտական փորձասենյակներ, նյութական ու տեխնիկական լայն հնարավորություններ:*

*Սրտաբանությունը մի գիտություն է, որը հնարավոր է զարգացնել միայն ունենալով ժամանակակից տեխնիկայով կառուցված գիտա-հետազոտական խոշոր կենտրոններ: Այդպիսի հաստատություններ են հիմնվել շատ երկրներում: Ամերիկայի Միացյալ Նահանգներում գործում են մի շարք գիտա-հետազոտական ինստիտուտներ, որոնց գլխավորում է Մերիլենդ քաղաքի սրտի ազգային ինստիտուտը: Համաշխարհային ճանաչում են գտել Անգլիայի, Ֆրանսիայի, Ռումինիայի, Իտալիայի, ԳԴՀ-ի, ԳՖՀ-ի, Չեխոսլովակիայի, Մեքսիկայի մի շարք սրտաբանական կենտրոններ: Սովետական Միությունում սրտաբանական խոշոր կենտրոններ են գործում Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Թբիլիսիում, Կաունասում և այլ քաղաքներում: Հպարտությամբ պետք է նշել, որ դրանց շարքում իր արժանի տեղն ունի Երևանի սրտաբանության ինստիտուտը— գիտա-հետազոտական մեծ կենտրոն՝ իր կլինիկական և փորձարարական բազմաթիվ բաժանմունքներով, տասնմեկհարկանի նորակերտ հոյակապ շենքով: Այստեղ գիտական նուրբ հետազոտություններին զուգահեռ ծավալվում է գործնական լայն աշխատանք: Սրտային հիվանդներն ինստիտուտի ութ կլինիկական բաժանմունքներում ստանում են թերապևտիկ և վիրահատական բարձրորակ բժշկական օգնություն:*

*Ժամանակակից սրտաբանությունն ունի խոշոր նվաճումներ: Վերջին տասնամյակներում այնպես բուռն է զարգացել այն, որ դարձել է բժշկագիտության գլխավոր և առաջատար բնագավառը: Սրտաբանության նվաճումներն ընթացել են հիվանդությունների ախտորոշման կատարելագործման և դրանց բուժման արդյունավետության բարձրացման ուղիով:*

*Սրտային հիվանդությունների ախտորոշման մեթոդներն առավելագույնս կատարելագործվել են: Սրտի յուրաքանչյուր կծկումից առաջացած էլեկտրական և մեխանիկական բարդ երևույթները ներկայումս մատչելի են ուսումնասիրման և բազմակողմանի վերլուծման համար: Ռենտգենաբանական նորագույն մեթոդների շնորհիվ հնարավոր է սրտի աշխատանքի համարյա բոլոր կողմերի մասին պարզ պատկերացում ստանալ: Բավական է նշել, որ արյան հոսքի*

մեջ ներմուծելով «կոնտրաստային» տարբեր նյութեր, մասնագետը կարողանում է հեռուստացույցի էկրանի վրա հետևել սրտի աշխատանքին և նկարահանել այն ժապավենի վրա: Սրտի խոռոչներում և մայր անոթներում արյան շրջանառության և գազափոխանակության ցուցանիշները հնարավոր է գրանցել և համադրել սրտի քննության այլ տվյալների հետ: Կենսաքիմիական, կենսաֆիզիկական, ռադիոիզոտոպային մեթոդները նորանոր հնարավորություններ են ընձեռել՝ որոշելու այս կամ այն հիվանդագին վիճակը: Հնարավոր է դարձել նույնիսկ մարդու սրտամկանի հյուսվածքի առանձին հատվածներ ենթարկել մանրակրկիտ հյուսվածաբանական հետազոտության:

Հիշյալ նվաճումներին զուգահեռ կատարելագործվել են և բուժական մեթոդները:

Այսօր հպարտությամբ կարելի է նշել, որ արդի սրտաբանության նվաճումները չափազանց մեծ են հատկապես գործնական առողջապահության համար ամենակարևոր այս բնագավառում: Ավելի հիմնավոր լինելու համար կարելի է անդրադառնալ մի քանի հարցերի:

1. Զարկերակային արյան ճնշման բարձրացումը ամենատարածված հիվանդություններից է: Ընդամենը 20—30 տարի առաջ այն համարվում էր շատ լուրջ ու ծանր հիվանդություն, որն ի վերջո հանգեցնում էր ճակատագրական բարդությունների: Ներկայումս բոլորովին փոխվել է պատկերացումն այդ հիվանդության մասին: Նախ՝ պարզվել է, որ կան հիպերտոնիայի տարբեր տեսակներ և դրանց դիֆերենցումը հնարավորություն է ընձեռում կիրառելու համապատասխան ճիշտ բուժամիջոց: Ստեղծվել է դեղորայքի հարուստ զինանոց՝ զարկերակային արյան ճնշումը ցածր պահելու համար: Մեր առօրյա աշխատանքում այսօր մենք առավել հաճախ ենք ականատես լինում, որ ժամանակին անցկացված լիարժեք ու հետևողական բուժման շնորհիվ հիվանդը լիովին առողջանում է:

2. Ժողովուրդը լավ իրազեկ է սրտամկանի ինֆարկտին: Սա ծանր հիվանդություն է, որը հարուցում է լուրջ բարդություններ: Այստեղ դեռևս կան շատ խրթին, չլուծված հարցեր, բայց այդ հիվանդության բուժման ոլորտում ևս հաջողություններն ակնհայտ են: Հիվանդների շտապ տեղափոխումը մասնագիտացված ինֆարկտային բաժանմունքներ, բուժման կազմակերպումը «ինտենսիվ թերապիայի» հիվանդասենյակներում, անընդմեջ հսկողությունը, հիվանդագին մեխանիզմների պարզաբանումը և համապատասխան դեղորայքի գործադրումը, տեխնիկայի նվաճումների կիրառումը զգալիորեն բարձրացրել են սրտամկանի ինֆարկտի բուժման արդյունավետությունը: Այս խնդրում չափազանց կարևոր նշանակություն ունի առողջապահական գործնական օղակների համատեղ և ճիշտ զուգորդված գործունեությունը՝ սկսած տեղամասային բժշկից, վերջացրած մասնագիտացված շտապ օգնության ծառայություններով և հիվանդանոցի հատուկ ինֆարկտային բաժանմունքով: Նման կազմակերպվածությունն ապահովում է հիվանդների մեծամասնության լիարժեք բուժումը:

3. Ռևմատիզմը, ամենից առաջ, սրտային հիվանդություն է, որը հարուցում է լուրջ բարդություններ: Խոսքն «ակտիվ» ռևմատիզմի մասին է, որն ախտահարում է սրտի տարբեր մասերը և հանգեցնում արատների զարգացման: Ժամանակակից սրտաբանության նվաճումներն այս ասպարեզում չափազանց մեծ են ու, պատահական չէ, որ հիվանդությունն աստիճանաբար



պակասում է և ավելի սակավ է հասցնում սրտային բարդությունների: Հակառևմատիկ պայքարի գործնական օղակների լայն ցանցի ստեղծումը և բուժման նորագույն մեթոդների կիրառումը որոշիչ դեր խաղացին այս կարևորագույն նվաճման խնդրում: Հպարտությամբ պետք է նշել, որ բժշկագիտությունը կարողացավ հիմնականում պարզաբանել այդ հիվանդության զարգացման մեխանիզմը, մշակել համապատասխան բուժամիջոցներ և վերակազմավորել գործնական առողջապահության ցանցը: Մոտակա տարիներում այդ հիվանդությունն այլևս չի լինի մանուկներին ու պատանիներին սպառնացող այն աղետը, որը մատաղ տարիքում նրանց հաճախ հաշմանդամ է դարձնում:

4. Սրտային վիրաբուժությունը սրտաբանության ծանր հրետանին է, որի հաջողությունները չափազանց մեծ են և ակնառու: Սիրտը, որը վիրաբույժի նշտարի համար օրգանիզմի վերջին «կույս» մասն էր, այսօր վիրաբուժական բարձրագույն տեխնիկայի բեմահարթակ է դարձել: Սրտային վիրաբուժության շնորհիվ հնարավոր է դարձել բուժել բազմաթիվ սրտային հիվանդություններ— բնածին և ձեռքբերովի արատները, սրտամկանի ինֆարկտից առաջացած բարդությունները, պսակային շրջանառության ախտաբանության առանձին տեսակները, սրտի աշխատանքի ռիթմի խանգարումները: Սրտային վիրաբուժության մեծ նվաճումն էր սրտի արտապատվաստումը: Այս խնդրում դեռևս կան բազում և բազմապիսի խրթին, չլուծված հարցեր, բայց կասկածից վեր է, որ 1967 թվականի դեկտեմբերի 2-ին Քրիստիան Բառնարդը նոր գլուխ բացեց գիտության մեջ՝ իրագործելով մարդու սրտի առաջին արտապատվաստումը: Սրտի վիրաբուժությունը մի վիթխարի քայլ էր, որն զգալի չափով նպաստեց սրտաբանության և, ընդհանրապես, բժշկագիտության առաջընթացին: Սկսվեց բժշկության հազարամյա պատմության նոր ոսկեդարը:

Հիրավի, շատ մեծ են արդի սրտաբանության նվաճումները: Դրանք ոգեշնչում են մեզ, բայց, միաժամանակ, բազմաթիվ նոր խնդիրներ առաջադրում: Այստեղ ես ուզում եմ մի անգամ ևս շեշտել, որ սրտանոթային հիվանդությունները սոսկ բժշկական, բժշկին կամ բժշկական հասարակայնությանը չեն վերաբերում, այլ ժողովրդին, երկրին: Սա նույնքան կարևոր, պետական խնդիր է, որքան երկրի զարգացման մյուս բոլոր հանգուցային խնդիրները: Համոզված ենք, որ եթե մեր հասարակագետները համակողմանի վերլուծեն այս հարցը, համամիտ կլինեն մեզ հետ, որ սրտանոթային հիվանդություններն ահավոր վնաս են հասցնում երկրի ժողովրդական տնտեսությանը, զգալի չափով կասեցնում են ժողովրդի զարգացումը, անդրադառնում բարոյական և նյութական ցուցանիշների վրա:

Մենք լավատես ենք: Մեր լավատեսությունը հիմնավորված է: Որպես սրտաբանության կազմավորման ու զարգացման բարդ, դժվարին գործի ականատես ու մասնակից, հավատում ենք, որ գիտությունն իր փայլուն հաղթանակը կտանի մարդու ոխերիմ թշնամու դեմ: Մենք հավատում ենք, որ կգա այն ժամանակը, երբ մարդու սիրտն այլևս չի լինի նրա դժբախտության պատճառը, այլ թևեր կտա, կենսատու հույզ ու կորով կպարգևի նրան:



# ԱՇԽԱՐՀԶԳԱՑՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐՈՒՄ

Հնագույն ժամանակներից ի վեր ժողովուրդների մտավոր մշակույթի ամենատարածված ձևերից մեկը եղել է բանահյուսությունը: Հազարամյակներ շարունակ բանավոր ստեղծագործությունները, ուր ժողովուրդն արտացոլել է իր պատկերացումները հասարակական կյանքի զարգացման վերաբերյալ, գալիք սերունդների համար հանդիսացել են յուրօրինակ ավանդներ: Ի տարբերություն անհատ հեղինակների ստեղծած մտավոր մշակույթի, որտեղ հասարակական կյանքի զարգացման օրինաչափությունների մասին ընդհանրացումներն արվում են՝ հիմք ընդունելով պրակտիկ փորձի համեմատաբար նեղ շրջանակներ, ժողովրդական բանահյուսության մեջ դրանք կատարվում են ելնելով ժողովրդի գոյատևման սոցիալ-պատմական ողջ կենսափորձից: «Տասնյակ միլիոնավոր ստեղծագործողների խելքն,— գրում է Լենինը,— ստեղծում է ինչ-որ անչափելիորեն ավելի բարձր բան, քան ամենամեծ ու հանճարեղ նախատեսումը» (Երկեր, հ. 26, Երևան, 1951, էջ 581): Լենինյան այս նշանավոր դրույթը հավասարապես վերաբերում է ժողովրդական ստեղծագործությունների՝ բոլոր ժանրերում արտացոլված մտահղացումներին: Հենց այդ նկատի ուներ աշխատավորական մասսաների ազատատենչ գաղափարների հանճարեղ ջատագովն ու նրանց մեծ բարեկամը, երբ սովետական իշխանության արշալույսին, ծանոթանալով ռուսական ժողովրդական հեքիաթներին, ցավում էր, որ դեռևս չկա դրանք «սոցիալ-քաղաքական տեսանկյունից դիտելու ձևը կամ ցանկությունը» (Вл. Бонч-Бруевич, Ленин о поэзии. На литературном посту, 1931, № 4, стр. 4):

Սոցիալ-քաղաքական տեսանկյունից դիտելով հայ ժողովրդական հեքիաթները , գտնում ենք ժողովրդի հազարամյակների կենսափորձով ու հանճարով ստեղծված ճշմարտացի մտքերի մի այնպիսի գանձարան, ուր անսպառ նյութ կա հասարակական կյանքի զարգացման բոլոր կողմերի ու երևույթների ուսումնասիրման համար:

Լինելով օբյեկտիվ իրականության յուրատիպ արտացոլում, հայ ժողովրդական հեքիաթները բացահայտում են աշխատավոր մասսաների կենսափիլիսոփայությունը: Ինչպես ժողովրդական ստեղծագործությունների բոլոր ժանրերի, նույնպես և հեքիաթների գաղափարական բովանդակության հիմքը ժողովրդական լայն զանգվածների տարերային-մատերիալիստական աշխարհայացքն է: Հասարակական կյանքի զարգացմանը, մարդու սոցիալական վիճակին վերաբերող բոլոր հարցերին ժողովուրդը մոտենում է նյութական պայմանների տեսանկյունից: Երբ պատմական անցյալում կրոնական սխոլաստիկան քարոզում էր, թե արարիչն է կառուցել աշխարհը, ստեղծել մարդուն և սեփական հայեցողությամբ կառավարում ու տնօրինում է նրանց բախտը, հայ աշխատավորը հենվելով իր հազարամյակների փորձի վրա, գտնում էր, որ մարդկային կյանքի կերտողը ինքը՝ մարդն է: *Բանն օր աստծուն մնա* հեքիաթում գյուղացու բարձած սայլը խրվում է ցեխի մեջ: Հավատացյալ հոտաղը, փոխանակ գործնական միջոցների դիմելու, սայլը թողնում է ցեխի մեջ և սկսում աղոթել: Սակայն այդ միջոցին ինքնահոսի թողնված գոմեշները շրջում են սայլը: «Սելվորը կը կտրի,— պատմում է ասացողը,— քանիմ խարզան կը քաշե հոտղուն, կըսե.— Ախմախ, բանն օր աստծուն մնա, մեր սել յըսօր լե, վաղ լե մըջ տըլին է ու մըջ տըլին» (*Հայ ժողովրդական հեքիաթներ*, հ. 10, ՀՍՍՀ, ԳԱ հրատ., Երևան, 1967, էջ 387):

Այո՛, մարդու կյանքը հավիտյան խրված կըմնար նախապատմական տիղմի մեջ, երբ նա չապավիներ իր սեփական ստեղծագործ ուժերին: Դրա համար էլ հայ աշխատավոր ժողովուրդն իր հեքիաթներում «քանիմ խարզան կը քաշե» բոլոր նրանց մեջքին, ովքեր ի վիճակի չեն հասկանալու կենսափորձով հաստատված այս ճշմարտությունը: Սակայն ժողովուրդը չի



բավարարվում միայն խարազանելով: Նա իր բանավոր ստեղծագործություններում բացահայտում է նման գաղափարների սոցիալական արմատները: Ժողովուրդը շատ լավ է հասկացել, որ կրոնա-իդեալիստական հայացքները հետևանք են բնության ուժերի նկատմամբ մարդու երբեմնի անզորության: Հետևաբար, երբ մարդը կարողանա իշխել բնության վրա, զարգացնել արտադրաուժերը, հնարավորություն ունենա լավ կազմակերպելու կենսամիջոցների արտադրությունը, ապա կազատվի նաև նման հայացքներից: Այս միտքը շատ գեղեցիկ է արտահայտված *Գործն օր աղեկ էնիս* հեքիաթում, որտեղ աղքատ ռանչպարը հաճախ է դիմում սըրբերին, բայց հայտնվում է հեքիաթների ավանդական ծերունին՝ ժողովրդի դարավոր կենսափորձի խորհրդանիշը, ու խրատում է նրան. «Գործն օր աղեկ էնիս՝ ոչ սըրբեր գիկան քու միտ, ոչ ձեռ կըբռալես ընդոց փեշ» (նույն տեղը, էջ 527): Չափազանց դիպուկ է ասված— մարդու և հասարակական կյանքի ընթացքը, ամենից առաջ, պայմանավորված է նրանով, թե որքանով «աղեկ» է կազմակերպվում «գործը»: Իսկ այդ «գործն» այլ բան չէ, քան նյութական բարիքների արտադրություն, որը մարքսիստական փիլիսոփայությունը համարում է հասարակական կյանքի հիմքը: Այս հարցի մատերիալիստական ըմբռնումն առավել ցայտուն է արտացոլված, հատկապես աշխատանքը փառաբանող հայ ժողովրդական հեքիաթներում: Այստեղ ժողովուրդն ուղղակի այն միտքն է հայտնում, որ աշխատանքը մարդու բնատուր հատկությունը չէ, այն ստեղծվել ու զարգացել է նյութական բարիքների արտադրապրոցեսում: Ուստի, ժողովրդական հեքիաթներում ծաղրվում է կրոնա-իդեալիստական այն տեսակետը, թե աշխատանքը նախախնամության կողմից է «շնորհված» մարդուն:

Ժողովուրդն իր հեքիաթներում մատերիալիստական տեսանկյունից է մոտենում նույնիսկ աստծու հարցին: Այնտեղ հիշատակվող կամ վկայակոչվող աստվածը բնավ կրոնի աստվածը չէ, որ գերբնական ուժով հրաշքներ է գործում: Աշխատավոր ժողովրդի պատկերացմամբ, աստված ժողովրդի կամքի խորհրդանիշն է, որը հեքիաթներում հանդես է գալիս իբրև «Զայն բազմաց՝ ձայն աստծո» իմաստով: Այս միտքը հաստատող բազում օրինակներից իր խորությամբ ու պարզությամբ աչքի է ընկնում *Աստծու երես դո՞րի* հեքիաթը. դաժան թագավորը մարդկանց գլխատում է այն բանի համար, որ նրանք չեն կարողանում պատասխանել իր այն հարցին, թե՝ «աստծու երես դո՞ր ի» և «աստված ինչ կմտածի»: Բայց ահա, ինչպես միշտ, այստեղ ևս հանդես է գալիս աշխատավոր ժողովըրդի ներկայացուցիչը ու պատասխանում է թագավորի հարցերին՝ փրկելով մարդկանց: Առաջին հարցին նա պատասխանում է անմիջապես. «Մարդ իր երես դոր անի, աստծու երես դեխ դենի»: Սակայն երկրորդ հարցին մեկեն չի պատասխանում, քանի որ այդ պատասխանով նա պետք է ապացուցեր նաև առաջինի ճշմարտացիությունը: Ուստի, մինչև երկրորդ հարցին անցնելը, նա խորամանկությամբ տիրանում է թագավորի գահին, ապա ասում. «Աստված կմըտածի էն, որ քու թագավորութեն առավ տվեց ձի» (*Հայ ժողովրդական բանահյուսություն*, կազմեց Գր. Գրիգորյան, Հայպետհրատ, Երևան, 1956, էջ 223):

Այսպիսով ժողովրդական հեքիաթներում աստված մտածում է ժողովրդի նման և անում ժողովրդի կամեցածը: Այլ կերպ լինել չէր կարող. չէ՞ որ մարդն է ստեղծել աստծուն: Մաքսիմ Գորկին գրում է, որ աստված աշխատանքի հաջողության գեղարվեստական ընդհանրացումն էր, և աշխատավոր մասսաների «կրոնական» մտածողությունը պետք է չակերտների մեջ վերցնել, որովհետև դա զուտ գեղարվեստական ստեղծագործություն է: Իդեալականացնելով մարդկանց ընդունակությունները և, այսպես, նախազգալով դրանց զարգացման անկասելիությունը, դիցաբանական ստեղծագործությունն իր հիմքով ռեալիստական է: Հնուց իսկ երևակայական ամեն մի թռիչքի մեջ ակներև է դրա դրդապատճառը— մարդու՝ իր աշխատանքը թեթևացնելու ձգտումը: Բնականաբար, այդ ձգտումը ծնվել է ֆիզիկական աշխատանք կատարող մարդու հոգում (տե՛ս Մ. Գորկի *Գրական հրապարակախոսական հոդվածներ*, Երևան, 1949, էջ 277): Այլ խոսքով, մարդուց դուրս աստված չկա, աստված ինքը՝ մարդն է: Այն, ինչ տեղի է ունենում հասարակական կյանքում, արդյունք է նրա անդուլ մաքառումների, ու մարդն այդ մաքառումների արդյունք է և իր բոլոր հատկանիշները ձեռք է բերել գոյատևման համար մղած պայքարում:

*Մշակ տղի* հեքիաթում մշակը և իշխանի աղջիկը սիրում են իրար, սակայն, իշխանը խոստանում է իր աղջկան մշակին տալ դժվար իրագործելի մի պայմանով միայն. «Քու յառաջ պայման կդնիմ,— կըսե իշխանը,— թե կըրցար ջուր հանի վըր բանձր պալին՝ զհող կակըղցուցիր, բար ու պտուղ հասցուցիր, զիմ աղջիկ կիտամ քըզի» (*Հայ ժող. հեքիաթներ*, հ. 10, էջ 168): Հայ ժողովրդի համար ապառաժից կենսամիջոց քամելը համազոր է եղել հեքիաթներում յոթգլխանի դևերից ու վիշապներից անմահական խնձոր կամ ջուր կորզելուն: Իհարկե, տղային հաջողվում է կատարել իշխանի պահանջը, որովհետև հեքիաթներում հաղթանակը միշտ աշխատավորի կողմն է: Բայց դրա մասին չէ, որ պիտի խոսենք. կարևորն այստեղ այլ հարց է: Հեքիաթասացը պատմում է, որ «մշակ տղեն կդառնա կերթա... *կը հնձրվորի*, հիմալ մեքենա մե կը

շինի, օր ներքևի առվից զլուր կառնի մըջ փողըրկին, կզարկե հանե չուրի պալի կատար, կջրե զհողն ու վախտին քաղլու-քաղլու բար ու պտուղ կը հասու» (ընդգծումը մերն է— Հ. Ս.): Հայ ժողովրդական հեքիաթներում արտահայտված աշխատավոր ժողովրդի իմաստուն խոհերից մեկն է այս: Մարդն իր կյանքի պայքարում ո՛չ միայն բարեփոխում է բնությունը, այլև իմաստնանում է. «ներգործելով իրենից դուրս գտնվող բնության վրա,— գրում է Մարքսը,— և այն փոփոխելով, նա միևնույն ժամանակ, փոփոխում է իր սեփական բնությունը» (Կ. Մարքս, *Կապիտալ*, հ. 1, 1954, էջ 188):

Ժողովրդական հեքիաթներում չափազանց ցայտուն գծերով է արտահայտված այն գաղափարը, թե մարդկային գիտակցությունը պայմանավորված է մարդուն շրջապատող իրական աշխարհով՝ կեցությամբ: Ժողովրդական *Հըտ յիրար* հեքիաթում տերտերը ցանկանում է դժոխքի սարսափներով ահաբեկել շատ հայհոյողին, որպեսզի նա վերջ տա դրան: Սակայն վերջինս, լավ իմանալով, որ կյանքի դաժան պայմաններն են իրեն այդպիսին դարձրել, փորձում է տերտերին նույնպես համոզել դրանում: Երբ նա, դիտավորյալ, մի քանի անգամ քահանայի բանջարանոցից գողություն է անում, վերջինս համբերությունից ելած՝ սկսում է բուռն հայհոյել: Հայհոյող մարդն այդ ժամանակ մոտենում է նրան և ասում. «Տեսար ընձի խրատ կիտեր, քու հոգուն լե օր հասավ՝ քուֆր ավիր...» (*Հայ ժող. հեքիաթներ*, հ. 10, էջ 533): Այսպիսով, կյանքի պայմաններն այն ազդակներն են, որոնք կարող են մարդուն դարձնել չար կամ բարի, խելոք կամ հիմար, համբերատար ու ըմբոստ... Դա անհերքելի է. կեցությունն իր կնիքն է դնում գիտակցության բոլոր ձևերի վրա, մարդկանց գիտակցությունը նրանց կեցության արտացոլումն է: Այս միտքը հաստատող բազմաթիվ փաստեր կան հայ ժողովրդական հեքիաթներում:

Ահա, *Դերվիշը գյուղական չար, ամմա կլոխը ելած ար* հեքիաթը: Հենց վերնագիրը հուշում է, որ կյանքի փորձն իմացության աղբյուրն է, դրանով է մարդն իմաստնանում, դա է ճանաչողության ձևավորման ու զարգացման հիմքը: Հեքիաթում բազմամյա փորձ ունեցող դարվիշն ազդարարում է, թե անհրաժեշտ է պարեն կուտակել: Սով է սպասվում: Այդ լուրը հասնում է Վարանդու մելիք Շահնազարին: Մելիքը ձերբակալում է դերվիշին և հանձնում իր երեք օգնականների դատին: Օգնականներից առաջինն առաջարկում է նրան դնել պատի մեջ և շարել, երկրորդը գտնում է, որ պետք է մանր-մանր կտրատել, իսկ երրորդը պահանջում է ստուգել դերվիշի հայտարարության իսկությունը, ապա՝ համապատասխան վճիռ արձակել: Սակայն, ի զարմանս մելիքի, դերվիշը նրա երեք օգնականների տարբեր վճիռներին պատասխանում է միևնույն՝ «ցեղի՜ն մտիկ» բացականչությամբ: Եվ երբ մելիքը ցանկանում է իմանալ դրա պատճառը, դերվիշը պատասխանում է, որ պատճառը շատ հասարակ է: Քո օգնականներից յուրաքանչյուրը, ասում է նա, ինձ դատում էր, ելնելով իր ցեղի սովորություններից. օրինակ, քո առաջին օգնականը պահանջեց, որ ինձ դնեն պատի մեջ, շարեն: Նա ուրիշ վճիռ արձակել չէր կարող, որովհետև «ուրան ումբրումը էտ ա տեսալ» (տե՛ս նույն տեղը, հ. 5, էջ 604), քանի որ նրա ցեղը որմնադիր է եղել: Երկրորդ օգնականդ մսագործի որդի է, ուստի, առաջարկեց՝ ինձ կտոր-կտոր անել, որովհետև «հինչու տեսալ ա, էն ա աշկեն առաջ կալել», իսկ երրորդ օգնականիդ հայրը, ուսումնասեր մարդ է եղել, ամեն ինչ արել է, որ իր «տղեն տասներկու տարի կրթացել ա», ուստի, նա շատ բան է տեսել ու սովորել, դրա համար էլ նրա վճիռը ամենաճիշտն է: Հեքիաթը ևս պարզորոշ ցույց է տալիս, որ մարդկանց հասարակական գիտակցության հիմքը կենսափորձն է: Ուստի, մարդկային գիտակցության արմատները պետք է փնտրել իր ժամանակի հասարակական տնտեսական հարաբերությունների մեջ, քանզի ամեն ոք ապրում է շրջապատված նյութական աշխարհով, հասարակական հարաբերությունների որոշակի պայմաններում և կարող է կյանքի մասին գաղափար կազմել, ելնելով հենց այդ պայմաններից: Չէ՛ որ, ինչպես ժողովուրդն է ասում. նա «ուրան ումբրումը էտ ա տեսալ»: Ուրեմն, նրանից ավելին չպետք է պահանջել: «Իմ տեսակետից ավելի քիչ,— գրում է Մարքսը,— քան ուրիշ որևէ տեսակետից, կարելի է անհատին պատասխանատու համարել այն պայմանների համար, որոնց արդյունքն է մնում նա սոցիալական իմաստով, որքան էլ նա սուբյեկտիվորեն բարձր կանգնած լինի այդ պայմաններից (Կ. Մարքս, *Կապիտալ*, հ. 1, 1954, էջ 8): Նույն բանը կարելի է ասել տարբեր սոցիալական խմբերի ու դասակարգերի, մարդկային առանձին սերունդների, ինչպես նաև ողջ հասարակության վերաբերյալ:

Հայ ժողովրդական հեքիաթներում կան բազում փաստեր, որոնք վկայությունն են այն բանի, որ մարդկային գիտակցությունն իրական աշխարհի և մարդուն շրջապատող ժամանակի հասարակական-տնտեսական պայմանների արդյունքն է: *Օհան ռանչպարի տղի հեքիաթում* պատմվում է, թե ինչպես միևնույն մարդը կյանքի տարբեր պայմաններում հանդես է գալիս տարբեր ձևով: Կյանքի թելադրանքով նա մեկ դառնում է, հարամի, մեկ՝ ազնիվ ու քաջ: Երբ քառասուն հարամիները խիզախ տղայի միջոցով տիրանում են կախարդի թանկարժեք թասին, հարամբաշին ասում է. «Դե, տղեք, մեզ հարամությունը հարամ ա. տանենք էս թասը խուր-



դենք, քանի սաղ ու կենդանի ենք՝ ուտենք, հատնիլ չի: Դե՛, ձիս քաշեք, էրամ խուրդեմ, փողը բերեմ կես անենք, ամեն մարթ իրա փողը վեր ունի, էրթա իրա տունը» (*Հայ ժող. հեքիաթներ*, հ. 1, էջ 138): Ինչպես տեսնում ենք, հարամիների կյանքն այլ հունի մեջ է դրվում, երբ փոխվում է նրանց կյանքի նյութական հիմքը: Մարդիկ հարամի էին դարձել, որովհետև ապրելու այլ հնար չունեին, բայց, երբ հնարը գտան, վերափոխվեցին: Ժողովրդական այս և մի շարք այլ հեքիաթներում բյուրեղացված է աշխատավորական մասսաների այն հանճարեղ միտքը, թե մարդն ժամանակի արգասիք է, նա չի կարող ապրել ու մտածել ժամանակից դուրս:

Փոխվում են իրադարձությունները, փոխվում են մարդկանց կեցությունն ու գիտակցությունը: *Թագավորն, աղքատն ու օձը* հեքիաթում վառ ու արտահայտիչ պատկերված է հասարակական կյանքի զարգացման օրինաչափ այդ պրոցեսը: Հեքիաթում թագավորը երազում տեսնում է, որ երկնքից գայլեր են թափվում: Հարյուր ոսկի է խոստանում երազի իմաստը մեկնողին: Օձն աղքատին սովորեցնում է երազի մեկնությունը պայմանով, որ աղքատն ստացած ոսկու կեսն իրեն տա: Սակայն, երբ աղքատը թագավորից ստանում է ոսկին, նա, ո՛չ միայն կեսը չի տալիս օձին, այլև վճռում է սպանել նրան, որը, իհարկե, չի հաջողվում: Երկրորդ անգամ թագավորը երազ է տեսնում, որ երկնքից աղվեսներ են թափվում: Աղքատը գնում, օձին աղաչում է, որ օգնի իրեն, խոստանում ստացած ոսկին լրիվ օձին տալ, բայց հետո օձին խաբում է՝ թե, իբր, թագավորը ոսկի չի տվել: Թագավորը երրորդ անգամ է երազ տեսնում: Այս անգամ երկընքից գառներ են թափվում: Աղքատը օձի օգնությամբ մեկնում է և այս երազը ու ստացած ողջ ոսկին ցանկանում է օձին տալ: Սակայն օձը հրաժարվում է վերցնելու, ասելով, «Մարդ, յառաջի հեղ օր իմ փայ ոսկին չբերիր, գիլու դավրան էր, դու լե գել էիր դառձի, գիլու պես իմ փայ ոսկին կերար: Վրա երկուսին՝ աղվսու դավրան էր, աղվսու պես զիս խաբեցիր: Մկա գառան դավրան է, դու լե գառ իս դառձի, զիմ փայ բերիր, լե ես ոսկին ինչ կենիմ, տար զեդ ոսկիք՝ զքու իդարեն էրե» (նույն տեղը, հ. 10, էջ 269): Երբ այս հեքիաթի գաղափարը բաղդատում ենք պատմության փաստերի հետ, տեսնում ենք, որ դա դարավոր կյանքի փորձից բխող անհերքելի ճշմարտություն է, որը ժողովուրդն ընդհանրացրել է չափազանց սեղմ ու կուռ:

Ժողովրդական հեքիաթներում պարզ ու որոշակի բացահայտված է նաև գիտակցության դասակարգային բնույթը: Իրենց վաստակով ապրող ազնիվ ու աշխատասեր հերոսներն այլ իդեալներ ու գաղափարներ ունեն, անաշխատ եկամտով ապրող հարուստներն ու իշխանավորները՝ այլ: Բազմաթիվ են այն հեքիաթները, որոնցում պատկերված է, թե ինչպես անաշխատ հարստությունն այլասերում, բարոյապես այլանդակում է մարդուն, իսկ դրան հակառակ, աշխատողի դառը վաստակն ազնվացնում է նրան: Ժողովրդական այս միտքը շատ լավ դրսևորված է *Աղքատ քարտաշ* հեքիաթում, որտեղ պատմվում է, թե ինչպես հրեշտակը, հիացած աղքատ քարտաշի բարեսրտությամբ ու բարեպաշտությամբ, խնդրում է աստծուն՝ հարստություն պարգևել: Սակայն աստված պատասխանում է. «Երբ նրան հարստություն տամ՝ իր հավատքը կուրանա» (նույն տեղը, հ. 3, էջ 508): Եվ, իրոք, աստծու խոսքը (որը, ինչպես վերը տեսանք, ժողովրդի կամքի արտահայտությունն է) ճիշտ է դուրս գալիս: Անաշխատ եկամտով հարստանալով՝ քարտաշը որոշում է դառնալ թագավոր: Եվ իր այդ նպատակն իրականացնելու համար սկսում է չարիքներ գործել:

Մեր կարծիքով, այսքանն էլ բավական է համոզվելու համար, որ հայ ժողովրդական հեքիաթներում, թեև տարերայնորեն, բայց պարզորոշ այն գաղափարն է արտահայտված, որ մարդկանց հասարակական գիտակցությունը նրանց կեցության արգասիքն է:

Սակայն այս ամենը չի նշանակում, որ ժողովրդական հեքիաթներում ժխտվում է գիտակցության հարաբերական ինքնուրույնությունը: Ի հակադրություն գռեհիկ մատերիալիստական այն հայացքի, որ հասարակական կյանքի ընթացքը հանգեցնում է միայն տնտեսական գործոնների և մերժում գիտակցության դերը, աշխատավոր ժողովուրդն իր հեքիաթներում մեծ տեղ է հատկացնում նաև գիտակցության ակտիվ դերին: Այնտեղ ցայտուն ընդգծված է այն միտքը, թե գիտակցությունը, հենվելով հասարակական կեցության իրական փաստերի վրա, վերլուծելով դրանք՝ կարող է ճանաչել հասարակական կյանքի զարգացման օրինաչափությունները և դրանց միջոցով մեծապես ներգործել հասարակական կյանքի վրա, ուղղություն տալ դրա զարգացման ընթացքին: Այս միտքը հեքիաթների գաղափարական բովանդակության առանցքային հարցերից է: Այն արտացոլված է գրեթե բոլոր հեքիաթներում: Ահա, օրինակ, ժողովրդական պայքարի հերոս պստիկ ախպոր կերպարը: Նա միշտ պայքարի է ելնում անզեն. լավագույն դեպքում «ծռտոտ յաբույով» կամ ժանգոտ թրով: Ամեն անգամ, երբ կամենում է չար ուժերի դեմ կռվել, լսում է այն թերահավատ խոսքերը, թե՝ մեծ եղբայրներդ ինչ արին, որ դու ինչ անես... Չնայած այդ ամենին, միշտ և ամենուր նա հաղթում է: Ո՞րն է նրա անպարտելիության աղբյուրը: Ժողովրդական հեքիաթներում այդ հարցի պատասխանը մեկն է. նա ամենից խելոք է: Բացի դրանից, պստիկ ախպոր կերպարում *իմացու-*

*թյան* դերը մի նոր աստիճանի է բարձրացնում այն հանգամանքը, որ նա լավ է օգտվում նաև նախորդ սերունդների կենսափորձից՝ ամեն անգամ լսելով հեքիաթների ավանդական ծերունու խորիմաստ խրատները...

Այս առումով բնորոշ է *Անմահական խնձոր* հեքիաթը: Թագավորին անմահական խնձոր են պարգևում և նա չգիտե ինչ անել այն: Երկրի իմաստունները ևս չեն կարողանում օգնել նրան: Եվ, երբ հուսահատված թագավորը դիմում է նրանց, թե՝ մի՞թե չկա մեկը, որ իրեն մի խորհուրդ տա, պատասխանում են, որ «փլան» գյուղում կա մի ծերունի «շատ ապրած, շատ զվըռնած, շատ բան տեսած, մըզնե լե իմաստուն» (*Հայ. ժող. հեքիաթներ*, հ. 10, էջ 244): Ինչպես տեսնում ենք, իմաստության աղբյուրը շատ բան տեսնելը, ինքը՝ կյանքն է:

Այսպիսով, հայ աշխատավոր ժողովուրդն իր հեքիաթներում այն իմաստուն միտքն է հայտնում, թե գիտակցությունը մարդկության հազարամյակների կենսափորձով հարստացած, աշխարհը ճանաչելու համար որևէ աստիճանի հասած մարդկային միտքն է՝ իմացությունը:

Ուշագրավ են ժողովրդական հեքիաթների այն դրվագները, ուր ժողովուրդը ծաղրում է տգիտությունը: *Ախմախ մարդը* հեքիաթում ժողովուրդն ուղղակի այն կարծիքն է հայտնում, որ, խելք (գիտակցություն) ունեցող մարդը կարող է ճանաչել կյանքի օրինաչափությունները և դրանք ծառայեցնել իրեն: «Խելք գլխին մարդ,— ասվում է հեքիաթում,— օր զցավն գիմնա՝ կաշխատի յառեջն առնե, օր չգնաս ուրին, ախմախ մարդ կը թողնե օր ցավն ուրին ուտե» (նույն տեղը, էջ 54): Ուրեմն, եթե կյանքի դժվարությունները կարելի է հաղթահարել խելքով, նշանակում է վերջինս պասսիվ չէ կյանքի հարցերի կարգավորման գործում: Իսկ թե ինչպիսի պատկերացում ունի աշխատավոր ժողովուրդը խելքի այդ դերի մասին, բավական է այն փառաբանող բազմաթիվ հեքիաթներից հիշատակել *Խելքն է գաշխար կերի* հեքիաթը, որտեղ աղվեսը ճարպկությամբ հաղթելով իրենից մի քանի անգամ ուժեղ գայլին, բացականչում է. «Խելքն է գաշխար կերի, յորտեղ քում կըսիս՝ էնտեղ լե իմն ըսե» (նույն տեղը, էջ 530): Սրանով ժողովուրդն այն ճշմարիտ միտքն է հայտնում, որ կյանքի պայքարում գիտակցությունն ամենազոր զենքն է, որը մարդկային բազմադարյան կենսափորձով հարստացած իմացությունն է:

Ժողովուրդն իր ողջ կյանքի ընթացքում, թափանցելով բնական ու հասարակական երևույթների էության մեջ, այնտեղ բացահայտել է բազմաթիվ օրինաչափություններ և դրանց հիման վրա ձևավորել իր պատկերացումներն ու համոզմունքները աշխարհի ու կյանքի զարգացման ընթացքի մասին, որոնք պահպանվել ու սերունդներին են փոխանցվել բանավոր ստեղծագործությունների միջոցով: Ժողովրդի արժանապատվությամբ ու խելքով ստեղծված բանավոր գրականությունը, Ալ. Տոլստոյի արտահայտությամբ, բարձրացրել ու ամրապնդել է ժողովրդի բարոյական կերպարը, եղել է նրա պատմական հիշողությունը: Հետևաբար, ժողովրդական ստեղծագործությունները ոչ թե պարապ ժամանակի արդյունք են և հորինվել են ժամանցի համար, այլ՝ ժողովրդական յուրահատուկ կրթարաններ են, որոնք դաստիարակել են մարդկային բյուրավոր սերունդների, ամրապնդել ժողովրդի բարոյական ոգին, ուժ ներշնչել նրան՝ հաղթահարելու կյանքի դժվարությունները:

Բերենք այս միտքը հաստատող մի քանի փաստ: Հայ աշխատավոր ժողովուրդը բազում արհավիրքներ է տեսել, դարեր շարունակ հեծել օտար բռնակալների լծի տակ, կեղեքվել ներքին հարստահարիչներից: Եթե ժողովուրդը ժամանակին հավատար կրոնական այն պաշտոնական դոգմային, թե մարդկանց ու ժողովուրդների ճակատագիրը սահմանված է նախախնամության կողմից և այն փոփոխելն անհնար է, ապա նա պետք է ձեռքերը ծալած սպասեր այնքան, մինչև «շարժվեր» նախախնամության գութը: Այնինչ, մեր պատմությունն այլ բան է ասում. այն հարուստ է ժողովրդական բազում ըմբոստացումներով ու պոռթկումներով, ընդ որում՝ նաև հակակրոնական: Ժողովուրդն առաջնորդվում էր իրական կենսափորձից սինթեզված գաղափարներով, որոնք բանավոր ստեղծագործությունների միջոցով, ավանդաբար, անցնում էին սերնդեսերունդ: Այդպիսի պահերին նրան գոտեպնդում էր այն ճշմարտացի միտքը, թե հավիտենական ոչինչ չկա, թե որքան էլ հզոր լինեն ժողովրդին ճնշող ու շահագործող տիրակալները՝ միևնույն է, նրանք հարատև չեն:

*Աղամորդու հեքիաթում* պատմվում է, որ զառամյալ մի ծերունի զանազան միջոցների է դիմում, որպեսզի չմեռնի, սակայն, մի աներևույթ ձայն նրան ասում է, որ անմահություն չկա, «մահը մարդու մեջ է իր ծնվելու օրեն» (նույն տեղը, հ. 10, էջ 270): Խորացնելով այս միտքը, ժողովուրդը *Մահ չուզող տղան* հեքիաթում հանգում է այն եզրակացության, թե կյանքը հնի մահացման հիման վրա նորի առաջացման անընդհատ ու հավերժական պրոցես է: Հիշյալ հեքիաթում մի պատանի գնում է անմահություն որոնելու, բայց ամենուր նրան հայտնում են, որ նրա ջանքերը զուր են, քանի որ «Աշխարհը եփ օր ծնիլ կա, մայն էլ հետն է» (նույն տեղը, հ. 4, էջ 437): Ու երբ հեռուներում հարյուրավոր տարիներ ապրելուց հետո տղան հրաշքով վերադառնում է հարազատ վայրերը, այնտեղ ամեն ինչ անճանաչելիորեն փոխված է տեսնում: Այսպիսով, ծննդի ու մահվան այս օրինաչափությունը վերաբերում է ո՛չ միայն մարդկանց, այլև նրանց շրջապատող ողջ իրականությանը: Ծնվում ու մահանում են ո՛չ միայն մարդիկ, այլև այն ամենը, ինչ շրջապատում է նրանց: Այս մտքի փայլուն արտահայտություններն են *Ընենց էլ չի մնա*, *Տերտերն ու աճամ աղբար* և նման այլ հեքիաթներ, որոնք արտացոլում են այն ճշմարիտ գաղափարը, թե որքան էլ դաժան լինեն ժամանակները, միևնույն է՝ «դունյեն խեմլա չը մնա» (նույն տեղը, հ. 9, էջ 165), ուստի, անհրաժեշտ է մաքառել հանուն լավ ապագայի: Վերոհիշյալ հեքիաթներում ցույց է տրվում, որ աշխարհում ամեն ինչ անընդհատ հոսում է, փոփոխվում, շարժվում: Այսպիսով, ըստ ժողովրդի աշխարհայացքի՝ շարժումը մեզ շրջապատող իրականության հավիտենական հատկությունն է, նրա գոյության եղանակը: Հենց իրենց ներհատուկ այդ շարժումն է պայմանավորում իրերի գոյությունը:

*Գետ ու կարմունջ* զողտրիկ հեքիաթը, հագեցած է խոր կենսափիլիսոփայությամբ: Ահա այն. «Գետն ըսեց կարմնջին.— ես կերթամ, դու կը մնաս: Կարմունջն ըսեց.— *էն աղեկ, օր կերթաս, օր մըլե ես կերթամ, թե երթալ չեղներ՝ ոչ գետ կեղներ, ոչ կարմունջ*» (ընդգծումը մերն է — Հ. Ս.) (նույն տեղը, հ. 10, էջ 474): Արդարև, «էն աղեկ», որ ամեն ինչ շարժվում ու փոխվում է: Հոգ չէ, թե «օր մըլէ ես կերթամ», թող այդպես լինի, միայն թե այս ճշմարտությունը հասկանան մարդիկ, որ հուսադրվեն ու գոտեպնդվեն, թող այն սովորեցնի սերունդներին, որ այս անցողիկ աշխարհում վերջ ունեն նաև չարիքն ու չարությունը, որ մարդկանց ճակատագիրը չի նախախնամությունը սահմանել և մարդկանց բախտի կռանը հենց իրենց կամքն է: Հազարամյակների կենսափորձից սինթեզված այս գաղափարը բարձրացնում, ամրապնդում է ժողովրդի բարոյական կերպարը... Իսկ այն հարցերի պատասխանը, թե որքանով են այդ գաղափարները հասու եղել ժողովրդական լայն զանգվածներին կամ վերջիններս ինչպիսի վերաբերմունք են ցուցաբերել դրանց նկատմամբ, դարձյալ շատ պարզորոշ է տրված հեքիաթներում: Նախօրոք ասենք, որ ժողովուրդը խորապես հավատացել է իր գաղափարներին և դրանք համարել ամենաճշմարտացին: *Ժողովուրդն ու փաշեն* հեքիաթում ժողովուրդն ըմբոստանում է փաշայի դեմ: Եվ երբ «վերևից» գալիս են հարցը քննելու, նա գոչում է՝ չենք ուզում այդպիսի փաշա: Բայց «վերևից» եկած մարդը նկատում է, որ նույնն է գոչում նաև իր օրն ապրած ու կյանքի ծերին հասած, հավանաբար, աշխարհի անցուդարձին արդեն անտեղյակ մի պառավ և հարցնում է նրան, թե՝ դո՞ւ ինչու ես գոռում: Պառավը պատասխանում է. «Յըմեն կիսըն «չընք յուզի» ես էլ կըսիմ «չընք յուզի»: Ջըմ գինա ինչ դավի է, մինակ իդա խըդար գինամ, օր *ժողողովուրդ զուր տեղ չըսե «չընք յուզի»*» (նույն տեղը, էջ 221) (ընդգծումը մերն է— Հ. Ս.): Հենց այս ժողովրդի հավատն է իր խոսքի, գաղափարների նկատմամբ: Նա ոչ մի բան «զուր տեղ չըսե», որովհետև իր ասելիքը վերցնում է հազարամյակների փորձից՝ իր դարավոր կյանքի պրակտիկայից: Իսկ պրակտիկան դա այն կախարդական աղբյուրն է, որից ճանաչողությունը ո՛չ միայն իր մշակումների ու ընդհանրացումների համար անհերքելի փաստական նյութ է վերցնում, այլև ստուգում է այդ մշակումների ու ընդհանրացումների ճշմարտացիությունը: «Պրակտիկայում մարդը պետք է ապացուցի իր մտածողության ճշմարտությունը, այսինքն՝ իրական լինելը և հզորությունը», գրում էր Մարքսը «Ֆոյերբախի մասին թեզիսներում»: Իսկ ժողովուրդն իր հեքիաթներում արտացոլել է հատկապես այն ճշմարտությունները, որոնք բազմիցս ապացուցվել են նրա կյանքի պրակտիկայում:

Այսպիսով, հայ աշխատավոր ժողովուրդն իր հազարամյակների կենսափորձով հանգել է այն ճշմարիտ համոզման, որ իմաստության միակ ու անգերազանցելի չափանիշը դա ժողովրդական լայն զանգվածների՝ հանուրի, դարավոր կյանքի քուրայում թրծված համամարդկային գաղափարներն են, որոնք, իր ստեղծող ժողովրդի նման, ավելի ու ավելի հստակ և պայծառ են դառնում: Ժողովրդից կտրված ամեն մի գաղափար շատ շուտ այլասերվում է ու ոչնչանում:

Հ. Ե. ՍԵՎՈՅԱՆ



# ԻՐԱՎԱԲԱՆԻ ԱՄԲԻՈՆ

## ԱՆՄԵՂՈՒԹՅԱՆ ՊՐԵԶՈՒՄՊՑԻԱՆ ԱՆՀԻՄՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՒՄԻՑ ԽՈՒՍԱՓԵԼՈՒ ԵՐԱՇԽԻՔ Է

Սովետական դատարանների գործունեությունը խարսխված է սոցիալիստական հումանիզմի սկզբունքների վրա։ Նրանք կոչված են պաշտպանելու ՍՍՀՄ հասարակական ու պետական կարգը, տնտեսության սոցիալիստական սիստեմը, սոցիալիստական սեփականությունն ու քաղաքացիների քաղաքական, աշխատանքային, բնակարանային, ինչպես և հիմնարկ-ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, կոոպերատիվների, հասարակական այլ կազմակերպությունների իրավունքներն ու օրինական շահերը։

Վերոհիշյալ ելակետային սկզբունքից բխում է այն խնդիրը, որ սովետական քաղաքացու օրինական շահերի ու իրավունքների պաշտպանությունը սովետական դատարանի անմիջական պարտականությունն ու հատուկ ֆունկցիաներից մեկն է։ Ուստի, քաղաքացու անհիմն մեղադրումն ու դատապարտումը հեղինակազրկում է ո՛չ միայն սովետական դատարանին, այլև նրան օգնող մյուս օրգաններին։

Այս առումով միանգամայն ուշագրավ է ՍՍՀՄ գերագույն դատարանի պլենումի բյուլետենում զետեղված խմբագրական հոդվածի այն դրույթը, որն ասում է. «Առանձնակի անհանգստություն են պատճառում քաղաքացիների անհիմն դատապարտման դեպքերը։ Առավել քան կոպիտ դատական այդ սխալները հույժ վնասում են քաղաքացիներին, շոշափելով նրանց պատիվն ու արժանապատվությունը, ճապես խախտում դատական մարմինների հեղինակությունը։ Հետևաբար, նման յուրաքանչյուր դեպք պետք է համարվի անհանդուրժելի, անհրաժեշտ է հետագայում նման սխալներ կանխելու համար գործնական միջոցառումներ կիրառել» (Бюллетень Верховного Суда СССР, 1970 г., № 6, стр. 5)։

Անմեղ մարդուն քրեական պատասխանատվությունից ու անհիմն դատապարտումից պաշտպանելու նպատակով սովետական քրեական դատավարական օրենքով նախատեսված են դատավարական ռեալ երաշխիքներ, որոնց մի մասն արտացոլվել է ՍՍՀՄ սահմանադրության մեջ։ Մեղադրյալի պաշտպանության իրավունքը նրա սահմանադրական իրավունքն է (ՍՍՀՄ սահմանադրության 111-րդ հոդվածը)։ Դրա լիակատար ու անշեղ կիրառումն անմեղ մարդկանց անհիմն դատապարտությունից զերծ պահելու կարևորագույն երաշխիք է, ինչպես նաև քրեական դատավարությունում օբյեկտիվ ճշմարտությունը պարզելու անհրաժեշտ նախապայման։ Մեղադրյալի պաշտպանության իրավունքով է պայմանավորվում նրա՝ որպես քրեական-դատավարական գործունեության սուբյեկտի իրավա-դատավարական վիճակը։

ՍՍՀՄ սահմանադրությունը մեղադրյալին (ամբաստանյալին) համարում է



պաշտպանության իրավունքի սուբյեկտ-անձ, որն օժտված է առաջադրված մեղադրանքից պաշտպանվելու դատավարական երաշխիքների լայն համակցությամբ, նա իրավունք ունի վիճարկելու մեղադրանքը, ներկայացնելու իր պատճառաբանությունները, իրեն արդարացնող ապացույցները։

Մեղադրյալի պաշտպանության իրավունքից էլ բխում են նրա դատավարական մյուս իրավունքները, որոնք նույնպես ծառայում են սովետական արդարադատության խնդիրների ճիշտ լուծմանը։

Մեղադրյալի պաշտպանության իրավունքի հետ անմիջականորեն կապված է այն օբյեկտիվ իրավական դատավարական սկզբունքը, որը քրեական դատավարության տեսության մեջ կոչվում է անմեղության պրեզումպցիա* և իր արտահայտությունն է գտնում քրեական դատավարական օրենքում։ Առանց անմեղության պրեզումպցիայի մեղադրյալի պաշտպանության սահմանադրական իրավունքը կլիներ ձևական։

Քրեական դատավարական իրավունքի տեսության մեջ անմեղության պրեզումպցիայի սկզբունքը պետք է հասկանալ, որ մեղադրյալը կարող է մեղավոր ճանաչվել դատավճռով և դատապարտվել միայն մեղավորությունն ապացուցված լինելու դեպքում։ Այնուհետև, անձի մեղավորությունը չի կարելի ապացուցված համարել, եթե մեղադրանքը հիմնված է ենթադրությունների կամ կասկածելի փաստերի վրա։ Այն ապացուցված է համարվում միայն լրիվ հավաստիության դեպքում։ Մեղադրյալի մեղավորության ապացուցված չլինելը, նշանակում է նրա անմեղության ապացուցվածություն։ Անձի մեղավորությունը կարելի է համարել ապացուցված, եթե այն պարզված է գործի բոլոր հանգամանքների բազմակողմանի, լրիվ և օբյեկտիվ հետազոտմամբ։

Անմեղության պրեզումպցիայի սկզբունքը պարզորոշ արտահայտված է ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների քրեական դատավարության Հիմունքների 2, 4, 7, 14, 36, 43 հոդվածներում, որոնք զետեղված են նաև միութենական հանրապետությունների քրեական դատավարության օրենսգրքերում։

Համաձայն Հիմունքների 7-րդ հոդվածի՝ ոչ ոք չի կարող հանցավոր ճանաչվել և քրեական պատժի ենթարկվել այլ կերպ, քան դատավճռով։

Հետևաբար, անձին որպես մեղադրյալի պատասխանատվության կանչելը և դատի տալը չի նշանակում նրան արդեն մեղավոր ճանաչել։

Մեղադրյալ և մեղավոր հասկացությունների նույնացումը նշանակում է հրաժարվել անմեղության պրեզումպցիայից, ուստի և ընդունել անմեղին դատապարտելու հնարավորությունը։ Այս առումով անընդունելի է Կ. Ա. Մոկիչևի այն հարցադրումը, որ «քննիչի, դատախազի և հետաքննություն կատարողի, դատավորների և սովետական հասարակայնության առաջ պետք է կանգնի միայն մեղավոր անձը» (ընդգծումը մերն է— Ռ. Հ.)։

Այս տեսակետն իր մեջ պարունակում է անձին դատապարտելու վտանգը թեկուզ այն հիմքով, որ նա «մեղադրյալ» է և կանգնել է քննիչի, դատախազի կամ դատարանի առջև։

ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների քրեական դատավարության Հիմունքների 7-րդ հոդվածը պարզորոշ նշում է, որ անձի մեղավորության հարցում վճռական խոսքը պատկանում է միայն դատարանին ու քանի դեռ դատարանը մեղադրյալին չի ճանաչել մեղավոր, նա համարվում է անմեղ։

*) Պրեզումպցիա (լատ. praesumptio — ենթադրություն)։

Անմեղության պրեզումպցիայի էությունն այն է, որ մեղադրական դատավճիռը կարող է կայացվել միայն հավաստի փաստերի առկայությամբ, երբ բացառվում է անձի անմեղության հնարավորությունը և նրա հանցանքն իրոք հաստատված է։ Հիմունքների 43-րդ հոդվածը ազդարարում է.

«...Մեղադրական դատավճիռը չի կարող հիմնված լինել ենթադրությունների վրա և կայացվում է միայն այն դեպքում, երբ հանցագործությունը կատարելու մեջ ամբաստանյալի մեղավորությունն ապացուցված է դատական քննության ընթացքում»։

Անմեղության պրեզումպցիայի սկզբունքը պարզ արտահայտված է նաև Հիմունքների 43-րդ հոդվածի այն մասում, որտեղ թվարկվում են արդարացման դատավճռի հիմքերը՝ հանցագործության հաստատված չլինելը, ամբաստանյալի արարքի մեջ հանցակազմի բացակայությունը, հանցագործությանը ամբաստանյալի մասնակցության ապացուցված չլինելը։

Արդարացման դատավճռի այս հիմքերում դրսևորվում է անմեղության պրեզումպցիայի կիրառումը— հանցագործության դեպքի, հանցագործությանը ամբաստանյալի մասնակցության ապացուցված չլինելը նշանակում է՝ նրա անմեղության ապացուցվածություն։ «Չապացուցված մեղավորությունը հավասարազոր է ապացուցված անմեղությանը— եթե չի ապացուցված, որ մեղադրյալը մեղավոր է, նշանակում է ապացուցված է որ նա անմեղ է» (М. С. Строгович, Курс Советского уголовного процесса, т. 1, 1968, стр. 350)։ Մեղավորության և անմեղության էության նման ճիշտ հարցադրումը բացառում է որևէ «միջին» դիրքավորում— ամբաստանյալին մեղավոր ճանաչելով, նրան նաև անմեղ չճանաչելը։ Սովետական քրեական դատավարության մեջ այդպիսի իրավական վիճակ չկա։

Անմեղության պրեզումպցիայի սկզբունքը կարմիր թելի նման անցնում է նաև Հիմունքների 14-րդ հոդվածով, որը պարտավորեցնում է ապահովել գործի հանգամանքների բազմակողմանի, լրիվ և օբյեկտիվ հետազոտումը։ Նման մոտեցման շնորհիվ ապահովվում է մեղավորության պրեզումպցիայի, մեղադրական շեղման բացառում, իսկ այդպիսի շեղման հետևանքները կարող են լինել չափազանց ծանր։ Մեղադրյալի անմեղության պրեզումպցիան դատավարության այս կամ այն մասնակցի սուբյեկտիվ կարծիքը չէ, այլ քրեական դատավարական օրենքի ոգին։

Անմեղության պրեզումպցիայի պրակտիկ կիրառումը արտահայտվում է նաև մեղադրյալի խոստովանական ցուցմունքի ապացուցողական նշանակության գնահատմամբ։ Մեղադրյալի խոստովանական ցուցմունքը կարող է դրվել մեղադրական դատավճռի հիմքում, երբ այն հաստատվում է գործով՝ մյուս ապացույցների համակցությամբ։ Այդ դրույթը նախ՝ թույլ չի տալիս ամբաստանյալին դատապարտել նույնիսկ այն դեպքում, երբ նա իրեն մեղավոր է ճանաչում, եթե մինչ նրա խոստովանությունը հանցանքը հաստատող այլ ապացույցներ չկան։ Երկրորդը, մեղադրյալի խոստովանական ցուցմունքի այդպիսի ապացուցողական նշանակությունը մեկ անգամ ևս հավաստում է, որ հատկապես օրենքն է որոշակի հանգամանքներից ելնելով մեղադրյալին անմեղ համարում։ Անգամ մեղադրյալն իրեն մեղավոր ճանաչելուց հետո, եթե նրա մեղքը չի հաստատվում այլ ապացույցներով, բացառվում է մեղադրական դատավճռի արձակումը։

Անմեղության պրեզումպցիայի սկզբունքի հետ անմիջականորեն կապված է սովետական քրեական դատավարությունում կիրառվող ապացուցման



պարտականության կանոնը։ ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների քրեական դատավարության հիմունքների 14-րդ հոդվածն արգելում է ապացուցման պարտականությունը դնել մեղադրյալի վրա։

Անմեղությունը փաստարկող ապացույցներ ներկայացնելը մեղադրյալի միայն իրավունքն է և ոչ թե պարտականությունը— ասված է ՌՍՖՍՀ քր. դատ. օրենսգրքի 46-րդ հոդվածում, ՀՍՍՀ քր. դատ. օրենսգրքի 42-րդ հոդվածում և միութենական մյուս հանրապետությունների քրեական դատավարության օրենսգրքերի համապատասխան հոդվածներում։

Անմեղության պրեզումպցիայի սկզբունքին համապատասխան, «ապացուցման ծանրությունը ( Onus probandi) չի դրվում մեղադրյալի վրա, որովհետև նա համարվում է անմեղ, քանի դեռ նրա մեղավորությունը օրենքով սահմանված կարգով չի ապացուցված։ Իրավացի է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Մ. Ս. Ստրոգովիչը, երբ նշում է, որ «Մեղադրյալի կողմից իր անմեղությունը հաստատող ապացույցներ չներկայացնելը, չի կարող դիտվել որպես նրա մեղավորության ապացույց»։

Օրենքի այն պահանջը, որ չի թույլատրվում մեղադրյալին պարտավորեցնել ապացուցելու իր անմեղությունը, բխում է անմեղության պրեզումպցիայից և հաստատուն կերպով ներկայացվում ու իրականացվում է մեր դատական պրակտիկայում։

Այլ է դրությունը բուրժուական (նույնիսկ առաջավոր) երկրների դատական պրակտիկայում։ Մեկնաբանելով Ֆրանսիայի 1958 թ. քրեական դատավարության օրենսգիրքը, Մ. Լարգեն նշում է, որ անմեղության ապացուցման պարտականությունն ընկնում է մեղադրյալի վրա։

Անմեղության պրեզումպցիայի սկզբունքի պրակտիկ կիրառում է նշանակում նաև կասկածները մեղադրյալի օգտին մեկնաբանելու պահանջը (in dubio proreo), որը հետևյալ ձևակերպումն ստացել է ՍՍՀՄ Գերագույն դատարանի պլենումի 1969 թ. հունիսի 30-ի «Դատավճռի մասին» որոշման մեջ. «Ըստ ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների քրեական դատավարության հիմունքների 43-րդ հոդվածի, մեղադրական դատավճիռը չի կարող հիմնված լինել ենթադրությունների վրա։ Ուստի դատարանները պետք է ելնեն այն բանից, որ մեղադրական դատավճիռն արձակվի հավաստի ապացույցների հիման վրա, երբ գործով հետազոտված են բոլոր վարկածները, իսկ հակասությունները պարզված և գնահատված են։ Մեղադրանքն ապացուցված լինելու բոլոր կասկածները, եթե այդպիսիք հնարավոր չէ փարատել, մեկնաբանվում են հօգուտ ամբաստանյալի»։ Ուստի, դատարանը մեղադրական դատավճիռ արձակելիս (ամբաստանյալի մեղավորության հարցում) պետք է հասնի բոլոր տեսակ կասկածների փարատմանը։

Չվերացված կասկածների մեկնաբանումը հօգուտ ամբաստանյալի, որն արտացոլված է ՍՍՀՄ բարձրագույն դատական ատյանի որոշման մեջ, մեկ անգամ ևս շեշտում է անմեղ անձին պատասխանատվությունից և անհիմն դատապարտումից պաշտպանելու կարևորությունը։

Ընդգծելով այդ սկզբունքի կարևորությունը, ՍՍՀՄ Գերագույն դատարանի քրեական գործերի դատական կոլեգիայի նախագահ՝ պրոֆեսոր Գ. Զ. Անաշկինը իրավացիորեն այն համարում է սովետական քրեական դատավարական գիտության, դատական, քննչական և դատախազական պրակտիկայի կայուն նվաճում։

Անմեղության պրեզումպցիայի և դրանից բխող երկու կարևորագույն դրույթների վերաբերյալ մեր շարադրանքը հնարավորություն է ընձեռում անելու հետևյալ եզրակացությունները.

1. Մեղադրյալի անմեղության պրեզումպցիան սովետական քրեական դատավարության մեջ կարևորագույն օբյեկտիվ իրավական սկզբունք է, որը պաշտպանում է անմեղ քաղաքացիներին անհիմն քրեական պատասխանատվությունից և դատապարտումից: Այն հանդիսանում է քաղաքացիների անձի, պատվի և արժանապատվության պաշտպանման կարևորագույն երաշխիքներից մեկը, երաշխիք, որոնք նշված են ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից:

Անմեղության պրեզումպցիան հատկապես կարևոր նշանակություն է ստանում դատարանի կողմից արդարացման դատավճիռ կայացնելիս: Բոլոր դեպքերում, երբ ապացուցված չէ մեղավորությունը և կիրառված են օրենքով սահմանված բոլոր միջոցները, ամբաստանյալին առաջադրված մեղադրանքի ապացուցվածությունն ստուգելու համար, դատարանը պետք է կայացնի արդարացման դատավճիռ, որը նշանակում է՝ ամբաստանյալի անմեղության ճանաչում: Ամբաստանյալի մեղավորության ապացուցված չլինելը նշանակում է նրա անմեղության ապացուցվածություն՝ արդարացման հետևանքներով:

2. Անմեղության պրեզումպցիան ստեղծում է ամենալայն հնարավորությունները քրեական գործի բազմակողմանի, լրիվ և օբյեկտիվ քննության և դատական քննության համար, գործով ինչպես մեղադրող, նույնպես և արդարացնող բոլոր հնարավոր ապացույցները հավաքելու համար: Անմեղության պրեզումպցիան նպաստում է քրեական գործով օբյեկտիվ ճշմարտության բացահայտմանը, օրենքի այն պահանջի իրականացմանը, ըստ որի՝ հանցագործություն կատարած յուրաքանչյուր ոք պետք է հայտնաբերվի և արդարացիորեն պատժվի և ոչ մի անմեղ մարդ քրեական պատասխանատվության չենթարկվի ու չդատապարտվի:

Կարծում ենք, որ հասունացել է չփարատված կասկածները մեղադրյալը օգտին մեկնաբանելու վերաբերյալ կանոնը ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների քրեական դատավարության Հիմունքներում որպես օրենք գրանցելու պահանջը: Դա բխում է այն բանից, որ ՍՍՀՄ գերագույն դատարանի պլենումն ընդունել է ղեկավար որոշում, որը բոլոր դատարաններից պահանջում է այդ դրույթն ընդունել ի ղեկավարություն:

**Ռ. Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների թեկնածու


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ե. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.
Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 27—37—80, տնտեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 03281 Պատվեր 276 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 13.800 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 4/IV 1972 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:







## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՈՒԼՅԱՆՈՎ Դ. Ի.— Հիշողություններ Վլադիմիր Իլյիչի մասին: *Մ.,* ««Политиздат», *1971, 128 էջ:*

ՑԵՏԿԻՆ ԿԼԱՐԱ.— Հուշեր Լենինի մասին: *Մ.,* «Политиздат», *1971, 62 էջ:*

Սովետական իշխանության դեկրետները: *Հատոր 5, 1 ապրիլի—31 հուլիսի 1919 թ., Մ.,* «Политиздат», *18, 702 էջ:*

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ա. Ա.— Տնտեսագիտական ընտիր երկեր: *«Հայաստան» հրատ., 1971, 424 էջ:*

Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը: *Պատմության ակնարկներ: «Հայաստան» հրատ., 1971, 316 էջ (ռուսերեն):*

ԱՄՆ-ի ներքին քաղաքականության խնդիրները: «Наука» *հրատ., 1971, 406 էջ:*

ՈՒՍՊԵՆՍԿԻ Ա. Ա.— Եվրոպայի արտասահմանյան սոցիալիստական երկրների տնտեսական պատմություն: *Ուսումնական ձեռնարկ ԲՈՒՀ-երի տնտեսագիտության մասնագետների համար: Մ.,* «Высшая школа» *հրատ., 1971, 254 էջ:*

Իրանի, Աֆղանստանի և Թուրքիայի գրականության համառոտ պատմություն *(դասախոսությունների դասընթաց): Լենինգրադի համալս. հրատ., 1971, 120 էջ:*

ՎՈԼԿՈՎ Գ. Ն.— Գիտության օրորոցի մոտ: *Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1971, 224 էջ:*

*Հեղինակը շարադրել է հնագույն փիլիսոփայության, նրա դերի, գիտական կանխատեսության և այլ հարցերի մասին:*

Հայկական ՍՍՀ: *Վարչա-տերիտորիալ բաժանումը: Առ 1-ը մայիսի 1971 թ.: Չորրորդ հրատարակություն: «Հայաստան» հրատ., 1971, 274 էջ:*

ԽՍՐԱՅԵԼՅԱՆ Մ. Ա.— Էրեբունի բերդ-քաղաքի պատմությունը *(Ըստ արձանագրական ու հնագիտական տվյալների): «Հայաստան» հրատ., 1971, 200 էջ:*

Ցիոլկովսկին ժամանակակիցների հուշերում (ժողովածու), *Տուլա, 1971, 336 էջ:*

ՊԱՐՍԱՄՈՎ Ն. Ս.— 45 տարի Այվազովսկու պատկերասրահում: *Սիմֆերոպոլ,* «Крым» *հրատ., 1971, 256 էջ:*

Մարգարիտներ հայ քնարերգության: *Երեք հատորով, հատ. առաջին: Հնագույն շըրջանից մինչև ԺԸ դարը: «Հայաստան» հրատ., 1971, 276 էջ:*

Հայ մշակույթի օրրանը: *Ե., «Լույս» հրատ., 1971, 330 էջ:*

*Այս գիրքը նվիրված է Թիֆլիսում հիմնադրված Ներսիսյան հոգևոր դպրոցին, որը գոյություն է ունեցել 100 տարի (1824—1924): Ներսիսյան դպրոցի նախկին սաներն իրենց հուշերում պատմել են դպրոցի և ուսուցիչների մասին:*

Հողային օրենսգիրք Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության: *«Հայաստան» հրատ., 1971, 112 էջ (ռուսերեն):*

ՄԱԳԻԼԵՎՍԿԱՅԱ Ս. Ա.— Այս գիրքը ձեզ համար է, աղջիկներ: *(Օգտակար խորհուրդներ դեռահաս աղջիկներին և երիտասարդ մայրերին): «Հայաստան» հրատ., 1971, 428 էջ:*

ԳԻՆԸ 25 Կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## Ե՛Վ ԲԵՌՆԱՄԲԱՐՁԻՉ, Ե՛Վ ՓՈԽԱԴՐՈՂ

*Հանրահարատացման և լեռնային մեքենաշինության Սվերդլովի նախագծակոնստրուկտորական գիտահետազոտական ինստիտուտը ստեղծել է ДК—2,86 մակնիշի մեքենա՝ լեռնային օգտակար հանածոների բարձման և փոխադրման համար:*

*Այն մեկ ժամում ընթանում է 20 կմ արագությամբ և հաղթահարում 18 աստիճան թեքության ճանապարհ: Մեքենայի առավելությունը մանևրելու մեծ հնարավորությունն է: Մեկ ժամում այն փոխադրում է 150 տոննա հանքանյութ: Մեքենայի օգտագործմամբ բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է 2—3 անգամ:*

## ՀՈՂԻ ԲԱՂԱԴՐԱՏԱՐՐԵՐԸ ՈՐՈՇՈՂ ՍԱՐՔ

*Հունգարիայի այգեգործության գիտահետազոտական ինստիտուտը մշակել է խաղողի այգիների հողի բաղադրատարրերի որոշման ֆոտոմետրային եղանակ:*

*Հողի նմուշի լուծույթը՝ փոշիացած վիճակում, փչում են ացետիլենային այրիչի բոցի վրա: Բոցի գույնի վերափոխությամբ որոշվում է հողի սննդանյութերի քանակն ու որակը:*

## ՌԱԴԻՈԱԼԻՔՆԵՐԸ ՍՈՍՆՁՈՒՄ ԵՆ ՆՅՈՒԹԵՐԸ

*Շվեյցարիայի տեխնոլոգիական ինստիտուտը պատրաստել է մի սարք, որը վայրկենապես սոսնձում է ստվարաթուղթը, պլաստմասսան, ֆաներան և այլ նյութեր, որոնց նախապես քսվում է կրախմալե սոսինձը: Սարքն արտաքնապես նման է հարթուկի, այն արտածում է 2.450 մեգահերց հաճախականության ալիքներ, որոնք 2 սմ խորությամբ թափանցում են միացվող նյութերի մեջ և տաքացնում սոսնձի շերտը:*

## «ՀՐԱՇՔ» ԵՐԵԽԱՆ

*Այնքան էլ շատ չեն այն փոքրիկ երեխաները, որոնք լողալ կարողանում են երկու տարեկանից: Սակայն, պատահում են և բացառիկ երևույթներ: Երկու տարեկան Աննա Լորի Ալեքսանդերը (Լոս-Անջելոսից) ջրի տակ իրեն զգում է ինչպես իր մանկասայլակում: Սուզվելով ջրի հատակը՝ աղջիկը վարպետ ակրոբատի պես բանգում է ոտքերն ու ձեռքերը կապող պարանը:*

## ԳԵՐՄԻԿՐՈՕՐԳԱՆԻԶՄՆԵՐԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄԸ

*ԱՄՆ-ի գյուղատնտեսության մինիստրության հաղորդմամբ ամերիկյան գիտնական, մասնագիտությամբ բույսերի ախտաբան Դիեները հայտնաբերել է մինչև օրս անհայտ ախտաբանական մի ֆակտոր, որին ինքն անվանել է «Վիրոիդ»: Ինչպես պնդում է նա, «վիրոիդը» 80 անգամ փոքր է հայտնի բոլոր վիրուսներից՝ կառուցված ДИК կամ РНК ֆրագմենտներից (առանց սպիտակուցային թաղանթի) և օժտված է բարձր ակտիվությամբ:*

## ԷՀՄ-Ը ԻՆՔՆԱՍՊԱՍԱՐԿՄԱՆ ԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ

*«Օկա կորպորեյշն» ճապոնական ֆիրման, համագործակցելով «Խիտացի» և «Օմրոն տատեյշի» էլեկտրոնային սարքերի ֆիրմաների հետ, նախատեսում է կառուցել ինքնասպասարկման ավտոմատ խանութ:*

*Ընտրելով անհրաժեշտ մթերքը, գնորդը վերցնում է համապատասխան արտեր (պիտակներ), որոնք դրված են այդ ապրանքների վրա և գցում ԷՀՄ-ի մեջ: Շարժական ժապավենը հասցնում է ընտրված ապրանքը ելքի մոտ, ուր դրանք փաթեթավորում են. միաժամանակ ԷՀՄ-ն գնորդին է ներկայացնում հաշիվը. հենց որ այն վճարվում է, ԷՀՄ-ն հրահանգ է տալիս պտուտագռնակին՝ բաց թողնել գնված ապրանքը:*

*ԷՀՄ-ն կարող է հսկել նաև ապրանքների սպառման ընթացքին և անհրաժեշտ ապրանքը պահանջել պահեստից:*